ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

5

ՄԱՅԻՍ

ԵՐԵՎԱՆ • 1967

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5 | ՄԱՅԻՍ · 1967

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

### ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



### ՔՆՆԱՐԿՈՒՄ և ԲԱՆԱՎԵՃ

# Содержание



---



# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ


Ս. ԶՈՒՐԱԲՅԱՆ

Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԿՈՒՐՍՈՎ

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հաղթանակեց ո՛չ թե զարգացած կապիտալիստական երկրում, այլ տնտեսապես համեմատաբար հետամնաց և կիսաագրարային ցարական Ռուսաստանում։ Վ. Ի. Լենինը 1913 թվականին՝* Ինչպես ավելացնել ամեն մի շնչի սպառման չափերը Ռուսաստանում *հոդվածում նշում էր, որ «Ռուսաստանը մնում է անհավատալիորեն, չտեսնված կերպով հետամնաց երկիր, աղքատ ու կիսավայրենի, որը սարքավորված է ժամանակակից արտադրության միջոցներով չորս անգամ ավելի վատ, քան Անգլիան, հինգ անգամ ավելի վատ, քան Գերմանիան, տասն անգամ վատ, քան Ամերիկան» (Երկեր, հատ. 19, էջ 353—354)։ Չնայած ցարական Ռուսաստանն իր տերիտորիայով, բնական հարստություններով աշխարհում առաջին տեղն էր գրավում, իսկ բնակչության թվով՝ երրորդ, սակայն 1913 թվականին նա իր արդյունաբերական արտադրանքի ծավալով աշխարհում հինգերորդ տեղում էր, Եվրոպայում՝ չորրորդ։ Արդյունաբերության և գյուղատնտեսության տեսակարար կշռի հարաբերակցությունը նրանց համախառն արտադրանքում կազմում էր 42,1 և 57,9 տոկոս, որը ցարական Ռուսաստանի տնտեսական ակներև հետամնացության բնորոշ ցուցանիշն էր։*

*Սովետական իշխանության օրոք Ռուսաստանի տնտեսական վերելքը սկսվեց ո՛չ թե 1913 թվականի այդ մակարդակից, այլ առաջին համաշխարհային պատերազմի, օտարերկրյա ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի հետևանքով քայքայված տնտեսության ավելի ցածր մակարդակից։ 1920 թվականին ծանր արդյունաբերության համախառն արտադրանքը կազմում էր 1913 թվականի մոտ 14, իսկ գյուղատնտեսության՝ մոտ 50 տոկոսը։*

*Նէպին անցնելու պայմաններում սկսվեց տնտեսության վերականգնումը, որը հիմնականում ավարտվեց 1925—26 թվականներին։ Դրանից հետո մեր երկրի առջև ծառացավ նրա տնտեսության զարգացման ուղղության ու հեռանկարների հարցը՝ ապահովել սոցիալիզմի հիմքի կառուցումը, վերացնել էկոնոմիկայի բազմակացութաձևությունը և շահագործող դասակարգերին։ Այս բոլոր հարցերի լուծման տնտեսական հիմքը երկրի ինդուստրացումն էր։*

Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որն ընդունակ է վերակառուցելու նաև հողագործությունը» (Երկեր, հ. 32, էջ 591)։ Միաժամանակ Լենինը առանձնակի ուշադրություն էր նվիրում երկրի էլեկտրիֆիկացմանը, առանց որի անհնար էր ժամանակակից արդյունաբերության զարգացումը, առաջադրելով «Կոմունիզմը— դա սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան» իր հայտնի ֆորմուլան։ 1920 թվականին կազմվեց ԳՈԷԼՌՈ-ի հայտնի պլանը, որը Վ. Ի. Լենինը բնութագրում էր որպես կուսակցության երկրորդ ծրագիրը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը պայքար ծավալելով տրոցկիստների և աջերի հակալենինյան հայացքների դեմ, իր XIV համագումարում (1925 թ.) հռչակեց երկրի ինդուստրացման քաղաքականությունը, առաջին հերթին զարկ տալու արտադրության միջոցների արտադրությանը և պատմական կարճ ժամանակամիջոցում վերացնելու երկրի տեխնիկա-տնտեսական հետամնացությունը։ Կուսակցության այդ քաղաքականությունն արտահայտում էր սովետական ժողովրդի արմատական շահերը։ Սակայն երկրի ինդուստրացումը կապված էր ներքին և արտաքին մի շարք դըժվարությունների հետ։ Նախ ինդուստրացման համար անհրաժեշտ միջոցների հայթայթման դժվարությունն էր։ Կուսակցությունը չէր կարող ընդօրինակել կապիտալիստական երկրների ինդուստրացման ուղին. անընդունելի էր նաև տրոցկիստների առաջարկը՝ գյուղացիության հաշվին իրագործել երկրի ինդուստրացումը։ Կուսակցությունը գտնում էր, որ ՍՍՀՄ ինդուստրացման համար անհրաժեշտ միջոցներ պետք է ստեղծել սովետական իշխանության ներքին հնարավորությունների հաշվին։ Կապիտալիստական երկրները ո՛չ միայն տնտեսական բլոկադայի էին ենթարկել մեր երկիրը, այլ երբեմն ռազմական ռանձգություններ էին կատարում. երկրի առաջընթացին խոչընդոտում էին նաև բանվորների ու գյուղացիների ներքին թշնամիները։

Արտադրամիջոցների հանրային սեփականության վրա հիմնված սոցիալիստական պլանային տնտեսության առավելությունները, շահագործող դասակարգերի եկամուտների կրճատումն ու աստիճանաբար վերացումը, աշխատանքի նկատմամբ սովետական քաղաքացիների նոր վերաբերմունքը, միջոցների կուտակման նպատակով խիստ խնայողությունը՝ պայմաններ էին ստեղծում երկրի ինդուստրացման համար։ Աշխատավորներն այդ տարիներին քիչ զոհողություններ չարին և զրկանքներ չկրեցին։ Սակայն նրանք գիտակցում էին, որ այդ ամենը անհրաժեշտություն է՝ ՍՍՀՄ անկախության պահպանման, սոցիալիզմի հաղթանակի և աշխատավորության կենսամակարդակի բարձրացման համար։ Կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը միաժամանակ միջոցներ ձեռնարկեցին արդյունաբերության տարբեր ճյուղերի զարգացման համար մասնագիտական կադրերի պատրաստման և վերապատրաստման ուղղությամբ։

ՍՍՀՄ ինդուստրացման գործում առանձնակի տեղ գրավեց առաջին հնգամյակը (1928—1933 թթ.)։ Այդ ժամանակաշրջանում կառուցվեցին 1500 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։ Արդյունաբերության համախառն արտադրանքը հնգամյակի վերջում, 1928 թվականի համեմատությամբ, ավելացավ 102, իսկ արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ) 173 տոկոսով։ Սովետական մարդկանց աշխատանքային խանդավառության շնորհիվ առաջին հնգամյա պլանը կատարվեց ժամկետից շուտ՝ 4 տարի 3



ամսում։ Այդպիսի կարճ ժամանակամիջոցում արմատապես փոխվեց երկրի տնտեսական դեմքը. այն կիսաագրարային երկրից վերածվեց զարգացած ինդուստրիալ երկրի։ Միաժամանակ, կուսակցության XIV համագումարի որոշումների հիման վրա, իրագործվեց գյուղատնտեսության մասսայական կոլեկտիվացումն ու կուլակության՝ որպես դասակարգի վերացումը։

Եթե 1928—1933 թթ. ՍՍՀՄ ինդուստրացման առաջին հնգամյակն էր, ապա երկրորդը (1933—1937 թթ.) մի նոր հսկայական քայլ էր դեպի սոցիալիզմ։ Հաղթանակեց կուսակցության՝ երկրի ինդուստրացման քաղաքականությունը։ Հնգամյակի վերջում արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքի հարաբերակցությունը կազմեց՝ 77,4 և 22,6 տոկոս, 1913 թվականի 42,1 և 57,9 տոկոսի դիմաց. այսինքն՝ համախառն արտադրանքի $3/4$-ից ավելին տալիս էր արդյունաբերությունը։ Երկրորդ հնգամյակում գործի դրվեցին 4500 խոշոր ձեռնարկություն և արդյունաբերական արտադրանքը 120 տոկոսով գերազանցեց 1933 թվականի մակարդակը, այդ թվում արտադրամիջոցների արտադրությունը՝ 139, իսկ սպառման միջոցների արտադրությունը՝ 92 տոկոսով։ Երկրորդ հնգամյակի արդյունքների շնորհիվ ՍՍՀՄ-ը արդյունաբերական արտադրանքի ծավալով Եվրոպայում գրավեց առաջին տեղը, իսկ աշխարհում՝ երկրորդ (ԱՄՆ-ից հետո)։ Այդ հնգամյակը ո՛չ միայն տեխնիկական վերազինման, այլև սոցիալական արմատական տեղաշարժերի հնգամյակ էր, որի ընթացքում լիկվիդացվեցին շահագործող դասակարգերը, վերացվեց էկոնոմիկայի բազմակացութաձևությունը. սոցիալիստական տնտեսաձևը ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում լիակատար հաղթանակ տարավ։

Արմատապես փոխվեց նաև բնակչության սոցիալական կազմը. մնացին բանվոր դասակարգը, գյուղացիությունը (հիմնականում կոլտնտեսային) և ինտելիգենցիան։ Դա սոցիալիզմի լիակատար հաղթանակն էր մեր երկրում, որի հիմնական տնտեսական գործոնը երկրի ինդուստրացումն էր։

Հաջորդ հնգամյա պլանը լրիվ չիրագործվեց՝ 1941 թվականին մեր երկրի վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակման հետևանքով։ Հայրենական պատերազմի տարիներին (1941—1945 թթ.) երկրի ամբողջ էկոնոմիկան, առաջին հերթին, արդյունաբերությունը ի սպաս դրվեց թշնամու դեմ հաղթանակի գործին։ Հայրենական պատերազմում ՍՍՀՄ տարած հաղթանակը ցույց տվեց կուսակցության՝ երկրի ինդուստրացման քաղաքականության ամբողջ ճշտությունն ու հեռատեսությունը։ Այդ պատերազմում հաղթանակ տարավ ոչ միայն սոցիալիստական հասարակարգը, մեր փառապանծ բանակը, ողջ սովետական ժողովուրդը, այլև սոցիալիստական պլանային տնտեսությունը, և, առաջին հերթին, արդյունաբերությունը, որն անընդհատ ավելացող չափերով զենք, ռազմամթերք և այլ արտադրանք էր տալիս ճակատին, բավարարում քաղաքացիական բնակչության պահանջները։ Պատերազմի վերջին երեք տարում ՍՍՀՄ արդյունաբերությունը միջին հաշվով տարեկան թողարկում էր 30 հազար տանկ, ինքնագնաց հրետանային կայանք ու զրահամեքենա, 40 հազար ինքնաթիռ, մոտ 120 հազար թնդանոթ, 450 հազար ձեռքի և հաստոցային գնդացիր, ավելի քան 3 միլիոն հրացան և մոտ 2 միլիոն ավտոմատ։ Դա զգալիորեն ավելի էր, քան ռազմական տեխնիկայի արտադրանքը ֆաշիստական Գերմանիայում, ինչպես նաև Անգլիայում ու ԱՄՆ-ում։ Պատերազմի տարիներին սովետական Ուրալի հաղթանակը ֆաշիստական Գերմանիայի Ռուրի հանդեպ, մեր երկրի արդյունաբերության (որի զգալի մասը արևմուտ-

քից տեղափոխված էր արևելք կամ ավերված էր) հաղթանակն էր ֆաշիստական Գերմանիայի կապիտալիստական արդյունաբերության նկատմամբ:

Սակայն այդպիսի «հրաշք» տեղի ունեցավ ոչ միայն պատերազմի տարիներին, այլ նրանից հետո, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության վերականգնման և հետագա զարգացման ընթացքում: Ֆաշիստական Գերմանիայի՝ մեր երկրին հասցված վնասները այնքան մեծ էին, որ ո՛չ միայն սոցիալիզմի թշնամիները, այլև նույնիսկ բարեկամներից ոմանք կարծում էին, թե ՍՍՀՄ-ին տասնյակ տարիներ անհրաժեշտ կլինի երկրի էկոնոմիկայի, մասնավորապես արդյունաբերության վերականգնման համար: Բայց նորից «հրաշք». Սովետական Միության աշխատավորության ջանքերի շնորհիվ 1946—1950 թթ. հնգամյակում վերականգնվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունը: Հաջորդ հնգամյակում (1951—1955 թթ.) ՍՍՀՄ արդյունաբերության արտադրանքն արդեն 3,2 անգամ գերազանցում էր նախապատերազմյան՝ 1940 թվականի մակարդակը: Դրանից հետո էլ մեր երկրի էկոնոմիկան ընթանում էր արագ զարգացման ուղիով:

1959—1965 թվականներին ՍՍՀՄ արդյունաբերությունը մի նոր թռիչք կատարեց. արտադրանքի ծավալն ավելացնելով 84 տոկոսով՝ պլանով նախատեսված 80 տոկոսի դիմաց: Յոթնամյակի տարիներին կառուցվեց մոտավորապես 5,5 հազար խոշոր արդյունաբերական ձեռնարկություն:

Սովետական իշխանության տարիներին հսկայական կապիտալ ներդրումներ են կատարվել ժողովրդական տնտեսության՝ հատկապես արդյունաբերության մեջ: 1918—1964 թթ. կապիտալ ներդրումների ծավալը (համադրելի գներով) ՍՍՀՄ-ում կազմեց 590,8 միլիարդ ռուբլի, որի մեծ մասը ներդրվել է արդյունաբերության մեջ: Նոր հնգամյակում (1966—1970 թթ.) կապիտալ ներդրումների ծավալը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ հասնելու է 310 միլիարդ ռուբլու, որից արդյունաբերության, տրանսպորտի ու կապի զարգացմանը հատկացվում է մոտավորապես 152 միլիարդ ռուբլի: Կապիտալ ներդրումների ասպարեզում հիմնական խնդիրը եղել և մնում է նրա արդյունավետության բարձրացումը, ինչպես նաև շինարարության ու շինմոնտաժային աշխատանքների որակի արմատապես բարելավումը:

Կուսակցության XXIII համագումարում ընկ. Ա. Ն. Կոսիգինը համապատասխան տվյալներ բերեց ՍՍՀՄ արդյունաբերության զարգացման վերաբերյալ: Որոշ փոփոխումներ կատարելով նրա բերած աղյուսակում և ավելացնելով 1966 թվականի տվյալները, արդյունաբերական արտադրանքի հիմնական տեսակների արտադրության աճի հետևյալ պատկերն ենք ստանում.

| Արտադրանքի տեսակները | 1928 | 1940 | 1966 | 1966 թվականին 1928 թվ. համեմատ ավելի է | |
|---|---|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա (մլրդ կիլովատ-ժամ) | 5,0 | 48,3 | 545 | 108,8 | անգամ |
| Պողպատ (միլիոն տոննա) | 4,3 | 18,3 | 96,9 | 22,5 | » |
| Նավթ (միլիոն տոննա) | 11,6 | 31,1 | 265 | 22,8 | » |
| Գազ (մլրդ խորանարդ մետր) | 0,3 | 3,4 | 145 | 483.0 | » |
| Ածուխ (միլիոն տոննա) | 35,5 | 166 | 585 | 16,5 | » |
| Ցեմենտ (միլիոն տոննա) | 1,8 | 5,7 | 80,0 | 44,4 | » |
| Մետաղահատ հաստոց (հազար հատ) | 2 0 | 58,4 | 191 | 95,5 | » |
| Ավտոմոբիլ (հազար հատ) | 0,8 | 145 | 675 | 844.0 | » |
| Տրակտոր (հազար հատ) | 1,3 | 31,6 | 382 | 294,0 | » |
| Հանքային պարարտանյութ (պայմանական միավորներով) միլիոն տոննա | 0,14 | 3,2 | 358 | 2557 | » |



Աղյուսակը ցույց է տալիս, թե Սովետական Միությունը ինչպիսի մեծ նվաճումների է հասել մեծ Հոկտեմբերից հետո, հիսուն տարվա ընթացքում, ինչ փառապանծ ուղի է անցել սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: ՍՍՀՄ-ը դարձել է բարձր զարգացած ինդուստրիալ տերություն, կառուցել է սոցիալիզմ: Այդ հաջողությունները ձեռք են բերվել երկրի ներքին ռեսուրսների հաշվին, բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հերոսական աշխատանքի, սոցիալիստական կարգի առավելությունների շնորհիվ:

ՍՍՀՄ մեքենաշինությունը ներկայումս թողարկում է ամենափոքր չափերի ունիկալ մեքենաներ և սարքեր, հսկայական մեքենաներ ու սարքավորումներ: Միայն անցած յոթնամյակի տարիներին ՍՍՀՄ մեքենաշինությունը յուրացրեց ավելի քան 20 հազար նոր տիպի մեքենաների ու սարքավորումների արտադրությունը: Նույն ժամանակամիջոցում սարքերի և ավտոմատացման միջոցների թողարկումը ավելացավ 2,6 անգամ: Արագ տեմպերով աճում է էլեկտրոնային հաշվիչ մեքենաների արտադրությունը, որը մեծ նշանակություն ունի արտադրության ղեկավարման և պլանավորման կատարելագործման համար: 1966 թվականին Խարկովի Ս. Մ. Կիրովի անվան տուրբինի գործարանը թողարկեց 500 հազար կիլովատ կարողությամբ ագրեգատ, որի փոխադրման համար անհրաժեշտ է երկաթուղային համարյա երեք գնացք: Իժևսկի թղթի գործարանի համար թողարկված մեքենաներից ամեն մեկը փաստորեն մի առանձին ֆաբրիկա է, որի փոխադրման համար անհրաժեշտ են երկաթուղային 4—5 գնացք: Ավիացիոն արդյունաբերությունը թողարկում է հոյակապ ինքնաթիռներ և ուղղաթիռներ, ինչպես նաև գերձայնային ինքնաթիռներ, որոնք համաշխարհային հռչակ են վայելում: Երկաթուղային տրանսպորտը ավելի և ավելի է հագեցվում ժամանակակից քարշող մեքենաներով, վագոններով, ավտոմատացման ու կապի միջոցներով: Ներկայումս ՍՍՀՄ երկաթուղային տրանսպորտում էլեկտրաքարշերի և ջերմաքարշերի միջոցով իրագործվում է նրա քարշի 85 տոկոսից ավելին: Ջրային տրանսպորտում ստեղծվել են ժամանակակից ու մեծ արագության նավեր: Ավտոմոբիլային արդյունաբերությունը թողարկում է և թողարկելու է բեռնատար և մարդատար ավտոմեքենաների նոր և ավելի կատարելագործված տեսակներ: Բելոռուսիայում պատրաստվում են մասսայաբար թողարկել 40 տոննանոց հսկա ինքնաթափեր: Իտալական ֆիրմաների համագործակցությամբ Տոլյատի քաղաքում կառուցվում է մարդատար «Ֆիատ» տիպի ավտոմեքենաների գործարան, որի գործարկումով մեծապես կավելանա ավտոմեքենաների թողարկումը: Երևանի ավտոմոբիլային գործարանն արդեն թողարկել է «Երազ» ավտոմոբիլի առաջին պարտիան: «Երազ» ավտոմոբիլն իր տեխնիկական ցուցանիշներով հաջող քննություն է բռնել և լայն ընդունելություն գտել:

Ներկայումս միայն քիմիական մանրաթելի արտադրությամբ զբաղվում են ավելի քան 20 խոշոր գործարան, կառուցվում են նորերը: Քիմիական տասնյակ ձեռնարկություններ արտադրում են պլաստիկ մասսաներ, սինթետիկ ձյութ, արհեստական կաուչուկ և այլն: Հյուսիսային Կովկասում Գուդերմեսի մոտ կառուցվող քիմիական խոշոր գործարանը թողարկելու է սինթետիկ կաուչուկի մի քանի տեսակներ: Ընդլայնվում և տեխնիկապես վերազինվում է Երևանի Ս. Մ. Կիրովի անվան կաուչուկի գործարանը: Սկսվել է Բելոռուսիայի (Բոբրույսկ) ավտոդողերի գործարանի կառուցումը, ընդլայնվում է Վորո-

նեժի դողերի գործարանը։ Ընթացիկ հնգամյակում քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը ավելանալու է 2—2,5 անգամ։

Ժողովրդական տնտեսության տեխնիկական զարգացման նյութական հիմքը մետաղն է, մետալուրգիական արդյունաբերությունը։ Միայն անցած յոթնամյակին շարք մտան 18 դոմնային վառարան և 77 պողպատաձուլական ագրեգատ։ Հոկտեմբերյան հեղափոխության հոբելյանական տարում՝ 1967 թվականին ՍՍՀՄ մետալուրգիական արդյունաբերության կարողությունը կապահովի տարեկան մոտ 100 միլիոն տոննա պողպատի արտադրությունը՝ ցարական Ռուսաստանի 4,3 միլիոն տոննայի դիմաց։ Ընթացիկ հնգամյակի վերջում, 1970 թվականին պողպատի արտադրանքը կհասնի 124—129 միլիոն, իսկ թուջինը՝ 94—97 միլիոն տոննայի։

Հայտնի է, որ էլեկտրիֆիկացումն ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման էներգետիկ հիմքն է։ Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանում արտադրվում էր մոտ 2 միլիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ Սովետական Ռուսաստանում՝ 1920 թվականին միայն 500 միլիոն կվտ-ժամ, ապա 1966 թվականին ՍՍՀՄ-ում արտադրվեց 545 միլիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Անցած յոթնամյակի տարիներին շարք մտան աշխարհում ամենախոշոր Բրատսկի հիդրոէլեկտրակայանը և, Վոտկինսկի, Բուխտարմայի, Դնեպրոձերժինսկի, Կիևյան և այլ հիդրոէլեկտրակայանները, ինչպես նաև մի շարք խոշոր ջերմաէլեկտրակայաններ։ Միայն մեկ տարում՝ 1966 թվականին էլեկտրաէներգիայի արտադրանքը ՍՍՀՄ-ում ավելացավ 38 միլիարդ կվտ-ժամ։

Ընթացիկ հնգամյակի վերջում էլեկտրաէներգիայի արտադրանքը հասնելու է 830—850 միլիարդ կվտ-ժամ-ի։ Սովետական Միությունում (առաջին անգամ աշխարհում) կառուցվել և շահագործվում են 500 հազար վոլտ փոփոխական հոսանքի և 800 հազար վոլտ մշտական հոսանքի լարվածության էլեկտրագծեր։

Միայն ընթացիկ հնգամյակի առաջին տարում՝ 1966 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, բոլոր տեսակի գործվածքեղենի արտադրանքն ավելացավ 365 միլիոն քառակուսի մետրով, տրիկոտաժե վերնազգեստինը՝ 34 միլիոն հատով, հագուստեղենինը՝ 894 միլիոն ռուբլով, կաշվե կոշկինը՝ 36 միլիոն զույգով, ռադիոընդունիչներինը և ռադիոլներինը՝ 682, հեռացույցներինը՝ 760, լվացքի մեքենաներինը՝ 439 հազար հատով և այլն։

ՍՍՀՄ-ն իր արդյունաբերության մի շարք կարևորագույն ցուցանիշներով այժմ գերազանցում է զարգացած կապիտալիստական երկրներին։ Եթե կապիտալիստական երկրներում՝ ինդուստրացման տարիներին արդյունաբերության արտադրանքի տարեկան աճի միջին տեմպերը 10 տոկոսից բարձր չեն եղել, ապա ՍՍՀՄ-ում այն եղել է 17—19 տոկոսի, իսկ երբեմն էլ դրանից ավելի։ ՍՍՀՄ արդյունաբերության աճի բարձր տեմպերը կապիտալիստականի համեմատ պահպանվել են և հետագայում։ Այսպես, 1946—1965 թվականներին ՍՍՀՄ-ում արդյունաբերության արտադրանքի միջին տարեկան աճը կազմել է 11,4, իսկ ԱՄՆ-ում՝ 3,4 տոկոս, այսինքն՝ ՍՍՀՄ արդյունաբերության աճի տեմպերը ամերիկյանին գերազանցել են մոտ 3,2 անգամ («Экономика социалистических стран в цифрах, 1965 год», изд. Мысль, 1966, стр. 198)։

Առավել բարձր տեմպերով է աճել արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ)։ 1965 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, արտադրամիջոցների արտադրությունն ավելացել է 10,5, իսկ սպառման միջոցներինը՝ 4,4 անգամ. այդ նշանակում է, որ արտադրամիջոցների արտա-



դրանքի աճը մոտ 2,3 անգամ գերազանցել է սպառման միջոցների արտադրանքի աճին։ Սակայն «Ա» և «Բ» խմբերի աճի հարաբերակցությունը մշտական չէ, այն փոփոխվում է մեր երկրի զարգացման այս կամ այն փուլում ձեռք բերված տնտեսական նվաճումների և քաղաքական խնդիրների համեմատ։ Ներկայումս մեր երկրի տնտեսական զարգացումը հասել է այնպիսի մակարդակի, երբ հնարավորություն է ստեղծվել ընդհուպ մոտեցնել արտադրության և սպառման միջոցների արտադրության աճի տեմպերը, որպես աշխատավորների կենսամակարդակի բարձրացման կարևոր պայման։

Կուսակցության XXIII համագումարի ընդունած՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության 1966—1970 թթ. զարգացման հնգամյա պլանի մասին դիրեկտիվներում նախատեսված է «Ա» խմբի արտադրանքի ծավալն ավելացնել 49—52, իսկ «Բ» խմբինը՝ 43—46 տոկոսով, այսինքն՝ նրանց աճի տարբերությունը կազմելու է մոտ 6 տոկոս։ Ընթացիկ հնգամյակի առաջին տարվա արդյունքները ցույց են տալիս, որ դրանց աճի տեմպերի հարաբերակցությունը փոխվել է՝ «Ա» խմբինը 9 տոկոս է, «Բ»-ինը՝ 7։ Արտադրամիջոցների արտադրության առավել զարգացումը մնում է որպես սոցիալիզմի տնտեսական օրենքներից մեկը, որի հիման վրա իրագործվում է ընդլայնված սոցիալիստական վերարտադրությունը։

ՍՍՀՄ արդյունաբերության ճյուղային կառուցվածքը կատարելագործվում է ժամանակակից և հեռանկարային ճյուղերի առավել զարգացման միջոցով։ Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է արդյունաբերության այնպիսի ճյուղերի առաջնահերթ զարգացում, ինչպիսիք են էլեկտրաէներգետիկան, մեքենաշինությունը՝ իր բազմաթիվ ենթաճյուղերով, քիմիական արդյունաբերությունը, մետաղամշակումը, արտադրության տնտեսապես առավել շահավետ տեսակների բաժնի մեծացումը, որոնք ավելի պակաս ծախսերով ապահովում են հասարակության պահանջմունքները։ Այդ տեսակետից հատկանշական են վառելիքի արդյունաբերության մեջ կատարվող կառուցվածքային փոփոխությունները։ Եթե 1950 թվականին քարածխի տեսակարար կշիռը վառելիքի արտադրության հաշվեկշռում 66,1 տոկոս էր, նավթինը՝ 17,4, գազինը՝ 2,3, տոկոս, իսկ մնացածն ընկնում էր տորֆի, փայտի և այլ վառելանյութերի արտադրանքին, ապա հետագայում զգալի չափով իջնում է քարածխի և վառելանյութի մյուս տեսակների տեսակարար կշիռը, դրա փոխարեն բարձրանում նավթինն ու գազինը և 1966 թվականին կազմում վառելիքի արտադրության հաշվեկշռի ավելի քան 52 տոկոսը (1950 թվականի 19,7 տոկոսի դիմաց)։

Երկրի տեխնիկական առաջադիմության նյութական հիմքը մեքենաշինությունն է, որով պայմանավորված է ինչպես հենց իր՝ արդյունաբերության, այնպես էլ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի տեխնիկական վերազինումը։ Արդյունաբերության այդ ճյուղի զարգացման հարցերը միշտ էլ գտնվել են կուսակցության ուշադրության կենտրոնում։ Եթե 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը ավելացել է մոտ 60 անգամ, ապա մետաղահատ հաստոցների արտադրանքն ավելացել է 109 անգամ։ Եվ եթե մետաղահատ հաստոցների քանակը ցարական Ռուսաստանում, 1908 թվականին, 75 հազար էր, իսկ ՍՍՀՄ-ում, 1940 թվականին, 710 հազար, ապա 1965 թվականին (հունվար) այն 2760 հազար էր։

Դրա հետ միասին մասսայաբար իրագործվում է հաստոցների և սարքա-

վորումների մոդեռնացումը, որը տնտեսական խոշոր արդյունք է տալիս։ Միայն անցած տարի ՍՍՀՄ-ում ստեղծվել են նոր մեքենաների, սարքավորումների, ապարատների ավելի քան 3000 նմուշ և սարքերի 1500 նոր տիպ, որոնցից շատերը հանձնված են սերիական արտադրության։

Արդյունաբերության և ողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմության գործում մեծ դեր է խաղում աշխատողների ձեռներեցությունը, գյուտարարական և ռացիոնալիզատորական շարժումը։ Միայն 1965 թվականին արմատավորվել են մոտ 2 միլիոն 800 հազար գյուտ ու ռացիոնալիզատորական առաջարկ, որոնք տարեկան 2 միլիարդ ռուբլու խնայողություն են տալիս։ Սովետական իշխանության տարիներին ՍՍՀՄ արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերն արագ տեմպերով աճել և 1965 թվականի սկզբին կազմել են 137 միլիարդ ռուբլի, իսկ շինարարության հետ մեկտեղ 146 միլիարդ ռուբլի կամ երկրի ամբողջ արտադրական ֆոնդերի 31 տոկոսը։ Անցած յոթնամյակի տարիներին արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերն աճեցին երկու անգամ։ Տեխնիկական առաջադիմության հետ միաժամանակ նրանցում տեղի են ունենում որակական փոփոխություններ։ Հիմնական արտադրական ֆոնդերում ավելի և ավելի է բարձրանում առավել ակտիվ և վճռական դեր կատարող մեքենաների, սարքավորումների, կառուցումների տեսակարար կշիռը, մեկ բանվորին ընկնող էներգազինվածությունը. ծավալվում է արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։ 1965 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի էներգազինվածությունը աճել է 20, իսկ էլեկտրազինվածությունը՝ 33 անգամ (СССР в цифрах в 1965 году, стр. 65)։

Տեխնիկական պրոգրեսի, արտադրական ֆոնդերի աճի հետ միասին, արդյունաբերության զարգացման կարևորագույն պայմանը որակյալ բանվորական և մասնագիտական կադրերի պատրաստումն ու վերապատրաստումն է, աշխատանքի գիտական կազմակերպումն ու աշխատավարձի կատարելագործումը, սոցիալիստական մրցության, նրա ժամանակակից բարձր ձևի՝ հանուն կոմունիստական աշխատանքի շարժման ծավալումը։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունում արդյունաբերության մեջ աշխատողների անձնակազմի տեսակարար կշիռը 1965 թվականին 35 տոկոս էր կամ ավելի քան 27 միլիոն մարդ, որից 22350 հազարը՝ բանվոր։

Բանվորական կադրերը հիմնականում պատրաստվում են պրոֆեսիոնալ-տեխնիկական դպրոցներում և ուսումնարաններում։ Եթե 1940 թվականին 493 հազար տարբեր մասնագիտության որակյալ կադրեր են պատրաստվել, ապա 1966 թվականին դրանց թիվը մեկ միլիոնից անցել է։ Բացի այդ, ձեռնարկություններում անհատական և բրիգադային աշակերտության միջոցով 1950 թվականին պատրաստվել են 2326 հազար երիտասարդ բանվոր, 1964-ին՝ 3332 հազար։ Միաժամանակ տեղի է ունենում բանվորական կադրերի մասսայական վերապատրաստում, նրանց որակավորման բարձրացում՝ ըստ մասնագիտությունների։ Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանում կար միայն 190 հազար մասնագետ, ապա 1965 թվականի վերջում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 12066 հազար մասնագետ կար. 1965 թվականին ՍՍՀՄ-ում կար 1631 հազար դիպլոմ ունեցող ինժեներ, իսկ ԱՄՆ-ում՝ 725 հազար։ Ինժեներական կադրերի պատրաստման տեսակետից ՍՍՀՄ-ը վերջերս գերազանցել է ԱՄՆ-ին։ 1950 թվականին ՍՍՀՄ-ում պատրաստվել է 37 հազար ինժեներ, իսկ



ԱՄՆ-ում՝ 61, 1965 թվականին համապատասխանորեն՝ 170 և 42 հազար (СССР в цифрах в 1965 году, стр. 46)։

Արդյունաբերության զարգացման կարևորագույն գործոնն ու ցուցանիշը, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, նրա ձեռք բերած մակարդակն է։ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճի տեմպերով ՍՍՀՄ-ը վաղուց է գերազանցել խոշոր կապիտալիստական երկրներին։ Այսպես, եթե ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակը 1950 թվականին ընդունենք 100, ապա 1964 թվականին այն կազմել է 237, ԱՄՆ-ում՝ 177, Անգլիայում՝ 153, Ֆրանսիայում՝ 216, ԳՖՀ-ում՝ 199 տոկոս։

Ցարական Ռուսաստանի 1913 թվականի համեմատությամբ 1964 թվականի ՍՍՀՄ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 13,7 անգամ։ Չնայած աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպերին, մեր երկրի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակը դեռևս զգալիորեն ցածր է ԱՄՆ-ից (նրա 40—50 տոկոսն է կազմում)։ Աշխատանքի արտադրողականության մակարդակով ևս ՍՍՀՄ-ը պատմական կարճ ժամանակամիջոցում կհասնի և կանցնի ԱՄՆ-ին։ Միայն ընթացիկ հնգամյակում աշխատանքի արտադրողականությունը ՍՍՀՄ արդյունաբերության մեջ բարձրանալու է 33—35 տոկոսով։

Այսպիսով, ՍՍՀՄ արդյունաբերությունը սովետական իշխանության տարիներին ինչպես քանակական, այնպես էլ որակական ցուցանիշներով հասել է պատմական մեծագույն նվաճումների։

Սակայն այդ չի նշանակում, որ դրանք ձեռք են բերվել առանց մեծ ջանքերի, առանց թերությունների ու դժվարությունների հաղթահարման։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումը ուժեղացնելու մասին կարևոր նշանակություն ունեցող որոշում ընդունեց, որով հիմք դրվեց ՍՍՀՄ (արդեն կիրառվող) տնտեսական ռեֆորմին։ Այդ ռեֆորմը ընթանում է տնտեսական շինարարության ասպարեզում սուբյեկտիվիզմի վերացման, սոցիալիզմի տնտեսական օրենքների, մասնավորապես արժեքի օրենքի պահանջների ավելի լրիվ ճանաչման և օգտագործման, նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքի հետևողական կիրառման նշանաբանով։

Կոմունիստական կուսակցության՝ երկրի ինդուստրացման քաղաքականության հաղթանակի շնորհիվ ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ բարձրացավ մեծ չափով։ 1913 թվականին ցարական Ռուսաստանի արդյունաբերական արտադրանքը համաշխարհային արտադրանքի միայն 4 տոկոսն էր, իսկ այժմ ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքը համաշխարհային արտադրանքի մոտ 20 տոկոսն է, իսկ ամենազարգացած կապիտալիստական երկրի՝ ԱՄՆ-ի, ավելի քան 65 տոկոսը (1950 թվականի մոտ 30 տոկոսի դիմաց)։ ՍՍՀՄ արդյունաբերությունն արագ տեմպերով ընթանում է ԱՄՆ-ի արդյունաբերության արտադրանքի ծավալին հասնելու ուղղությամբ։ Դրա հետ մեկտեղ մեծ չափով փոքրացել և փոքրանում է ՍՍՀՄ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի տարբերությունը ԱՄՆ-ի համեմատությամբ (մանավանդ առանձին արտադրանքների գծով), իսկ արտադրանքի որոշ տեսակներով նույնիսկ գերազանցել է նրան։ Արտադրանքի հիմնական տեսակների տարեկան բացարձակ աճով

և առանձին տեսակների արտադրանքի ծավալով ՍՍՀՄ-ն արդեն գերազանցում է ԱՄՆ-ին (երկաթի հանքաքար, ածուխ, շոգեքարշներ և այլն)։ Հեռու չէ այն ժամանակը, երբ ՍՍՀՄ-ը կհասնի և կանցնի ԱՄՆ-ին ինչպես արտադրանքի հիմնական տեսակների բացարձակ ծավալով, այնպես էլ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով։ Այդ են վկայում մեր երկրի արդյունաբերության աճի ավելի բարձր տեմպերը, գիտատեխնիկական առաջադիմությունը, տիեզերական տարածությունների նվաճումը, ատոմային էներգիայի խաղաղ նպատակներով օգտագործումը և գիտության ու տեխնիկայի այլ ասպարեզներում ձեռք բերած նվաճումները։

*Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ ՍՍՀՄ ազգային հանրապետությունները, ինչպես և Հայկական ՍՍՀ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, պատմական կարճ ժամանակամիջոցում ագրարային հետամնաց երկրից դարձան զարգացած, առաջավոր, ինդուստրիալ սոցիալիստական հանրապետություններ։ Արդյունաբերության զարգացման աճի տեմպերն ազգային հանրապետություններում ավելի բարձր էին, քան ամբողջ ՍՍՀՄ-ում։*

*Այժմ, երբ ՍՍՀՄ-ում կառուցվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, որում գլխավոր դերը պատկանում է արդյունաբերությանը, հատկապես նրա առաջատար ճյուղերին, մեր երկրի աշխատավորները, ինչպես և Հայաստանի աշխատավորները լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, ջանքեր չեն խնայում արժանավայել դիմավորելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության, սովետական ժողովրդի պատմական մեծագույն նվաճումների հաղթանակի 50-ամյակը, նրա կես դարը։*

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԸ ՀԱՆՈՒՆ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ

(1917 թ. մարտ–հոկտեմբեր)

1917 թ. փետրվարյան հեղափոխության հաղթանակը Պետրոգրադում և Մոսկվայում լայն արձագանք գտավ Անդրկովկասի աշխատավոր մասսաների մեջ։ Այստեղ ևս կազմակերպվեցին բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետներ։ Մարտի 4-ին ընտրվեց Թիֆլիսի բանվորների դեպուտատների սովետը, իսկ մարտի 6-ին՝ Բաքվի բանվորների դեպուտատների սովետը։

Դուրս գալով ընդհատակից, բոլշևիկյան կազմակերպություններն ընդլայնեցին իրենց գործունեությունը։ Բաքվում, Թիֆլիսում, Ալեքսանդրապոլում և այլուր սկսեցին վերահրատարակվել բոլշևիկյան թերթերը։ Աքսորից, բանտերից, էմիգրացիայից վերադառնում էին կուսակցության նշանավոր գործիչները՝ Ստ. Շահումյանը, Մ. Ցխակայան, Ա. Ջափարիձեն, Ս. Էֆենդիևը, Մ. Իսրաֆիլբեկովը և ուրիշներ։ Մինչ Շահումյանի Բաքու գալը, բանվորները հեռակա կարգով նրան ընտրեցին Բաքվի բանվորների դեպուտատների սովետի նախագահության նախագահ։

Ինչպես ամբողջ կուսակցության, այնպես էլ նրա անբաժան մասը կազմող Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների հետագա գործունեության համար անգնահատելի նշանակություն ունեցավ կուսակցության առաջնորդ Վ. Ի. Լենինի վերադարձը Պետրոգրադ, Լենինի Ապրիլյան հռչակավոր թեզիսները, նրա մյուս ելույթները և ՌՍԴԲԿ(բ) ապրիլյան կոնֆերանսի պատմական որոշումները։

Կուսակցության կենտրոնական կոմիտեն և անձամբ Վ. Ի. Լենինը ուղղություն էին տալիս տեղական կուսակցական կազմակերպությունների աշխատանքին, օգնում նրանց մերկացնելու ազգայնական կուսակցություններին, մեծամասնություն նվաճելու սովետներում, ամրապնդելու բանվորների և գյուղացիների դաշինքը, տարբեր ազգերի աշխատավորներին համախմբելու բոլշևիկյան դրոշի ներքո։

Սոցիալիստական հեղափոխության համար մղվող պայքարն Անդրկովկասում ընթանում էր չափազանց բարդ պայմաններում։ Թույլ զարգացած արդյունաբերության, անբավարար կազմակերպվածության և պրոլետարիատի սակավաթվության, ազգային թշնամանքի բռնկման հետևանքով մուսավա-

թականներին, դաշնակներին և վրացական մենշևիկներին հաջողվել էր ժամանակավորապես ուժեղացնել իրենց ազդեցությունը բնակչության մանրբուրժուական խավերի, զինվորների ու բանվորների զգալի մասի վրա: Դա բացատրվում է նաև նրանով, որ երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունները, մինչև 1917 թվականը թուլացել էին ցարիզմի ռեպրեսիաներից:

Հաղթահարելով դժվարությունները, Անդրկովկասի բոլշևիկները մասսաներին համախմբում էին իրենց շուրջը: Կուսակցության կենտկոմը և անձամբ Լենինը, հաճախ Անդրկովկաս էին ուղարկում փորձված կուսակցական աշխատողների՝ տեղերում անմիջական օգնություն ցույց տալու համար: Բոլշևիկյան թերթերից հատկապես մեծ էր «Правда»»-ի դերը, որում զետեղվում էին Վ. Ի. Լենինի ղեկավար հոդվածներն ու կուսակցական այլ փաստաթղթեր, որոնք արտատպվում էին տեղական թերթերում:

1917 թվականին Կովկասի բոլշևիկները տարբեր քաղաքներում ռուսերեն, վրացերեն, հայերեն և ադրբեջաներեն լեզուներով մի շարք թերթեր էին հրատարակում. Թիֆլիսում լույս էր տեսնում «Кавказский рабочий», «Բրձոլա», «Բանվորի կռիվը», Բաքվում՝ «Бакинский рабочий», «Հումմեթ», «Социал-демократ», Ալեքսանդրապոլում՝ «Նոր կյանք», «Правда жизни», Սուխումիում՝ «Сухумская правда», Բաթումիում՝ «Буревестник», Քութաիսիում՝ «III интернационал», Շուշիում՝ «Նեցուկ», Սարիղամիշում՝ «Սոցիալ-դեմոկրատ» և այլն: Հիշյալ թերթերի էջերում արտատպվում էին Վ. Ի. Լենինի հոդվածները, կուսակցության որոշումները, Պետերբուրգի, Մոսկվայի, Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների բանաձևերը և այլ նյութեր:

1917 թվականի մարտից—Հոկտեմբեր միայն «Кавказский рабочий», «Բրձոլա» և «Բանվորի կռիվը» թերթերում տպագրվել են Վ. Ի. Լենինի մոտ 60 հոդված ու ելույթ, իսկ նույն թվականի ապրիլից-հոկտեմբեր «Бакинский рабочий» թերթը արտատպել է 29 հոդված:

1917 թվականի ապրիլի 22-ին «Бакинский рабочий»-ի առաջին համարում, իսկ երեք օր անց նաև «Кавказский рабочий»-ում տպագրվեցին Լենինի Ապրիլյան թեզիսները: Այդ առթիվ գրված խմբագրական հոդվածում «Бакинский рабочий» թերթը մերկացրեց բուրժուական մամուլի անզուսպ զրպարտանքն ընդդեմ բոլշևիկների առաջնորդի:

Անդրկովկասի բոլշևիկները ծավալում էին լենինյան ազգային քաղաքականության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների տպագիր ու բանավոր պրոպագանդա վրացերեն, հայերեն և ադրբեջաներեն:

1917 թվականի մայիսի 1-ին հայկական «Սոցիալ-դեմոկրատ» բոլշևիկյան թերթում Ստ. Շահումյանը գրում էր. «Կովկասին ամենից առաջ հարկավոր է միջազգային համերաշխություն... Բանվորների շահերը միատեսակ են, լինեն նրանք հայ, թե ռուս, վրացի, թե թուրք...»: Աշխատավոր ադրբեջանցիներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով էր դաստիարակում բոլշևիկյան «Հումմեթ» թերթը: 1917 թվականի հուլիսի 3-ի համարում թերթը գրում էր. մեր նպատակն է միավորել բոլոր մարդկանց: Մենք ասում ենք՝ բոլոր ժողովուրդներն ու ազգությունները միևնույն նպատակն ունեն: Նպատակի այդ միասնությունը բոլոր ժողովուրդներին եղբայրության է կոչում... «Հումմեթ»-ը լինելով ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատական կուսակցության մի մասը, իր դրոշի վրա գրել է. «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»:

1917 թվականի մայիսին Կովկասի բոլշևիկյան շատ թերթերում երևացին



ՌՍԴԲՊ(բ) ապրիլյան կոնֆերանսի նյութերը: «Բրձոլա»-ի № 1 և առանձին բրոշյուրով հրապարակվեցին կոնֆերանսի բանաձևերը:

Մինչև Վ. Ի. Լենինի Ապրիլյան թեզիսները ստանալը և ապրիլյան կոնֆերանսի որոշումն, Անդրկովկասի բոլշևիկների շրջանում, ինչպես և կուսակցական շատ այլ կազմակերպություններում, հեղափոխության մի քանի արմատական հարցերի ըմբռնման խնդրում կային անորոշություններ ու սխալներ: Որոշ բոլշևիկներ ժամանակավոր կառավարության նկատմամբ «պայմանական աջակցության» դիրք բռնեցին: Փետրվարյան հեղափոխությունից հետո բոլշևիկյան շատ կազմակերպություններ միավորվեցին մենշևիկների հետ՝ սոցիալ-դեմոկրատական միասնական կազմակերպությունների մեջ: Այդպես եղավ Բաքվում, Թիֆլիսում, Քութաիսիում, Բաթումիում, Ելիզավետպոլում (Գյանջայում), Ալեքսանդրապոլում, Երևանում, Սարիղամիշում, Ղարսում և այլուր:

Այդպիսի միավորումը լուրջ սխալ էր, որովհետև այն խանգարում էր աշխատավորական մասսաների առջև մերկացնելու մենշևիկների հակահեղափոխական, դավաճանական քաղաքականությունը: 1917 թվականի մարտի 17-ին Ա. Կոլլոնտային գրած նամակում Վ. Ի. Լենինն զգուշացնում էր համախոհներին չխճճվել սոցիալ-հայրենասերների հետ հիմար «միավորիչ» փորձերի մեջ և «շարունակել մեր կուսակցության աշխատանքը հետևողական-ինտերնացիոնալ ոգով» (տե՛ս Երկեր, հ. 35, էջ 323):

Ռուսաստանի և Անդրկովկասի շատ վայրերում բոլշևիկների ու մենշևիկների միավորումն հիմնականում ձևական բնույթ էր կրում: Բոլշևիկները պրակտիկ գործողություններում մեծ մասամբ ինքնուրույն էին. նրանք չէին դադարեցնում պայքարը մենշևիկների համաձայնողական քաղաքականության դեմ և շուտով կազմակերպչորեն լիովին անջատվեցին նրանցից:

Ապրիլյան թեզիսների և Լենինի այլ աշխատությունների, կուսակցության ապրիլյան կոնֆերանսի որոշումների խոր ուսումնասիրությունը պարզություն մտցրեց բոլոր հարցերում: Անդրկովկասի բոլշևիկները ջերմորեն պաշտպանեցին լենինյան թեզիսները և ապրիլյան կոնֆերանսի որոշումները, մերկացրին Անդրկովկասի հակահեղափոխական, նացիոնալիստական և մյուս կուսակցությունների զրպարտչական հարձակումները Լենինի հասցեին:

1917 թվականի ապրիլի 28-ին Թիֆլիսի բոլշևիկների ընդհանուր ժողովը երկրամասի բանակային համագումարի ներկայացուցիչների հետ մեկտեղ ողջույն ուղարկեց բոլշևիկների ապրիլյան կոնֆերանսին: «...Մենք համոզված ենք,— ասված էր այնտեղ,— որ կոնֆերանսի որոշումները վստահելի ղեկավարություն կլինեն իր իդեալների իրականացման համար հեղափոխական պրոլետարիատի մղած պայքարում: Մենք վստահ ենք, որ ցարական Ռուսաստանի հալածանքներին ու հետապնդումներին սովոր մեր սիրելի առաջնորդը, ընկեր Լենինը, իրեն հատուկ տոկունությամբ ետ կմղի հակահեղափոխական բուրժուազիայի ու նրա բոլոր կամակատարների հարձակումները»:

Հունիսի 25-ին Բաքվի կուսակցական կազմակերպության համաքաղաքային կոնֆերանսը որոշեց մենշևիկ-պաշտպանողականների հետ վճռականապես խզել կազմակերպական կապերը: Հենց այդ ժամանակից ի վեր,— գրում է Ա. Ի. Միկոյանը,— ավարտվում է կարճատև միասնությունը (մարտից-հունիս) մենշևիկների հետ և սկսվում նոր շրջան, երբ մեր կուսակցական կազմակերպությունը ո՛չ միայն մենշևիկներից անջատ է իր գոյությունը պահպանում, այլև մենակ իր ուսերի վրա է կրում բանվորների գործի համար մղվող

ողջ ծանր, վիթխարի պայքարը, իր դեմ՝ բարիկադների այն կողմում ունենալով ո՛չ միայն բուրժուազիային ու կալվածատերերին, այլև նրանց պոչերին՝ էսեռներին ու մենշևիկներին (տե՛ս Победа Великой Октябрьской социалистической революции. Сборник воспоминаний, М., 1958 г., стр. 337):

Բաքվի բոլշևիկների հետագա գործունեության համար մեծ նշանակություն ունեցավ 1917 թվականին Պետրոգրադում Շահումյանի հանդիպումը Լենինի հետ: Հունիսի 3-ից 24-ը Շահումյանը՝ որպես Բաքվի սովետի պատգամավոր, մասնակցեց Լենինի ղեկավարած սովետների առաջին համառուսաստանյան համագումարին: Համագումարում ունեցած ելույթում մերկացնելով մյուս երկրների ու ժողովուրդների, ինչպես և Հայաստանի հանդեպ բուրժուական ժամանակավոր կառավարության իմպերիալիստական օգնության քաղաքականությունը, Լենինը հայտարարում է, որ պետք է զորքերը դուրս բերել Հայաստանից, այն դարձնել անկախ Հայկական հանրապետություն (տե՛ս Երկեր, հ. 25, էջ 37): Համագումարում Շահումյանը բոլշևիկյան ֆրակցիայի անունից հաշտություն կնքելու բանաձև առաջարկեց:

Անդրկովկասի բոլշևիկները ողջ կուսակցության հետ մեկտեղ մինչև վերջ հավատարիմ մնացին սիրելի առաջնորդին: Նրանք շարունակում էին լենինյան հեղափոխության դրոշի շուրջը համախմբել մասսաներին: Նրանց բացատրում էին ժամանակավոր կառավարության քաղաքականության հակաժողովրդական բնույթը, պատմում ճշմարտությունը Լենինի, բոլշևիկների մասին: Բոլշևիկների հասցեին բուրժուազիայի, էսեռների ու մենշևիկների կեղտոտ զրպարտանքների մերկացման գործում հատկապես մեծ նշանակություն ունեցավ Լենինի Պատասխան հոդվածը (Երկեր, հ. 25, էջ 257—271), որը հրապարակվեց «Рабочий и солдат» (№ 3 և 4, 26 և 27 հուլիս, 1917 թ.) թերթում:

Թիֆլիսում հուլիսի 9-ին, Ալեքսանդրովյան այգում միտինգ արին երեք հազար զինվոր ու քաղաքացի. նրանք բողոքում էին Լենինի բանտարկության վերաբերյալ ժամանակավոր կառավարության հրամանի դեմ: Ընդունված բանաձևում նշվում էր, որ ընկ. Լենինն ու մյուս բոլշևիկներն ազատության համար պայքարող առաջավոր մարտիկներ են, «որոնք իրենց ողջ կյանքը նվիրել են ցարական կամայականության դեմ պայքարին և, այժմ լինելով հեղափոխական դեմոկրատիայի առաջին շարքերում, պայքարում են թշնամիների՝ հակահեղափոխական բուրժուազիայի դեմ» («Кавказский рабочий» № 98, 1917 г.):

Լենինին պաշտպան կանգնեց նաև «Բանվորի կռիվը» թերթը, որը գրում էր, թե Լենինը բուրժուազիայի աչքում մարմնավորումն է այն բանի, որ մի օր անխուսափելիորեն բանվոր դասակարգի ձեռքը պիտի անցնի քաղաքական իշխանությունը: Բաքվում բողոքի մեծ ալիք բարձրացավ Լենինի հասցեին արված զրպարտանքի դեմ:

Ադրբեջանցի բանվորները, «Հումմեթ» կազմակերպության անդամները, իրենց բանաձևերից մեկում խիստ բողոքում էին Լենինի նկատմամբ անհիմն մեղադրանքի դեմ (տե՛ս Большевики в борьбе за победу социалистической революции в Азербайджане. Документы и материалы-1917—1918 гг., Баку, 1957, стр. 56).

1917 թվականի հուլիսին Կարսից «Кавказский рабочий» թերթին գրում էին. «Ընկեր Լենինն ու բոլոր բոլշևիկները դա այն կուսակցությունն է, որն



ամենից լավ է արտահայտում զինվորների, գյուղացիների և բանվորների շահերը» (№ 92, 1917 թ.): Հուլիս-օգոստոսին Ալեքսանդրապոլի բոլշևիկները հատուկ թռուցիկներ հրապարակեցին, թերթերում հոդվածներ տպագրեցին պաշտպանելով Լենինին:

Անդրկովկասի բոլշևիկները մեծ աշխատանք ծավալեցին կուսակցության VI համագումարի որոշումների լուսաբանման և իրականացման ուղղությամբ: Բաքվում զեկուցումներով ու հոդվածներով հանդես եկավ Ա. Ջափարիձեն: Բարձր գնահատելով համագումարի պատմական նշանակությունը որպես սոցիալիստական հեղափոխությանը նախապատրաստվելու համագումարի, նա նշում էր. «Չնայած մեր կուսակցության բացառիկ դրությանը, չնայած մեծ արգելքներին, համագումարը կարողացավ պատասխանել բոլոր կարևորագույն հարցերին: «Бакинский рабочий»-ում տպագրված Համագումարի մասնակցի տպավորությունները հոդվածում, Ջափարիձեն գրում էր. «Ազատ» Ռուսաստանում, պրոլետարիատի կուսակցության առաջին լեգալ համագումարում չկա նա, ով, առանց խնայելու իր ողջ կյանքը նվիրաբերել է պրոլետարիատի իրոք դասակարգային կուսակցության ստեղծմանը, նա, ով վաղուց հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի ճանաչված առաջնորդն է մեզանում, իսկ պատերազմի ժամանակներից՝ առաջավոր միջազգային պրոլետարիատի լավագույն առաջնորդը. չկա նա, ով մեր կուսակցության գրեթե բոլոր համագումարներում լավագույն ու հմուտ ղեկավար-նախագահն էր... Չկա Լենինը— բոլորս զգում ենք, որ նրանն է նախագահողի տեղը: Շատերը չեն զսպում և արտասանում են նրա անունը՝ ճզովելով նրա բացակայության համար մեղավորներին... (П. А. Джапаридзе. Избранные статьи, речи и письма 1905—1918 гг. Москва, 1958, стр. 179):

Գտնվելով ընդհատակում, Լենինը անձամբ և Կենտկոմի միջոցով կապ էր պահպանում Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունների հետ, հետաքրքրվում կովկասյան իրադրություններով, տեղական բոլշևիկների գործունեությանը ուղղություն, ցուցումներ ու խորհուրդներ տալիս: Սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման շրջանում Կովկասում աշխատող բոլշևիկներից Լենինի հետ հանդիպում էին Մ. Ցխակայան, Ստ. Շահումյանը, Ս. Օրջոնիկիձեն, Ա. Ջափարիձեն, Ա. Ենուկիձեն, Ե. Ստասովան, Ս. Մ. Կեդրովը, Ս. Ա. Տեր-Պետրոսյանը (Կամո) և ուրիշներ: Կենտկոմի հանձնարարությամբ Օրջոնիկիձեն հուլիս ամսին Ռազլիվ կայարանում հանդիպեց Լենինին և նրանից մի շարք ցուցումներ ստացավ: Այդ հանդիպման մասին Օրջոնիկիձեն հետագայում գրել է. «Վլադիմիր Իլյիչը ինձ լսելուց և մի շարք հարցեր տալուց հետո, ասաց.

— Մենշևիկյան սովետները վարկաբեկեցին իրենց: Մի երկու շաբաթ առաջ նրանք կարող էին առանց որևէ դժվարության վերցնել իշխանությունը: Այժմ նրանք իշխանության օրգաններ չեն: Իշխանությունը նրանցից խլված է: Այժմ իշխանությունը կարելի է վերցնել զինված ապստամբության միջոցով, այդ իրեն երկար ժամանակ սպասեցնել չի տա: Ապստամբությունը կլինի սեպտեմբեր-հոկտեմբերից ոչ ուշ: Մենք ծանրության կենտրոնը պետք է փոխադրենք ֆաբգործկոմները: Ապստամբության օրգանները պետք է ֆաբգործկոմները լինեն...

Այս ամենը ես լսում էի լարված ուշադրությամբ: Տպավորությունը շշմեցուցիչ էր: Մեզ նոր էին ջարդել, իսկ նա կանխագուշակում էր որ մեկ-երկու ամսից հետո հաղթական ապստամբություն կլինի...

...Երբ ես հաղորդեցի մի ընկերոջ խոսքերը, որ ոչ-ուշ, քան օգոստոս-սեպտեմբեր ամիսներին իշխանությունը կանցնի բոլշևիկների ձեռքը և որ կառավարության նախագահը կլինի Լենինը, Իլյիչը միանգամայն լուրջ կերպով պատասխանեց՝ «Այո, այդ այդպես կլինի»:

Այնուհետև Իլյիչը տվեց մի շարք դիրեկտիվներ, թե ինչպես վարել աշխատանքը» (Օրջոնիկիձե, *Ընտիր հոդվածներ և ճառեր*, Ե. 1950, էջ 210—211):

Կուսակցությունը սեպտեմբերի սկզբներին Օրջոնիկիձեին ուղարկեց Անդրկովկաս: Այստեղ նա ղեկավարում էր Թիֆլիսի և Արևմտյան Վրաստանի բոլշևիկների գործունեությունը: Ճանապարհին նա եղավ Բաքվում. կուսակցության տեղական կոմիտեներին հանձնեց Լենինի դիրեկտիվները, նրանց ուշադրությունը սրեց հակահեղափոխականների դեմ մղվող պայքարի վրա:

1917 թվականի հոկտեմբերի 24-ին, սոցիալիստական հեղափոխության եռուն շրջանում, Ս. Օրջոնիկիձեն վերադարձավ Պետրոգրադ և անմիջապես եղավ Սմոլնիում: Երբ ես դահլիճ մտա,— հիշում է Օրջոնիկիձեն,— Վլադիմիր Իլյիչը ավարտում էր ճառը Պետրոգրադի սովետի նիստում, հետևյալ բացականչությամբ:

«Կեցցե՛ սոցիալիստական հեղափոխությունը»: Լենինն իր երկաթյա ձեռքերում առավ Հոկտեմբերյան ապստամբության կազմակերպումը և մինչև հաղթական վախճանը հասցրեց այն» (Օրջոնիկիձե, *Ընտիր հոդվածներ և ճառեր*, Ե. 1950, էջ 211):

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններին օգնելու նպատակով Կենտկոմը Լենինի ցուցումով Բաքու, Թիֆլիս և այլ քաղաքներ ուղարկեց VI համագումարի մասնակիցներին համագումարի որոշումներն իրագործելու նպատակով:

Ուշագրավ է, որ Պետրոգրադում Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո, 1917 թվականի հոկտեմբերի 29-ին, ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմի քարտուղարությունը հանձնարարական նամակ ուղարկեց Կովկասի կուսակցական երկրամասային կոմիտեին՝ «գրավել Թիֆլիսում եղած բոլոր մեծ տպարանները և այնտեղ հրատարակել և՛ վրացերեն և՛ հայերեն գրականություն» («Переписка секретариата ЦК РСДРП (б) с местными партийными организациями», т. II, М. 1957, стр. 7):

Ընդհատակում գրած Լենինի բազմաթիվ հոդվածները հրապարակվում էին Անդրկովկասի բոլշևիկյան մամուլի օրգաններում: «Бакинский рабочий» թերթը հրապարակելով նրա *Հրապարակախոսի օրագրից* հոդվածների մի մասը՝ *Զարիֆի արմատը*, դիմում է ընթերցողներին. «Այս համարում տպագրվում է Լենինի՝ Ռուսաստանի պրոլետարիատի արժանի առաջնորդի, մենք կասեինք մեծ առաջնորդի գրչին պատկանող *Զարիֆի արմատը*:

Ընկեր բանվորներ, ուշադիր կարդացեք Լենինի հոդվածները, որը ժամանակակից մարքսիստական լավագույն գրականությունն է: Հենց այնպես մի կարդացեք, այլ ուսումնասիրեք նրա ասածը: Եվ այնժամ դուք կտեսնեք, թե դրանց համեմատությամբ կերենսկիների, ծերեթելիների, սկոբելևների, որ իրենց ետևից են տանում անգիտակից քաղաքական մասսաներին, խզբզանքներն ու ճառերը որքան գռեհիկ ու բուլվարային են:

Կարդացեք նրա հոդվածները և խորամուխ եղեք *Զարիֆի արմատի* էության մեջ» («Бакинский рабочий», № 52, 13 սեպտեմբերի, 1917 թ.):



Հին բոլշևիկ Վ. Լավրենտևը հոկտեմբերի 14-ին Ղարսից կուսակցության Կենտկոմին հայտնում է. «Մեր տրամադրությունը բարձր է, լավ... հրապարակված է *Լենինը հողի մասին* աշխատությունը և գնորդներին հաշիվ չկա և ընդհանրապես մեր գրականության պահանջը մեծ է»:

1917 թվականի սեպտեմբերի 15-ին Շահումյանը մասնակցեց Կենտկոմի նիստին, որտեղ քննարկվում էին Վ. Ի. Լենինի նամակները զինված ապստամբության մասին: Վերադառնալով Կովկաս, Շահումյանը լենինյան ցուցումները դարձրեց Անդրկովկասի բոլշևիկների սեփականությունը: Կենտկոմի նիստից հետո Լենինի նամակները քննարկման ուղարկվեցին կուսակցական կազմակերպությունները:

1917 թվականի հոկտեմբերի 2—7-ին կայացած Կովկասի բոլշևիկյան կազմակերպության առաջին համագումարն անցավ Լենինի ցուցումներին և կուսակցության VI համագումարի որոշումներին լիովին համապատասխան: Համագումարին մասնակցում էին Թիֆլիսի, Բաքվի, Քութաիսի, Տուապսեի, Փոթիի, Եկատերինոդարի, Գորիի, Ելիզավետպոլի, Բաթումիի, Կիսլովոդսկ-Պյատիգորսկի, Սարիղամիշի, Ղարսի, Հաղպատի, Մանեսի, Շուշիի և այլ վայրերի կուսակցական կազմակերպությունների 29 պատվիրակներ: Համագումարի պատվավոր նախագահ ընտրվեց Լենինը:

Համագումարը քննարկեց VI համագումարի վերաբերյալ զեկուցումները (զեկուցող Ս. Քավթարաձե), ընթացիկ, ագրարային ու ազգային հարցերը: Համագումարի ուշադրության կենտրոնում էր կուսակցության Կենտրոնական կոմիտեի անդամ Շահումյանի զեկուցումը, որում հիմնավորվում էր զինված ապստամբությամբ իշխանությունը գրավելու հարցը:

Ազգային հարցի վերաբերյալ բանաձևում համագումարն արտահայտեց իր հավանությունը կուսակցության ծրագրին և ապրիլյան VII կոնֆերանսի որոշումներին: Համագումարը ձևակերպեց Կովկասի ավտոնոմիայի և տեղական լայն ինքնավարման պահանջը: «Ճանաչելով բոլոր ազգերի համար ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև նրանց պետական անջատումը,— ասված է համագումարի բանաձևում,— մեր կուսակցությունը ժամանակավոր կառավարությունից պահանջում է Ռուսաստանում բնակվող բոլոր ազգերի, ինչպես և Կովկասի ժողովուրդների համար այդ իրավունքի անհապաղ, բացահայտ ճանաչում» (Коммунистическая партия Советского Союза в борьбе за победу Великой Октябрьской социалистической революции 5 июля—5 ноября, 1917 г. Сборник документов, М. 1957, стр. 374):

Միաժամանակ, ելնելով բանվորական շարժման շահերից, բանաձևը Կովկասի բոլոր ազգերի աշխատավորներին ամենասերտ մերձեցման ու միավորման կոչ էր անում (նույն տեղը):

Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին համագումարի բանաձևերին լիովին հավանություն տվեց ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմը: Այդ համագումարը մեծ դեր խաղաց Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի հեղափոխական ուժերի հետագա մոբիլիզացման, կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ամրապնդման և նրանց կուսակցության առաջնորդի շուրջը համախմբելու գործում: Կովկասի երկրամասային համագումարը սահմանեց զինված ապստամբության նախապատրաստման պրակտիկայում կուսակցական կազմակերպության խնդիրները, ցույց տվեց տեղական կոմունիստների պատրաստակամությունը մասսաներին կապիտալիզմի դեմ վճռական գրոհի տանելու՝ հանուն պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման:

Սոցիալիստական հեղափոխության լենինյան պլանը կարմիր թելով անցնում է նոյեմբերին նախապատրաստվելու շրջանում Անդրկովկասի բոլշևիկների ընդունած կուսակցական բոլոր փաստաթղթերի միջով։

ՌՍԴԲԿ(բ) Կովկասյան երկրամասային կոմիտեն 1917 թվականի նոյեմբերի 15-ին կոչով դիմեց սովետներում աշխատող բոլոր կազմակերպություններին ու ընկերներին եռանդուն կերպով պահանջելու, որպեսզի Կովկասի բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետները անհապաղ ընտրություններ անցկացնեն Պետրոգրադի սովետների II համառուսաստանյան համագումարի համար։

Կովկասյան երկրամասային կոմիտեն կոչ էր անում վճռական հակահարված տալ պահպանողական մենշևիկներին, որոնք մտադիր էին բոյկոտի ենթարկել սովետների համագումարը։

Հոկտեմբերի 15-ին Բաքվի ընդլայնված սովետը բոլշևիկների ղեկավարությամբ արտահայտվեց ամբողջ իշխանությունը սովետներին հանձնելու օգտին։ Բոլշևիկներ Ստ. Գ. Շահումյանը, Մ. Ս. Սեմյոնովը և Ա. Մ. Ռաշկևիչը ընտրվեցին սովետների համառուսաստանյան II համագումարի պատգամավոր։

Անդրկովկասի բոլշևիկները գնում էին հեղափոխական գրոհի։ Նրանք բանվորներին, զինվորներին և գյուղացիներին համախմբեցին սոցիալիստական հեղափոխության քաղաքական բանակի շուրջը, հերոսական պայքար ծավալեցին սովետների իշխանության համար։

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ՂԱՄԱՐԼՈՒՆ ԶԻՔ—ԿԵՐՏՎՈՒՄ Է ԱՐՏԱՇԱՏԸ

ՀԱԶԱՐ ինը հարյուր քսանմեկ թվականի փետրվարյան մի առավոտ երևանցիներն արթնացան հրաձգություններից, դաշնակ մաուզերիստների աղմուկ-աղաղակից, հարայ-հրոցից։ Փողոցներում գնդակներ էին սուլում ու նռնակներ պայթում... Իրարանցումից ահաբեկված տղամարդիկ տներից դուրս չէին գալիս, իսկ սարսափահար կանայք ու երեխաները լաց ու կոծ էին բարձրացրել։ Օգտվելով առիթից, որ Երևանում սակավաթիվ են կարմիր բանակի ստորաբաժանումները, դավադիրներին հաջողվեց ժամանակավորապես զավթել իշխանությունը և արյունալի դատաստան տեսնել բոլշևիկների հետ։ Կրկին իշխեց մտրակի ու մաուզերի ուժը։

Հայաստանի հեղափոխական կոմիտեն, կուսակցական ղեկավար օրգանները փոխադրվեցին Ղամարլու (Արտաշատ)։ Այդ շրջանը դարձավ քաղաքացիական պատերազմի վճռական ճակատամասը։ Կուսշրջկոմի (քարտուղար՝ Արամս Մուրադյան) և շրջհեղկոմի (նախագահ՝ Ռուբեն Դաշտոյան) կոչով տեղական պարտիզանները միացան կարմիր բանակի զորամասերին։

Ջենք վերցրեցին Երևանից Ղամարլու անցած կոմունարները, որոնց շարքերում էին բոցաշունչ հայրենասեր Եղիշե Չարենցն ու ապագա բազմավաստակ ճարտարապետ Կարո Հալաբյանը։ Մեծ պոետը դարձել էր Նաիրյան կարմիր բանակի զինվորը և հրացան վերցրած, ամբողջ ավյունով մարտնչում էր աշխատավորության ազատության և երջանկության համար՝ թե՛ գրչով, թե՛ զենքով...

Թշնամու դեմ մղվող կռվին մասնակցում էին նաև կանայք՝ գեղջկուհիներ Մայա Վարդանյանը, Ծաղիկ Մովսիսյանը, Շուշան Ազիզյանը, Շողակաթ Սայադյանը և ուրիշներ։ Նրանք սայլերով փայտ էին հասցնում զրահագնացքին ու փամփուշտ տանում առաջին գիծը։ Կուսակցական ակտիվ կանանցից Աղավնի Բուդումյանը, Սուսաննա Իշխանյանը, Վերգուշ Մխիթարյանը, Թեմզա Ջաֆարյանը և ուրիշներ կատարում էին տարբեր տեսակի հանձնարարություններ՝ կանգնում ժամապահ, կատարում հեռախոսավարի պարտականություն կամ որպես քույրեր՝ բուժում վիրավորներին։

Պետական և կուսակցական գործիչները միշտ առաջին դիրքերում էին. նրանք խոսքով ու գործով մարտիկներին սխրանքների էին կոչում։ Կոմունիստները երդվեցին՝ կռվել մինչև արյան վերջին կաթիլը, կռվել բանվորագյուղացիական հեղափոխության վերջնական հաղթանակի համար։

Երբ շրջհեղկոմի նախագահ Ռ. Դաշտոյանը զրուցում էր պարտիզանների հետ, ասաց,—մենք պետք է կործանումից փրկենք մեր երկիրը, բշվառու-

թյունից դուրս բերենք աշխատավորությանը: Դրա միակ ելքը հոկտեմբերի ուղիով գնալն է, ռուս ժողովրդի հետ միանալը:

Հակառակորդ կողմերի միջև կռիվը տեղի էր ունենում անընդմեջ... Հաճախ ձեռքից ձեռք էին անցնում բնակավայրերը, քանդվում, ավերվում էր ամեն ինչ...

Կտրված լինելով գլխավոր ուժերից ու կենտրոնացված մատակարարումից, կարմիր բանակի զորամասերում պակասում էր ռազմապաշարն ու սննդամթերքը: Բայց մարտիկները, հաղթանակի նկատմամբ հավատով լի՝ դաշնակների դեմ կանգնած էին սարի պես անսասան: Նրանք արթուն գիշերներ էին անցկացնում խոնավ ու ցուրտ դիրքերում, իսկ ցերեկները՝ կատաղի կռվում, ջլատում հակառակորդի ուժերը:

Երեկո էր: Թեժ գոտեմարտերից հետո խրճիթում հավաքված զինվորական համազգեստով ու քաղաքացիական կիսամաշ հագուստով մարդիկ նրագի աղոտ լույսի տակ նայում էին քարտեզին, վերլուծում օրվա մարտերի արդյունքները և նախագծում հաջորդ հարվածն հասցնելու գլխավոր ուղղությունը: Դուրսը ձյուն էր, ներսը ցուրտ: Թիթեղյա վառարանում ծխացող թաց փայտը հազիվ էր ջերմացնում շուրջը: Տաքանալու համար մարդիկ քիպ մոտենում էին վառարանին և ձեռքի մեջ առնում հազիվհազ տաքացած խողովակը:

Մարտական գործողություններին վերաբերվող հարցերը լուծելուց հետո ոմանք դրվագներ պատմեցին իրենց անցյալից... ընդհանուրի խնդրանքով Եղիշեն իր պոեմից մի հատված արտասանեց.

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

Ու կռվում են հիմա էլ, որ էտ չտան էլ երբեք
Իրավունքը բանվորի, որ անսասան է արդեն.
Բարձրացել են նրանց դեմ ունևորներն ահարեկ,
Բայց կռվում են նրանք դեռ ու—կհաղթե՛ն, կհաղթե՛ն:

Չե՛ն տա նրանք էլ իրենց ձեռքից զենքերը իրենց,
Չե՛ն տա թշվառ գյուղացու հողը նորից ավարի.
Ինքն իրեն տե՛ր կմնա էդ ժողովուրդն էդպես—
Մինչև երկիրը սառի, մինչև արևը մարի:

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

***

ԴԱՇՆԱԿ խմբապետների ուժերը հետզհետե թուլանում էին: Մի օր էլ, լուսաբացին մեր զորքերը հարձակման անցան: Արաքսի ափերից սուրում էր գարնանային մեղմ ու խոնավ քամին: Գարուն էր գալիս, հավերժական գարուն հայ ժողովրդի համար: **Հանուն սովետների իշխանության՝** կոմունիստներն ու կոմերիտականները գնում էին գրոհողների առջևից: Խիզախություններով առավելապես աչքի էին ընկնում Սարգիս Մարտիրոսյանը (այժմ գեներալ լեյտենանտ, Սովետական Միության հերոս), Ասքանազ Կարապետյանը (այժմ գեներալ մայոր, Սովետական Միության հերոս), Լևոն Կարապետյանը (այժմ պահեստի գնդապետ), Արտյոմ Ապրեսյանը, Հակոբ Սարգսյանը: Չդի-



մանալով կարմիրբանակայինների հարձակման թափին, դաշնակները խուճապահար դիմեցին փախուստի: Վերահաս կործանումից ահաբեկված ավանտյուրիստների կառավարության նախագահ Սիմոն Վրացյանը անապարեց՝ Քյազիմ Կարաբեկիր փաշայի շտաբի Երևանի ներկայացուցիչ կապիտան Բահաէդդինի միջոցով խնդրագիր ուղարկել Թուրքիայի ազգային մեծ ժողովի կառավարությանը, նրանից աղերսելով՝ որոշ պայմանով հայ բանակին (իմա դաշնակցական—Ս. Ն.) տալ ռազմամթերք և ռազմական օգնություն՝ բոլշևիկների դեմ կռվելու համար («Կոմունիստ» լրագիր, 1921 թ., № 91): Սակայն Վրացյանը իզուր էր նման ճիգեր թափում: Նա այլևս անկարող էր կանգնեցնելու հեղափոխության հզոր ալիքը: Դաշնակները հողոպրեցին ո՛չ միայն Ղամարլուից, այլև Երևանից: Արյունալի այդ պայքարում հերոսի մահով ընկան Արմենակ Գալստյանը, Սիմոն Հակոբյանը, Սուրեն Բաբազյոզյանը, գնդի հրամանատար Անդրեյ Ֆիլչևիչը և ուրիշներ... Մահացու վերք ստացավ քաղաքացիական կռիվների աննկուն մարտիկ, բրիգադի կոմիսար Լիպարիտ Մրխչյանը, որը, ինչպես ընդգծում է Ս. Նուրիջանյանը, թե խոսքով, թե անձնական օրինակով թշնամու դեմ գրոհի էր տանում կարմիրբանակայիններին:

Ահա վերականգնվեց սովետների իշխանությունը...

Ղամարլուում երեք տարի իշխել էին դաշնակները: Ահն ու մահն էր տիրել երեք տարին բոլոր: Մեծ պատերազմին հաջորդել էին ազգամիջյան կոտորածները: Ավերվել էր ինչպես երկիրը, այնպես էլ Ղամարլուն: Չէին գործում կիսատնայնագործական բնույթ ունեցող սպիրտի երկու գործարանները, խոպան էին մնացել վարելահողերը, չէին մշակվում այգիները: Աղյուսաշեն տները խարխլվել էին. գյուղացիներն ապրում էին ամենանեղ պայմաններում, քնում հողե հատակին: Արևմտյան Հայաստանից գաղթվածների մեծ մասը տեղավորվել էին ախոռներում ու մարագներում կամ ապրում էին բաց երկնքի տակ: Կահկարասիների և կանոնավոր հագուստի մասին նույնիսկ երազել չէր կարելի: Մեծերը ցնցոտիների մեջ էին, իսկ փոքրիկները՝ կիսամերկ, ոտաբոբիկ, գունատ ու վշտադեմ... Տիրում էին սովը, թշվառությունն ու համաճարակը... Ամենուր արցունք ու վիշտ... Կարծես թե մահը բացել էր երախը և ուզում էր կուլ տալ բոլորին:

Սովետական կարգերի հաստատումով ինչպես ողջ հայության, այնպես էլ ղամարլվեցիների համար բացվեց ազատ ու երջանիկ կյանքի արշալույսը, հայ ժողովուրդը փրկվեց հրից ու սրից: Աշխատանքի մարդիկ կոմունիստական կուսակցության օգնությամբ ու ղեկավարությամբ ձեռնամուխ եղան գյուղը վերաշինելու գործին, գյուղ, որը բարձրանում էր ավերակների վրա: Ծանր էր վիճակը...

Հուզմունքով ես կարդում 1921—1922 թվականներին Ղամարլուից՝ Երևանի կուսգավկոմին և գավհեղկոմին հասցեագրված բազմաթիվ փաստաթղթերը, որոնք այժմ արխիվային նյութեր են: Կինբաժնի զեկուցագրերից մեկում կարդում ենք... Գյուղացիության համարյա երեք քառորդը աղքատ դասն է կազմում, որն ապրում է ծայր աստիճանի չքավորության մեջ: Չքավորության օրվա սնունդը բանջարեղենն է կամ կանաչը:

Շրջգործկոմի նախագահ Խաչատուր Վարդանյանը գավհեղկոմին գրում է՝ ...Ղամարլուի շրջանի բնակչությունն արդեն ապրում է սովի ճիրաններում... Քաղցածները հավաքվում են շրջգործկոմի շենքի մոտ՝ օգնություն խնդրում, իսկ որբերը չեն հեռանում որբանոցի դռնից... Շատերը գիշերում են պատերի տակ... մարդիկ սովամահ են լինում... Որբանոցի երեխաների միակ սնունդը

օրական մեկ չորրորդ ֆունտ (100 գրամ) հացն է... Ամբողջ շրջանում գործում է 14 դպրոց, որոնք զուրկ են կահույքից... սովորում են ընդամենը 250 աշակերտ... Դարմանացան չի կատարվում լծկան և սերմացու չունենալու պատճառով: Կուսշրջկոմի քարտուղար Գ. Հակոբյանը հաղորդում է՝ ...Մալարիան հնձում է մարդկանց... Հիվանդներին բժշկական օգնություն ցույց տալու ոչ մի հնարավորություն չկա...

***

ԱՅԴ ժամանակներից անցել է մոտ կես դար: Այժմ միայն տխուր հուշեր են մնացել անցյալից: Տարիները հաչորդեցին միմյանց: Շինարարի ձեռքով քարը դրվեց քարի վրա, շենքը կառուցվեց շենքի կողքին, բացվեցին լայն ու ասֆալտապատ փողոցներ: Հյուղակների տեղը բարձրացել են երեք-չորս հարկանի բնակելի շենքեր, կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների՝ վարդագույն տուֆից կառուցված գեղեցիկ ու հարմարավետ մենատներ իրենց փոքրիկ պարտեզներով, ուր գարնանամուտին ծառերը փթթում են գունագեղ ծաղիկներով, մայիսին՝ վարդերն ու յասամաններն են բուրում, իսկ աշնանը՝ խաղողի ոսկեհատ ողկույզներն են շողշողում, նարնջի դեղձենու բարն է հասնում: Ճահճուտներում ու ամայի տեղերում կառուցվել են արդյունաբերական ձեռնարկություններ, կուլտուրայի ու առողջապահության հաստատություններ: Փոքրիկ գյուղը վերակառուցվել և ընդարձակվել է: 1922 թվականին Ղամարլուն ու Նովրզլուն (Արտաշատ քաղաքի այժմյան տերիտորիան) ունեին երկու հազար հինգ հարյուր բնակիչ, այսօր քաղաքում ապրում են 10 հազար մարդ:

Հանրապետության աննախընթաց վերելքի հետ բուռն թափով առաջ է ընթացել նաև Արտաշատը: Սպիրտի գործարաններից մեկը վերականգնվելուց հետո հետզհետե ընդարձակվել, մեքենայացվել ու դարձել է գինու կոմբինատ: Այստեղ տեղակայված են տեխնիկական գիտությունների թեկնածու Սերգեյ Ջոհրաբյանի ստեղծած՝ գինուց կոնյակի սպիրտ թորելու ապարատներ, որոնք արտադրական կարողությամբ մի քանի անգամ գերազանցում են մինչև այժմ եղածները: Ամսական արտադրվում է 450 հազար լիտր կոնյակի սպիրտ:

— Մեր կոմբինատի լցման ցեխը,— ասում է կոմբինատի դիրեկտոր Համբարյանը,— տարեկան թողարկում է վեց միլիոն լիտր գինի, կոմբինատից տակառներով ու վագոն ցիստեռներով փոխադրվում է հարյուր հազարավոր դեկալիտր գինի:

Սովետական իշխանության տարիներին Արտաշատում կառուցվել են պահածոների, փայտամշակման, մեխանիկական և այլ գործարաններ: Քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններն անցյալ տարի թողարկել են տասն անգամ ավելի համախառն արտադրանք, քան ամբողջ Հայաստանում՝ 1919 թվականին: Օրական մարդատար վեց գնացք է մտնում Արտաշատ ու դուրս գալիս, ավտոկայարանից տարբեր վայրեր ուղևորվում ավելի քան երեք հազար մարդ: Քաղաքի էկոնոմիկայի արագ առաջընթացը խթանեց բնակարանային շինարարությանը:

Ես Ղամարլուում եղել եմ երեսնական թվականներին: Այն ժամանակ գյուղը միայն մի «փողոց» ուներ: Այդ Երևան—Նախիջևան ոլորապտույտ խճուղու մի հատվածն էր՝ երեք հարյուր մետր երկարությամբ:

— Իսկ այժմ,— ասում է Արտաշատի քաղաքային սովետի գործկոմի



նախագահ Ծերուն Թովմասյանը,— մեր քաղաքն ունի լայն ու ուղիղ մոտ քառասուն փողոց, որոնց մայթերի եզրերը ծառապատված են: Դրանցից ամեն մեկն ունի իր անունը, իսկ տները՝ իրենց համարները: Ազատարար հոկտեմբերի անունով է կոչվում քաղաքի գլխավոր փողոցը, որի երկարությունը մոտ երկու կիլոմետր է: Կարլ Մարքսի անվան փողոցը կենտրոնական հրապարակից ձգվում է դեպի երկաթուղային կայարանը: Այս փողոցի երկու կողմերում կառուցված են բնակելի բազմահարկ շենքեր, դպրոց և պետական հիմնարկներ: Քաղաքն ունի իր կոյուղին՝ վեց կիլոմետր երկարությամբ, ջրմուղը՝ երեսուն կիլոմետր երկարությամբ, պետական բնակարանային ֆոնդ՝ քսանութ հազար քառակուսի մետր տարածությամբ: Միայն 1961—1965 թվականներին հանրային բնակելի ֆոնդը ավելացել է 14 հազար քառակուսի մետրով, այսինքն կառուցվել է այնքան, որքան նախորդ բոլոր տարիներին:

***

ՔԱՂԱՔԻ ընդարձակման, արդյունաբերության զարգացման զուգընթաց վերափոխվել ու կուլտուրապես աճել են նրա բնակիչները: Նրանք ամենուրեք ստեղծագործական նախաձեռնություն են հանդես բերում մեր սոցիալիստական հայրենիքի հարստությունը բազմապատկելու համար: Նվիրվածություն հայրենիքին, սեր աշխատանքի նկատմամբ, օրինակելի կոլեկտիվում և ընտանիքում՝ այսպես են արդի արտաշատցիները:

Գառնիկ Գրիգորյանը հինգ տարեկան էր, երբ հայրը հիտլերականների գնդակով ընկավ կռվի դաշտում: Հայրական գուրգուրանքին կարոտ, նա մեծացավ մոր խնամքով: Պատանեկան հասակից Գառնիկը գործի անցավ Արտաշատի փորձնական գործիքաշինական գործարանում՝ որպես աշկերտ: Իր խոհեմությամբ նա սիրվեց վարպետի ու շրջապատի մարդկանց կողմից: Վարպետը ջանք չխնայեց աշկերտին սովորեցնել իր մասնագիտությունը: Գառնիկը սովորեց հմտորեն վարել ֆրեզերահաստոցը: Նա բարեխիղճ էր աշխատանքում, ազնիվ՝ կյանքում:

Երբ վրա հասավ Գառնիկի զորակոչի տարին, նա սիրով համալրեց սովետական բանակի շարքերը և իր սրբազան պարտքը հայրենիքի հանդեպ կատարելուց հետո կրկին վերադարձավ գործարան:

Տասնհինգ տարի է, ինչ Գրիգորյանն աշխատում է նույն ձեռնարկությունում: Այժմ նա նորոգման գործիքային տեղամասի վարպետներից է: Գերակատարելով օրվա արտադրական առաջադրանքը, պատրաստում է բարձրորակ գործիքներ, որոնք կտրում ու տաշում են բոլոր տեսակի մետաղները: Կոլեկտիվի համակրանքը վայելող Գառնիկ Գրիգորյանը ընտրվել է շրջանային սովետի դեպուտատ:

Քաղաքի հիվանդանոցի գլխավոր բժիշկ Մարտին Հակոբյանին հանդիպեցի իր կաբինետում: Նա ընթերցում էր հիվանդների հիվանդությունների նկարագիրն ու նշումներ կատարում: Ժամանակի սղությունն ինձ հարկադրեց հակիրճ զրուցել նրա հետ:

Մարտին Հակոբյանը բնիկ Արտաշատցի է (Նորաշենից): Սովորել է տեղի միջնակարգ դպրոցում, իսկ հետագայում ավարտել Երևանի բժշկական ինստիտուտը: Նա հանույքով գնացել է Ղափան, աշխատել լենինյան հանքերի հիվանդանոցում որպես բժիշկ: Նա հաճախ գիշերներ է լուսացրել ծանր հիվանդների մահճակալների մոտ, բուժել իր խնամքին հանձնված մարդկանց:

երիտասարդ բժիշկը միաժամանակ ձգտել է կյանքի հետ առաջ ընթանալ, օր-օրին խորանալ իր մասնագիտության մեջ, ավելի օգտավետ լինել հասարակությանը: Բժիշկների կատարելագործման կենտրոնական (Մոսկվայի) ինստիտուտն ավարտելուց հետո Հակոբյանը հաջողությամբ պաշտպանում է բժշկական գիտությունների թեկնածուի դիսերտացիան: Հրապարակի վրա են նրա մի շարք գիտական գործերը՝ թոքերի մնացորդային ծավալի որոշումը ռադիոակտիվ իզոտոպներով (քսենոն 133), թոքերի օդափոխության համաչափությունը որոշելու եղանակը և այլն:

Չորս տարի է, ինչ Մարտին Հակոբյանը աշխատում է Արտաշատի հիվանդանոցում: Իր մարդասիրական վերաբերմունքով և հիվանդների նկատմամբ ցուցաբերած հոգատարությամբ համակրանք է վայելում ոչ միայն քաղաքում, այլև ողջ շրջանում: Գրեթե ամեն օր աշխատանքից դուրս, նույնիսկ գիշերները Հակոբյանին կանչում են հիվանդանոց, կամ խնդրում տուն՝ ծանր հիվանդին օգնություն ցույց տալու: Հակոբյանն իր հանգստի հաշվին անտրտունջ ծառայություն է մատուցում հիվանդներին, առողջացնում նրանց:

Իմ խնդրանքով գլխավոր բժիշկը հակիրճ պատմեց հիվանդանոցի մասին:

— Արտաշատի հիվանդանոցն ունի ավելի քան երկու հարյուր հիսուն մահճակալ և մի քանի բաժիններ:

— Քանի՞ բժիշկ կա:

— Քառասունյոթ բժիշկ, չորս ատամնաբույժ, հարյուր երեսունվեց միջին բուժ աշխատողներ: Հիշեցնեմ, որ 1920 թվականին Ղամարլուի ամբողջ շրջանում եղել է տասը մահճակալանոց մեկ «հիվանդանոց», մեկ բժիշկ, երեք ֆելդշեր:

Սովետական կառավարության գործադրած ջանքերի շնորհիվ ավելի քան տասը տարի է, ինչ Արտաշատի շրջանում մալարիայով և կոմայով ոչ ոք չի հիվանդացել:

Քաղաքը կառուցողների բանակում հինգ հարյուր մարդ կա: Տարվա բոլոր եղանակներին նրանք կառուցում են գործարաններ, բնակարաններ, կուլտուրական օբյեկտներ: Շինարարների այդ բանակումն է նաև քարտաշ որմնադիր Ստեփան Հայրապետյանը: Տասներեք տարի տարաղը և ուղղալարը ձեռքին, բարձր պահած շինարարի պատիվը, նա մասնակցել է գործարանային կորպուսների, հիվանդանոցների ու դպրոցների, բնակելի շենքերի կառուցման: Այժմ նա շարում է հիսուն մետր երկարություն և քսաներեք մետր լայնություն ունեցող սպորտային դահլիճի պատերը: Դեպի Արաքս ձգվող Շիրվանզադեի անվան փողոցի վրա (հիմնարկի օժանդակությամբ) վարպետ Հայրապետյանը երեք սենյակից բաղկացած հարմարավետ մի տուն էլ իր համար է կառուցել:

— Խրճիթից՝ պալատ,—գոհունակությամբ միջամտեց մեր զրույցին վարպետի կինը:

Հայրապետյանի պես տուն են կառուցում շատ-շատերը: Նրանք համոզված են, որ քանի կա սովետական իշխանությունը և անխախտ է մեր մեծ հայրենիքի ժողովուրդների եղբայրական միասնությունը, խաղաղություն կտիրի Հայաստանի վրա, շեն կմնան քաղաքներն ու գյուղերը:

* * *

ՄԱՔՈՒՐ խղճով, ազնիվ աշխատանքով արտաշատցիները օր-օրի բարձրացնում են իրենց կենսամակարդակը: Նրանք վարում են կուլտուրական ու



բարեկեցիկ կյանք: Քաղաքի հեռախոսային ցանցն ունի հազար աբոնենտ, յոթ հարյուր ընտանիքներում վառվում են գազօջախներ, յուրաքանչյուր շունչ միջին հաշվով օրական ծախսում է երկու հարյուր լիտր աղբյուրի ջուր: Քաղաքի առևտրական ցանցում անցյալ տարի վաճառվել է մեկ միլիոն ռուբլուց ավելի հագուստեղեն-կոշկեղեն և կահույք, 60 հազար ռուբ. գրականություն: Ամիսը մոտ քսան հազար ռուբլու հուշանվերներ են վաճառվում: Իսկ չէ որ ո՛չ վաղ անցյալում ղամարլվեցիները խմել են առվից հոսող պղտոր ջուր, վառել ծխացող աթար:

— Այժմ արտաշատցիներից մենք մեծ մասամբ դիմումներ ենք ստանում,— ասում է շրջսովետի գործկոմի նախագահ Ժ. Սանոյանը,— նոր բնակարաններ կառուցելու, իրենց բնակարանային պայմանները բարելավելու, սեփական տներում գազօջախներ դնելու և խմելու ջուր անցկացնելու, թանկարժեք կահույք և ավտոմեքենաներ գնելու մասին:

Երբ առավոտյան արևը բարձրանում է Գեղամա լեռներից ու շողշողում Արարատյան դաշտի վրա, հարյուրավոր կարմրաթշիկ ու աղվորիկ, մշտական ժպիտը դեմքերին պատանիներ ու աղջիկներ մաքուր, կոկիկ հագնված, պայուսակները թևերի տակ դրած շտապում են դպրոց:

Հինգ դպրոց կա Արտաշատ քաղաքում, ուր դասավանդում են 165 ուսուցիչ-ուսուցչուհիներ, սովորում՝ ավելի քան երեք հազար երեխաներ: Մի պահ հետադարձ հայացք ես գցում անցյալին. 1921 թվական, ամբողջ շրջանում 22 ուսուցիչ, 250 աշակերտ... 1966 թվական, միայն Արտաշատում սովորում են երեք հազար երեխա: Ահա քեզ մեծ և ազատարար հոկտեմբերի բերած բարիքներից մեկը:

Երբ Արևը թեքվում է Հայկական պարի հետևը, վրա է հասնում գունագեղ վերջալույսը և քաղաքը ողողվում է էլեկտրական լույսով. արտաշատցիների համար սկսվում է հանգստի ու կուլտուրական ժամանցի առօրյան: Նրանք կենսուրախ, մոդայով ու լավ հագնված գնում են կինո, թատրոն, կամ ձեռնարկությունների ակումբները՝ հետաքրքրական ժամանցի համար:

Հայաստանի պատմական մայրաքաղաք Արտաշատում թատրոնը ստեղծվել է երկու հազար տարի առաջ: Օտարերկրյա զավթիչների արշավանքներից ու ոսոխների հալածանքներից ավերվել է երկիրը, խորտակվել հին Արտաշատը, անհետացել թատրոնը: Անցել են հարյուրամյակներ: Սովետական իշխանության տարիներին հայ գրականությունն ու արվեստը ապրեցին բուռն ծաղկման շրջան: Հանրապետությունում կազմակերպվեցին բազմաթիվ թատրոններ, այդ թվում Արտաշատում, որը կոչվում է Ամո Խարազյանի անվան: Վերածնվեց դարեր առաջ կործանված թատրոնը: Այստեղ հանրապետության ժողովրդական արտիստ Վրույր Փանոյանը, վաստակավոր արտիստ Գուրգեն Ջանոյանը, արվեստի վաստակավոր գործիչ Հրանտ Մանվելյանը և ստեղծագործական ողջ կոլեկտիվը ամեն ջանք գործադրում են, որպեսզի հանդիսատեսները գոհ մնան ներկայացումներից:

Քաղաքի կուլտուրական օջախներից է տպարանը, որը հիմնվել է երեսնական թվականների սկզբներին: Այն բավականին ընդարձակ է, հարուստ տառատեսակներով ու զարդանիշերով, սարքավորված էլեկտրաշարժիչ տպագրական մեքենաներով, լինոտիպերով: Այստեղ տպագրվում է Արտաշատ երկօրյա թերթ (խմբագիր Ն. Սահակյան): Հինգ հազար բաժանորդ ունի Արտաշատը: Թերթում ես նախախորհրդային ժամանակաշրջանի հայ մամուլի պատմությունը և զարմանում. ո՛չ մի լրագիր այսպիսի տպաքանակ չի ունե-

ցել: Օրական երեք հազար բերք ու հանդես են ստանում արտաշատցիները, հաղորդակից լինում աշխարհի չորս կողմում տեղի ունեցած իրադարձություններին:

***

ՂԱՄԱՐԼՈՒԻ բանվորներն ու գյուղացիները երբ պայքարի դուրս եկան սովետական իշխանություն հաստատելու համար, երկաթուղային կայարանում և գյուղում ընդամենը տասնհինգ-քսան բոլշևիկ կար: Նրանք ընչազուրկներին պայքարի հանեցին ընդդեմ կուլակների, վաշխառուների ու խավարամոլների, խորտակեցին շահագործողների տիրապետությունը, ստեղծեցին աշխատավորների շահերն արտահայտող կարգեր: Այդ ժամանակաշրջանից անցել է հիսուն տարի: Կես դարի գաղափարական պայքարում, աշխատանքային խիզախումներում աճել ու կոփվել է Արտաշատ քաղաքի կուսակցական կազմակերպությունը, որը Հայաստանի կոմունիստական կուսակցության լավագույն ջոկատներից է. նա հիանալի կատարում է աշխատավորների կազմակերպչի, դաստիարակչի ու նրանց սխրանքների ոգեշնչողի իր դերը:

— Քաղաքում կան ավելի քան քառասուն սկզբնական կուսակցական կազմակերպություններ,— ասում է ՀԿԿ շրջանային կոմիտեի առաջին քարտուղար Ա. Մկրտչյանը,— մոտ յոթ հարյուր կոմունիստներով: Արդյունաբերական ձեռնարկությունների ու տրանսպորտի, դպրոցների, առողջապահական ու կուլտուրական հիմնարկների, առևտրական ցանցի ու պետական օրգանների սկզբնական կուսակցական կազմակերպությունները կոմունիստներին դաստիարակում են կուսակցության քաղաքական գծի անշեղ կենսագործման, գաղափարական համախմբվածության, կոմունիստական բարոյականության ոգով: Կուսակցական կազմակերպությունները գլխավորում են կոլեկտիվների սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնում մասսաներին լրիվ օգտագործելու ներքին ռեզերվները, արտադրության մեջ ներդնելու գիտության նվաճումները, առաջավոր փորձը, անթերի կատարելու պետական առաջադրանքները:

Ուսուցչական կոլեկտիվում և ծնողների մոտ մեծ հարգանք է վայելում կոմունիստ Ժենյա Հարությունյանը: Նա իր ողջ գիտելիքները, ջանքերն ու եռանդը ի սպաս է դնում սոցիալիստական հասարակարգի համար ազնիվ, անձնվեր սերունդ դաստիարակելու գործին: Մեծ ուշադրություն դարձնելով երեխաների ուսուցման հարցերին՝ Հարությունյանը պատանիներին ու աղջիկներին դաստիարակում է հայրենասիրության, կոմունիստական կուսակցության վեհ գործին անհուն նվիրվածության ոգով, նրանց մեջ սեր պատվաստելով դեպի աշխատանքը: Նա վառ օրինակներով պատանիներին ցույց է տալիս այն նվաճումները, որ սովետական ժողովուրդը ձեռք է բերել սոցիալիզմի կառուցման գործում և հիշեցնում նրանց՝ լինել արժանի փոխարինողներ իրենց հայրերի ու պապերի, ակտիվորեն մասնակցել կոմունիզմի կառուցմանը:

Հայգյուղտնտեխնիկայի Արտաշատի շրջանային միավորման վերանորոգման արհեստանոցի կոլեկտիվում գովեստով են խոսում հավաքման արտադրամասի վարպետ, կոմունիստ Շուրա Հովհաննիսյանի մասին: Նա նախաձեռնություն է հանդես բերում արտադրության մեջ նորը, առաջավորը արմատավորելու գործում, որը նպաստում է արտադրանքի որակի և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: Նա հոգ է տանում իր տեխնիկական գիտելիքները հարստացնելու, մտահորիզոնը լայնացնելու համար: Հովհաննիսյանը պայքարի է դուրս եկել արտադրական լավագույն ցուցանիշներով դիմավորելու մեծ հոկտեմբերի հիսնամյակը:



Կուսակցության շրջանային կոմիտեի և աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի գործկոմի պատվո տախտակում տեղ է գրավում գինու կոմբինատի, գինու ցեխի բանվոր, կոմունիստ Հրայր Հովհաննիսյանը: Արտադրության մեջ իր առաջավոր դերն ապահովելու հետ միաժամանակ նա հասարակական ակտիվ գործիչ է:

Երբ հաստատվեց սովետական իշխանություն, մեր թշնամիները բարբաջում էին, թե բոլշևիկները, բանվորներն ու գյուղացիները անընդունակ են շինարարություն կատարել, գիտությանն ու կուլտուրան առաջ մղել: Արտաշատի անցած հիսուն տարին հերքում է այդ և ցույց է տալիս, թե ինչպիսի հրաշքներ են գործում իշխանությունն իրենց ձեռքը վերցրած աշխատավորները, որոնք հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ընթանում են հաղթանակից-հաղթանակ:

***

Գեղեցիկ է Արտաշատն այսօր: Բայց ավելի պայծառ է նրա ապագան: Որ կողմը նայում ես, վերամբարձ կռունկներ ես տեսնում, շինարարի մուրճի հարվածների ձայնը լսում: Ընդարձակվելու է Արտաշատը դեպի հարավ՝ Արաքսի ափը, դեպի հյուսիս: Ընթացիկ հնգամյակում կառուցվելու են պահածոների և հացի նոր գործարաններ, վերակառուցվելու է փորձնական գործիքաշինական գործարանը, որի համախառն արտադրանքը ավելանալու է գրեթե տասն անգամ: Վերափոխվելու է բամբակազտիչ գործարանը: Այստեղ կառուցվում են նոր արտադրամասեր, տեղակայվում են մահուդ և տրիկոտաժ արտադրող սարքեր: Միայն այս գործարանում կաշխատեն մոտ հինգ հազար բանվոր-բանվորուհիներ: Կառուցվելու է տասնչորս հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, դպրոցի նոր շենք, պոլիկլինիկա՝ օրական 500 հիվանդի սպասարկելու համար, կուլտուրայի տան նոր շենք, բաղնիք: Հարյուրավոր բնտանիքներ կառուցելու են մենատներ, բոլոր հարմարություններով, բարեկարգվելու է քաղաքը:

Արարատյան հովտում Հոկտեմբերի կամքով կերտվում է նոր, սոցիալիստական Արտաշատ քաղաքը:

Զ. ՊՈՂՈՍՅԱՆ

Կործանիչ ավիացիայի նախկին օդաչու

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԽԻԶԱԽ ՊԱՇՏՊԱՆՆԵՐԸ

«Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ իմացել, կզացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորությունը»:

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

Սովետական ժողովրդի հայրենական մեծ պատերազմը մեր մարդկանց հոգևոր ուժերի դաժան ստուգումն էր և նրանք պատվով դիմացան այդ քննությանը:

Մարդկության պատմությունը չգիտե մեկ այլ պատերազմ, որի մեջ դրսևորվեր այնպիսի մասսայական հերոսություն, ինչպես Հայրենական մեծ պատերազմը: Սովետական Միության կոմունիստական կուսակցության կոչով մեր լայնածավալ հայրենիքի բոլոր ժողովուրդները մեկ մարդու պես կանգնեցին իրենց սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար: Այդ պատերազմում քաջությամբ աչքի ընկան նաև հայ ժողովրդի ազնիվ զավակները: Նրանք մարտնչում էին սովետական զորքերի բոլոր տեսակներում և համարյա բոլոր խոշոր ճակատամարտերին: Անառիկ կովկասյան դարպասներից և Մոսկվայից մինչև Բեռլին ու Էլբա՝ ահա այն ուղին, որով նրանք անցան Սովետական Միության բոլոր ժողովուրդների զավակների հետ միասին:

Հայաստանի աշխատավորները հպարտանում են ինչպես զորքերի մյուս տեսակների շարքերում գործող իրենց զավակների, այնպես էլ խիզախ օդաչուների՝ ավիացիայի մարշալ Սերգեյ Խուդյակովի (Ա. Խանփերյանց), Ավիացիայի գեներալ լեյտենանտներ Սերգեյ Սարաջևի, Ալեքսանդր Միխիթարյանի, Ավիացիայի գեներալ-մայորներ Ստեփան Միկոյանի, Գրիգոր Տոլմաջևի, Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանի, Սովետական Միության հերոսներ Սերգեյ Բուռնազյանի, Լազր Չափչախովի, Մարտիրոս Նազուլյանի, Գոգա Աղամիրովի, Աշոտ Կասպարովի, Արմեն Այրինի, Սամսոն Մկրտումյանի, Հակոբ Մանուկյանի և շատ ուրիշների անուններով:

Հայ ժողովրդի այդ փառապանծ զավակները, որոնք իրենց հոգում մարմնավորում էին այն լավագույնը, ինչ մեր ժողովուրդը մշակել էր իր պատմական զարգացման ընթացքում, հասան հայրենասիրության և բարոյական վեհության առավել բարձր աստիճանի: Նրանց սխրագործություններում արտահայտված են սովետական կենարար հայրենասիրությունն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմը, խոր հավատը մեր կուսակցության գործի, անհուն սերը հայրենիքի նկատմամբ:

***

Հայրենական մեծ պատերազմի տարեգրության մեջ ոսկե տառերով է գրված անվախ և խիզախ բազե Նելսոն Գեորգիի Ստեփանյանի անունը: Այն ավիացիոն գրոհային գունդը, որի հրամանատարն էր փոխգնդապետ Ստեփանյանը, փակել էր հիտլերյան հորդաների ճանապարհը դեպի Լենինգրադ և դեպի Օդեսա. նա դաժան մարտերում իրեն պսակեց անմարելի փառքով:

Նելսոնը ծնվել է 1913 թվականին, Ադրբեջանական ՍՍՀ Շուշի քաղաքում: Երբ սկսվեց





ՆԵԼՍՈՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ

*Ավիացիայի գվարդիայի փոխգնդապետ, Սովետական Միության կրկնակի հերոս:*

Հայրենական պատերազմը, Նելսոն Ստեփանյանն քաղաքացիական ավիացիայի փորձված և հմուտ օդաչու էր: 1941 թվականի հունիսի 23-ին նա արդեն գտնվում էր Օդեսայի շրջանի ճակատամերձ օդանավակայաններից մեկում: Մեր հայրենիքի համար այդ տագնապալից օրերին, ահա թե ինչ էր գրում նա իր հարազատներին. «Քանի դեռ կրծքիս տակ բաբախում է իմ սիրտը, սրբազան պարտքս է մինչև արյան վերջին կաթիլը պաշտպանել հարազատ հայրենիքը, մեր սքանչելի սովետական ժողովրդին, մեր ծաղկող քաղաքներն ու գյուղերը: Իմ տեղը հայրենիքի պաշտպանների առաջին շարքերում է»:

Եվ Նելսոն Ստեփանյանը կատարեց իր պարտքը. նա մշտապես գտնվում էր հայրենիքի պաշտպանների առաջին շարքերում:

Օդային անվեհեր մարտիկին գիտեն և հիշում են ոչ միայն Անդրկովկասյան հանրապետություններում: Նա քաջաբար կռվում էր Օդեսայի և Լենինգրադի, Տալլինի և Լիբավայի համար: Այստեղ ևս հիշում ու սիրում են Նելսոնին, հիանում նրա սխրագործություններով:

Հայրենական պատերազմի տարիներին Ն. Ստեփանյանը կատարել է 239 մարտական թռիչք:

Լինելով գնդի կուսակցական բյուրոյի քարտուղար, Ստեփանյանը կոլեկտիվի ոգին էր: Օդաչուները մշտապես նրա մոտ էին գալիս օգնության, խորհրդի, իրենց կուսակցական ղեկավարի հետ պարզապես խոսելու համար: Նա իր ենթակաների մեջ դաստիարակում էր վստահություն իրենց ուժերի նկատմամբ, անվախություն և հավատ՝ հաղթանակի նկատմամբ, և հենց ինքն էլ օրինակ էր նրանց համար: Մարտական մի թռիչքից հետո գնդի օդաչուները Ստեփանյանին կոչեցին «մրրկահավ»: Դա այսպես է եղել: Թշնամին փորձում էր Ֆիննական ծոցը օգտագործել որպես ջրային ուղի՝ Լենինգրադը պաշարած իր զորքերին մարտական պինամթերք մատակարարելու համար: Հարկավոր էին հմուտ օդաչուներ ծովախորշով անցնող թշնամական տրանսպորտի և մարտական ռազմանավերի ճանապարհը խցանելու համար: Ամպամած, անձրևային օր էր: Ցուրտ ու խոնավ օդը խոցում էր: Դիվիզիայի հրամանատարությունը չէր ուզում ռիսկի դիմել, և գնդի հրամանատար Ստեփանյանին առաջարկեց գրոհելու համար ուղարկել միայն մեկ «Իլ—2» օդանավի անձնակազմ: Առաջադրանքը կկատարվի, հակիրճ պատասխանեց Սովետական Միության հերոս Նելսոն Ստեփանյանը և թռավ ինքը: Միայն ամենափորձված և խիզախ օդաչուն կարող էր համարձակվել այդպիսի թռիչք կատարելու: Եվ նա մառախուղի մեջ գտավ ֆաշիստական քարավանը ու ռազմանավի կայմի բարձրությունից խորտակեց հակառակորդի առնվազն երեք հազար տոննա ջրատարողություն ունեցող տրանսպորտը: Մարտական և խիզախ հրամանատարը օրեցօր, թռիչքից-թռիչք բազմապատկում էր իր մարտական հմտությունը, բայց 1944 թ. դեկտեմբերին, կատարելով կարևոր մարտական առաջադրանք, Նելսոն Ստեփանյանը զոհվեց: Հրամանատարության մարտական առաջադրանքները օրինակելիորեն կատարելու, արիության, սխրագործության ու հերոսության համար Ն. Գ. Ստեփանյանին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1945 թվականի մարտի 6-ի հրամանագրով ետմահու շնորհվեց Սովետական Միության կրկնակի հերոսի կոչում:

Ա. Մ. Գորկու նշանավոր «Բազեի երգը» պոեմում այսպիսի խոսքեր կան.

> «Օ, քաջ բազե,— դու կռվում՝ քո դաժան
> ոսոխների դեմ եղար արնաքամ...
> Թեկուզ մեռար դու, բայց երգերում քաջ և
> ոգով արի ու խիզախ մարդկանց —
> Ընդմիշտ կլինես պայծառ օրինակ, վսեմ
> օրինակ...
> Խոլ-խիզախների խենթությանը վեհ
> Երգում ենք երգ մենք...»

Մեր փառապանծ հերոսների անուններն ու սխրագործություններն անմահ են: Դրանք ոգեշնչման օրինակ են հանդիսանում: Հայրենական մեծ պատերազմի տարիներին տասը հայ օդաչուներ արժանացան Սովետական Միության հերոսի կոչման: 1941—1945 թթ. պատերազմի մասնա-

կից հայ մարտիկներից այդ բարձր կոչմանն առաջինն արժանացավ կործանիչ օդաչու, գումարտակի կոմիսար **Լազր Սերգեյի Չափչախովը:** Ըստ պաշտոնի քաղաշխատող և ըստ կոչման կործանիչ օդաչու: Լազր Սերգեևիչը մարտական ընկերներին դաստիարակում էր կուսակցական կրքոտ խոսքով և անձնական օրինակով:

Մենք եղել ենք հերոսի ընտանիքում: Դոնի-Ռոստով քաղաքից գրեթե քառասուն կիլոմետր հեռավորության վրա է գտնվում Մեծ Սալա գյուղը: Այդ բնակավայրում, Սովետական Միության հերոս Սերգեյ Օհանյանի մարտկոցի խիզախ հրետանավորների գերեզմանի վրա բարձրացված հուշարձանին մոտ կանգնած է մի փոքրիկ սպիտակ խրճիթ: Այդ խրճիթի պատին փակցված է մարմարե հուշատախտակ, որի վրա ոսկե տառերով փորագրված է՝

«Այս տանը 1910 թվականին ծնվել է Սովետական Միության հերոս Լազր Սերգեյի Չափչախովը: 38-րդ ավիացիոն գնդի շարքերում հերոսաբար մարտնչելով գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ, գումարտակային կոմիսար, կործանիչ օդաչու Չափչախովը 1942 թվականի ապրիլի 13-ին զոհվեց հերոսի մահով Լենինգրադի ռազմաճակատում»:

Հերոսի քույրը՝ Վարվառա Սերգեևնան և Լազրի այրին՝ Եկատերինա Յակովլևնա Չափչախովան ինձ ցույց են տալիս հերոսի բազմաթիվ փաստաթղթերն ու նամակները: Իմ առջևն են ռազմաճակատային թերթերից կտրվածքներ, լուսանկարներ, ջերմ հոգեպարար նամակներ: Դրանք պատկերում են սովետական հիանալի մարդու, անվախ բազեի, սիրող ամուսնու և գորովագութ հոր կերպարը:

Միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո Լազրը մեկնել է «Ռոստսելմաշ»-ի շինարարությունը: Եղել է հողափոր, կռանահար, էլեկտրիկ, այնուհետև կոմերիտական ուղեգրով ընդունվել է Լուգանսկի օդաչուական դպրոցը: Լինելով կործանիչ օդաչու, նա գերազանց թվանշաններով ավարտեց ռազմական կոմիսարների Խարկովի դպրոցը: Թերթերի կտրվածքները ծանուցանում են կոմերիտական և կուսակցական ղեկավարի գործունեությունը: Ահա Օմսկի կորամասից ՀամԼԿԵՄ X համագումարի պատգամավորի՝ Լ. Ս. Չափչախովի մանդատը: Ահա բրոշյուրը նրա՝ որպես գումարտակի կոմիսարի, աշխատանքի առաջավոր փորձի մասին:

Քաջաբար կռվելով նենգ թշնամու դեմ, հայ ժողովրդի պանծալի զավակը պատերազմի առաջին իսկ ամիսներին արժանանում է բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի: Ահա օդային մարտերից մեկի համառոտակի նկարագրությունը: ԼԱԳԳ—3 տիպի մեր չորս կործանիչ ինքնաթիռները Չափչախովի հրամանատարությամբ վերադառնում էին իրենց օդանավակայանը: Հանկարծ ձախից երևացին թշնամու ինքնաթիռները: Մեկուկես տասնյակ «Յունկերսներ» մահվան բեռ էին տանում թափելու մեր զորքերի վրա: Գումարտակային կոմիսարը իսկույն մարտի մեջ մտնելու որոշում ընդունեց և բազեներին առաջնորդեց գրոհի: Հինգ հազար մետր բարձրության վրա սկսվեց օդային դաժան մարտը: Կործանիչները մխրճվեցին թշնամու մեքենաների մարտական կարգի մեջ: Նրանք անսպասելի հարվածով հենց առաջին իսկ գրոհի ժամանակ, հրի մատնեցին թշնամու առաջատար երկու ռմբակոծիչները: Անգղերի շարքը երերաց: Եվս երկու «Յունկերս» կորցնելով, ռմբակոծիչները ետ դարձան դեպի իրենց օդանավակայանը: Նման միջադեպեր շատ կարելի է պատմել քաջարի օդաչու Չափչախովի կյանքից:



ԼԱԶՐ ՉԱՓՉԱԽՈՎ
*Գումարտակային կոմիսար, Սովետական Միության Հերոս:*

Իմ առջևն են ռազմաճակատային թերթերի էջերում տպագրված լուսանկարներ: Դրանք չափազանց շատ են և ապագա հերոսին ցույց են տալիս ռազմաճակատում: Ահա և մի լուսանկար: Սովետական ականավոր զորահրամանատարներ Կ. Վորոշիլովի, Մ. Բուդյոննու և մյուսների թվումն է Լ. Չափչախովը:

«Հին Ռուսիայի մոտ տեղի ունեցած օպերացիան» նոթերում ռազմական թերթը գրում է գերմանական 16-րդ բանակի շրջապատման մասին: Այդ բանակի ջախջախման գործում բացառիկ մեծ դեր խաղաց ավիացիան: Թերթը պատմում է, որ «Օպերացիայի օրերին գումարտակային կոմիսար Չափչախովը կատարեց յուրահատուկ հոբելյան՝ 250-րդ անգամ մարտական թռիչք անելով Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում: Այդ թռիչքը, ինչպես և շատ այլ թռիչքներ, հաջող էր. ընկ. Չափչախովը խորտակեց ևս երկու «Յունկերս—88»»:

Եվ նորից նամակներ: Դրանց հեղինակները բարեկամներն են, մարտական զինակիցները: Վերջիններս պատմում են այն մասին, թե ինչպես զոհվելուց տաս օր առաջ Չափչախովը փոխադրվել է մեկ այլ զորամաս՝ ավիացիոն գնդի կոմիսարի պաշտոնով: Հենց այդ ժամանակ էլ Լազր Սերգեևիչը արդեն ներկայացված է եղել Սովետական Միության հերոսի կոչման: Նա կատարել է 368 մարտական թռիչք, որոնց ընթացքում մասնակցել է 59 օդային մարտի: Նա անձամբ խորտակել է հակառակորդի 11 ինքնաթիռ, իսկ խմբային մարտերում՝ 52 ֆաշիստական անգղ, ցամաքում ոչնչացրել է մեծաքանակ տեխնիկա, ռազմամթերք և կենդանի ուժ:

Օդային ահեղ մարտերում թշնամու դեմ քաջաբար է կռվել Սովետական Միության հերոս **Սերգեյ Ավդեևիչ Բուռնազյանը:** Նա ծնվել է 1918 թվականին, Դոնի-Ռոստովի մարզի Պրոլետարսկայա ստանիցայում: 1931 թվականին տասներեքամյա պատանին ծնողների հետ միասին տեղափոխվում է Երևան և ուսումը շարունակում Պուշկինի անվան միջնակարգ դպրոցում: Այստեղ նա հմուտ մանկավարժների և ապա ավիացիոն ակումբի խիզախ օդաչուների կողմից դաստիարակվում է սովետական վառ հայրենասիրությամբ: Ահա թե կործանիչ-օդաչու Բուռնազյանի մասին ինչ են պատմում նրա օդաչուական գործի առաջին ուսուցիչները՝ մեր հանրապետության հնագույն օդաչուներ Շավարշ Ոսկանյանը և Գուրգեն Բաղդասարովը:

«Սերգեյ Բուռնազյանը Երևանի աերոակումբի համարձակ, պատրաստված և միաժամանակ համեստ կուրսանտներից էր: Այն ժամանակ նա դեռևս չուներ այն մեծ փառքը, որը նա վաստակեց ավելի ուշ՝ Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Նա կարող էր անվերջ, հափշտակությամբ պատմել իր կարդացած արկածային գրքերի ու պատմվածքների մասին: Բոլորը նրան վերաբերում էին մեծ հարգանքով: Նա խիզախ, պրոֆեսիոնալ օդաչու էր, իր գործի գերազանց գիտակ»:

Ավագ լեյտենանտ Սերգեյ Բուռնազյանի ղեկավարած ավիաէսկադրիլիան մինչև 1943 թվականի մարտը կատարել էր 815 մարտական թռիչք, մղել 62 օդային մարտ, որոնց ընթացքում խորտակել է 65 ֆաշիստական ինքնաթիռ, որից 24-ը ոչնչացրել է անձամբ Սերգեյ Բուռնազյանը, որն այդ նույն ժամանակամիջոցում կատարել է 244 մարտական թռիչք և մասնակցել 52 օդային մարտի:

Ստալինգրադում չորս ամիս տևող մարտերի ընթացքում ավագ լեյտենանտ Բուռնազյանը մասնակցել է 23 օդային մարտի և անձամբ ցած գցել հակառակորդի 5, իսկ խմբային մարտերում 2 ինքնաթիռ: Հենց այստեղ էլ, ռազմաճակատում, քաջարի օդաչուն ընդունվում է կոմունիստական կուսակցության շարքերը և պարգևատրվում մարտական կարմիր դրոշի շքանշանով:

1943 թվականի հունվարի մեկին «Защитник отечества» բանակային թերթում Բուռնազյանն իր մղած օդային մարտերից մեկի մասին գրել է.

«Հիշողությանս մեջ առանձնապես մնացել է Ս. քաղաքի մոտ (Ստալինգրադ—Զ.Պ.) տեղի ունեցած օդային մարտը: Բացառիկ լավ եղանակ էր: Վաղ առավոտյան մենք թռանք՝ պաշտպանելու ռազմական կարևոր օբյեկտները: Արևը դեռ չէր ծագել: Քաղաքը վառվում էր: Մենք երեք հոգի էինք: Արևմուտքից թռչում էր ֆաշիստական ռմբակոծիչների մի բազմություն: Դրանց թիվը մոտ 50 էր, և նրանց ուղեկցում էին «Մեսսերշմիդտ—109» տիպի 15—20 կործանիչներ: Նկատելով թշնամուն, ես ընկերներիս հավաքեցի և գնացի արևի կողմը, որպեսզի օդային ավազակներին գրոհեմ հանկարծակի: Երբ «Յունկերսները» վերադասավորվեցին ռումբեր նետելու համար, ես գրոհեցի առաջատարի վրա և արկով



*ՆԿԱՐՈՒՄ (ձախից աջ) կործանիչ օդաչու, Սովետական Միության Հերոս Սերգեյ Բուռնազյան, ռմբակոծիչ օդաչու Հարություն Պառոնյան, ավիացիայի փոխգնդապետ, կործանիչ օդաչու Արտավազդ Ավետիսյան, կործանիչ օդաչու Էմիլ Դիլանյան:*

հրկիզեցի նրան: Ինձ հետևող ավագ Եվսեևը հենց առաջին գրոհով հրկիզեց երկրորդին: Մեր երրորդ ընկերը՝ ավագ Սմիրնովը պաշտպանում էր մեզ: Հերթով գրոհելով, մենք ֆաշիստներին ստիպեցինք ռումբերը ցած թափել: Հետո մեզ նկատեցին «Մեսսերշմիդտները», բայց արդեն ուշ էր: Մենք մեր հիմնական խնդիրը կատարեցինք: Այդ մարտում մենք առանց կորուստ ունենալու, ցած գցեցինք թշնամու չորս ինքնաթիռ»:

Բայց խիզախ կործանիչ օդաչուն չապրեց մինչև հաղթանակը: 1944 թվականի ապրիլի 15-ին նոր տիպի ինքնաթիռ ստանալու համար երկաթուղով ճանապարհվելիս փառաբանված կործանիչ օդաչուն պռհվում է գնացքի ռմբակոծման ժամանակ:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, բարձր գնահատելով ավագ լեյտենանտ Սերգեյ Բուռնազյանի մարտական ծառայությունները, 1944 թվականի օգոստոսի 2-ի հրամանագրով հետմահու նրան շնորհեց Սովետական Միության հերոսի կոչում:

Ստալինգրադի երկնքում իր անօրինակ սխրագործությամբ աչքի ընկավ երիտասարդ օդաչու **Վլադիմիր Անաստասի Միկոյանը:** Ահա մի դրվագ նրա հերոսական կյանքից:

1942 թվականի սեպտեմբերի 18: 434-րդ ավիացիոն գունդը, որի կազմում էր նաև ավագ լեյտենանտ Վլադիմիր Միկոյանը, մարտական առաջադրանք ստացավ՝ օդից պաշտպանել առաջին գվարդիական բանակի հարձակումը: Մինչև ցերեկվա ժամը 12-ը գնդի արծիվները կատարեցին 78 մարտական թռիչք ու ոչնչացրին ֆաշիստական 15 ինքնաթիռ:

Կեսօրից հետո մեր «Լավոչկին—5» կործանիչների խումբը նորից թռիչքներ էր կատարում այրվող Ստալինգրադի վրա: 2.500 մետր բարձրությամբ դեպի մեր դիրքերն էին շարժվում ֆաշիստական 15 ռմբակոծիչներ՝ վեց կործանիչների պաշտպանությամբ: Մեր օդաչուները հանկարծակի հարձակումով խախտեցին թշնամու ինքնաթիռների շարքը, մասնատեցին այն ու նրանց ստիպեցին ռումբեր թափել աջ ու ձախ և ճողոպրել:

Սակայն թշնամու կործանիչները քիչ հետո նորից վերադարձան, և օդային դաժան մարտ սկսվեց: Վոլոդյան մեքենան վարում էր ամենամեծ արագությամբ, որպեսզի ընդհուպ մոտենա թշնամուն: Մի քանի կրակահերթ և թշնամու «Մեսսերշմիդտ—109» տիպի ինքնաթիռը, բոցերի մեջ կորած, թեքվեց կողքի վրա ու գլխիվայր սլացավ դեպի գետին: Օդում երևացին թշնամու և սովետական մի քանի այրվող նոր ինքնաթիռներ: Միկոյանի կարմրաթև կործանիչը, որի պոչին մի խոշոր «9» էր գրված, մեկ դեպի վեր էր սլանում, մեկ մրրիկի պես ցած խոյանում, կատարելով բարձր պիլոտաժի գլխապտույտ ֆիգուրներ: Բայց ահա այն սկսեց երերալ, այս ու այն կողմ նետվել, չենթարկվելով օդաչուին: Վերջինս ծանր վիրավորված էր...

...Սովետական Միության կրկնակի հերոս, կործանիչ ավիացիայի օդաչու Սերգեյ Լուգանսկին իր հուշերում այսպես է նկարագրում Վլադիմիր Միկոյանի վերջին օդային մարտը, որին նա նույնպես մասնակցել է.

«Մարտը հանդարտվում էր... «իններորդը», ասես ուժասպառ, երերում էր օդում: Ես հասա նրան և, միայն մոտիկից դիտելուց հետո, տեսա, որ ինքնաթիռի իրանը ծածկված է մեծ տրամագծի գնդակներով, ձախ թևը գրեթե պոկվել է: Խցիկում, ապակու ետևը տեսա Վոլոդյային: Նա երեսը թեքեց իմ կողմը, մեղմ ժպտաց՝ հոգնած մարդու ժպիտով ու գլուխը թուլացած կախեց... Ես նկատեցի, որ «իններորդը» երերալով մի կերպ թռչում է հակառակ ուղղությամբ՝ դեպի արևմուտք: Ուր է թռչում: Ուղղեցի ականջակալներս և ռադիոյով բղավեցի. Վոլոդյա, Վոլոդյա, մեքենադ ետ թեքիր, լսո՞ւմ ես, ետ թեքիր, դու հակառակ ուղղությամբ ես թռչում... Վոլոդյա, տուն վերադարձիր: Բայց վիրավոր Վոլոդյայի ուժերը հավանաբար ամբողջովին սպառվել էին. մեքենան թեքվեց, իսկ քիչ հետո սկսեց այրվել: Փորձով համոզված լինելով, որ պատահածն այլևս



ՆԿԱՐՈՒՄ *(ձախից աջ) ռմբակոծիչ օդաչու* Նիկոլայ Մանուչարյան, *խոյընթաց ռմբակոծիչի օդաչու* Շավարշ Սարգսյան, *ռմբակոծիչ օդաչու* Գուրգեն Բաղդասարով, *կործանիչ օդաչու* Միքայել Սարգսյան:

ուղղել չի լինի, ես, այնուամենայնիվ, նորից մի քանի շրջապտույտ կատարեցի այրվող մեքենայի շուրջը, բայց օդում պարաշյուտ չտեսա:

Իմ աչքի առջև ինքնաթիռը մխրճվեց գետնի մեջ»...

Մոսկվայում, Սովետական բանակի կենտրոնական թանգարանի սրահներից մեկում, ինչպես սրբազան մասունքներ, խնամքով պահվում են խիզախ օդաչուի անձնական իրերը՝ N 11753125 կոմերիտական տոմսը, մարտական կարմիր դրոշի շքանշանը, ծոցատետրը... Դրանք տասնութամյա ավագ լեյտենանտ Վլադիմիր Միկոյանի ուսանելի կյանքի տարեգրության իրեղեն վկաներն են:

Այժմ Երևանում ապրում և աշխատում են փառաբանված շատ օդաչուներ, որոնք Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում ցույց են տվել հերոսության ու արիության բազմաթիվ օրինակներ:

Զապոլյարիեի օդում քաջաբար էր կռվում 78-րդ ավիագնդի ծովային կործանիչ-օդաչու **Էմիլ Մարկոսի Դիլանյանը:** Կարճ ժամանակում նա կատարել է ավելի քան հարյուր մարտական թռիչք և ծանր, անհավասար օդային մարտերում խորտակել թշնամական հինգ ինքնաթիռ: Իր վերջին օդային մարտը Էմիլ Մարկոսովիչը մղել է 1942 թվականի օգոստոսի առաջին օրերին և կատարել անօրինակ սխրագործություն: Ճշգրիտ գնդացրային կրակով նա խորտակել է ֆաշիստական «Մեսսերշմիդտ—109» երկու ինքնաթիռ և կյանքը վտանգելով անխուսափելի մահից փրկել հրամանատար Պյոտր Սգիբնևին:

Ահա թե այդ մարտի մասին ինչ է պատմում Սովետական Միության հերոս Ս. Կուրզենկովը, որը մասնակցել է այդ ահեղ և անհավասար կռվին:

«Գրոհներից մեկի ժամանակ Դիլանյանը, պաշտպանելով իր հրամանատարին, ինքն ընկավ երկու «Մեսսերշմիդտների» կրակի տակ: Գրեթե ճակատից թշնամական կործանիչները նրա վրա գնդակների կարկուտ տեղացին: Կարծես թե կայծակ շանթեց օդաչուի աչքերին, կուրացնելով նրան. ինքնաթիռը ցնցվեց: Մոտոռի կատաղի հռնդյունով կործանիչը վեր խոյացավ: Դիլանյանը ցավի մեջ մեծագույն ճիգով սեղմեց կառավարման լծակը, բայց ինքնաթիռը ղեկին չէր ենթարկվում: Օդաչուն փորձեց մեկնել ձախ ձեռքը, բայց այն չգտավ: Նայեց և սոսկաց. ձեռքի փոխարեն կախ էր ընկել օդաչուական կաշվե կուրտկայի թևի մի կտոր լաթ, որից արյուն էր ծորում: Իսկ ղեկը կորցրած ինքնաթիռը ընկնում էր: Նրա ձախ կողմի թևը լափում էին կրակի լեզվակները: Մեծ դժվարությամբ Դիլանյանը թողեց վառվող ինքնաթիռը և պարաշյուտով իրեն ցած գցեց»:

Շատ տարիներ են անցել: Պատերազմից հետո, Մոսկվայի էներգետիկ ինստիտուտում, նա ավարտեց ասպիրանտուրան, պաշտպանեց թեկնածուական դիսերտացիա: Այժմ նա աշխատում է Երևանի պոլիտեխնիկ ինստիտուտում որպես ամբիոնի վարիչ: Նա ընտրվել է Երևանի քաղաքային սովետի դեպուտատ:



ՎԼԱԴԻՄԻՐ ՄԻԿՈՅԱՆ

*Գվարդիայի ավագ լեյտենանտ, կործանիչ օդաչու:*

Հիանալի կործանիչ-օդաչուի համբավ էր վաստակել փոխգնդապետ **Արտավազդ Սարգսի Ավետիսյանը,** որը ֆաշիստների դեմ կռվել է Ղրիմի և Լենինգրադի երկնքում, խորտակել է անձամբ թշնամու 11 ինքնաթիռ:

1942 թվականի մայիսի 9-ին, գտնվելով 71-րդ ավիացիայի 269-րդ կործանիչ ավիացիոն գնդի կազմում, Ավետիսյանը կատարեց մի այնպիսի բացառիկ սխրագործություն, որն օրինակ էր ծառայում ճակատային շատ օդաչուների:

Ահա թե ինչ կատարեց անվախ օդաչուն:

Ավագ լեյտենանտ Վալենտին Ստեպանովիչ Սախարովի հրամանատարության տակ գործող կործանիչների ավիաէսկադրիլյան առաջադրանք ստացավ՝ գրոհել Իլյիչի Կարդոն բնակավայրի մոտ գտնվող թշնամու օդանավակայանը: Նպատակակետին հասնելու պահին ինքնաթիռները հանդիպեցին թշնամու կործանիչների մի մեծ խմբի: Սկսվեց օդային մարտ: Գերմանական ինքնաթիռները երկու անգամ ավելի էին: Էսկադրիլյայի օդաչուները այդ մարտում խորտակեցին չորս «Մեսսերշմիդտ», որոնցից մեկը դիպուկ կրակահերթով այրեց Ավետիսյանը: Երկրորդ գրոհի ժամանակ Արտավազդը նկատեց, որ ֆաշիստ-

ները խփեցին խմբի հրամանատարի ինքնաթիռը: Ծանր վիրավորված Սախարովը այրվող ինքնաթիռից պարաշյուտով դուրս թռավ և իջավ թշնամական տերիտորիայում: Գիտենալով, որ հրամանատարին սպառնում է մահ կամ գերություն, Ավետիսյանը ակնթարթորեն նետվեց նրան օգնելու: Իր փոքրիկ կործանիչը կանգնեցնելով գետնին իջած ընկերոջ կողքին, նա մեծ դժվարությամբ Սախարովին տեղավորեց նստատեղի ետեվում և թշնամու կրակի տակ, վտանգի ենթարկելով սեփական կյանքը, վարպետորեն դժվար թռիչք կատարեց: Թռիչքից մի քանի րոպե հետո ծանրաբեռնված «Չայկա» փոքրիկ կործանիչը հաջող վայրէջք կատարեց իր օդանավակայանում: Այդ սխրագործության համար Ավետիսյանը պարգևատրվեց մարտական **Կարմիր դրոշի** երրորդ շքանշանով: Այժմ պահեստի գվարդիայի փոխգնդապետ Ավետիսյանը պաշտոնաթող է և իր հիշողություններն է գրում պատերազմի մասին:

Պաշտոնաթող է նաև մարտական օդաչու, հայ սավառնորդների վետերան **Շավարշ Նիկոլայի Ոսկանյանը:** Չնայած իր պատկառելի տարիքին, նշանավոր օդագնացը սիրված կբաղմունքը չի թողնում: 72-ամյա սավառնորդին, որը շուրջ կես դար ծառայել է ավիացիայում, կարելի է ամեն օր հանդիպել կամ օդանավակայանում կամ ԴՕՍԱԱՖ-ի հանրապետական կոմիտեում, որտեղ նա հասարակական կարգով վարում է օդաչուական կադրերի պատրաստման բաժնի պետի պաշտոնը:

Շատ մարտական օդաչուներ, շտուրմաններ, ռադիստներ, բորտ-ինժեներներ սովետական բանակի շարքերից կորացրվելով, ներկայումս ծառայում են Հայաստանի քաղաքացիական ավիացիայի վարչությունում և իրենց հարուստ փորձը հաղորդում երիտասարդությանը:

Ամբողջ երկրում հայտնի ՍՍՀՄ վաստակավոր փորձարկող շտուրման **Կոնստանտին Իվանի Մալխասյանը,** միլիոնավոր կիլոմետրեր կտրող օդաչուներ Նիկոլայ Ներսեսի Մանուչարյանը, Գուրգեն Պետրոսի Բաղդասարովը, Հարություն Խաչատուրի Պարոնյանը, Շավարշ Սարգսի Սարգըսյանը, նախկին կործանիչ օդաչուներ Պյոտր Անդրեևիչ Ալֆերովը, Լիբկնեխտ Մինասի Մարգարյանը և շատ ուրիշներ այժմ հինգերորդ օվկիանոսի ուղիներում հաջողությամբ վարում են իրենց խաղաղ «ԻԼ—18» օդանավերը: Առանձնապես ցանկալի է պատմել մեր հայրենիքի նշանավոր շտուրման Կոնստանտին Մալխասյանի մարտական կյանքի և խաղաղ առօրյայի մասին:

Նա ծնվել ու մեծացել է Երևանում: Նա Հայաստանում առաջիններից մեկն էր, որ ավարտեց պլաներիստների դպրոցը և աէրոակումբը: Երբ ճապոնական իմպերիալիստները հարձակվեցին Չինաստանի վրա, Մալխասյանը ուրիշ օդաչուների հետ միասին, որպես կամավոր, թռավ Չինաստան և երկու տարի շարունակ օգնում էր չին ժողովրդին ճապոնական սամուրայների դեմ մղվող պինված պայքարում:

Սպիտակֆինների դեմ մղված պատերազմից հետո Կոնստանտին Իվանովիչը թռիչքներ էր կատարում Ա. Ն. Գոլովանովի՝ ավիացիայի ապագա մարշալի, անձնակազմում:

—Գոլովանովի հետ կատարած թռիչքները,— հիշում է Մալխասյանը,—թռիչքային վարպետությունը յուրացնելու և շտուրմային-հրամանատարական հմտություններ ձեռք բերելու հիանալի դպրոց էր: Այդպիսի հիանալի օդաչուից և մարդուց շատ բան սովորեցի: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Մալխասյանը մնաց Գոլովանովի անձնակազմում և հաջողությամբ կատարում էր գլխավոր հրամանատարության կորպուսի առանձին պատասխանատու առաջադրանքներ:

1943 թվականի դեկտեմբերին նա ֆլագմանական հատուկ ինքնաթիռի անձնակազմում փոխադրեց չորս մեծ տերությունների Թեհրանի կոնֆերանսի սովետական կառավարական պատվիրակությանը:

Պատերազմից հետո Մալխասյանը ընտրեց նոր մարտական և տրանսպորտային ինքնաթիռների շտուրման-փորձարկողի վտանգավոր պրոֆեսիան: Նա թռիչքային անձնակազմի հետ միասին օդում փորձարկեց Տու—4, Տու—104, Տու—110, Տու—114, Տու—124 և տուպոլևյան ուրիշ շատ այլ օդանավեր: Մալխասյանն այդ ինքնաթիռներում մասնակցեց հեռավորության, արագության, բեռնաամբարձման, բարձրության 30 համաշխարհային ռեկորդների սահմանմանը:

Ավելի քան երեսուն տարի ավիացիայում ծառայելու, մեր հայրենիքի թշնամիների դեմ մղված մարտերում արիություն ու հերոսություն ցուցաբերելու, ինքնաթիռների փորձարկմանը ակտիվորեն մասնակցելու համար գվարդիայի պահեստի գնդապետ Կ. Ն. Մալխասյանը պարգևատրվել է 18 շքանշաններով ու մեդալներով:

Կուլենայի Հայաստանի գործող և պաշտոնաթող բոլոր սավառնորդներին մեծ հաջողություններ ցանկանալ նրանց շնորհակալ, խաղաղ աշխատանքում և արժանի հանգստում:



# ՍՄԿԿ ՊԱՅՔԱՐԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ս. ՊԱՊՅԱՆ

*Միջազգային հարաբերությունների զարգացման հիմնական տենդենցը,*
*ինչպես ընդգծեց ՍՄԿԿ XXIII համագումարը, Սովետական Միության, սո-*
*ցիալիզմի համաշխարհային սիստեմի հեղինակության և ազդեցության ան-*
*շեղ աճն է, իմպերիալիզմի և գաղութատիրության դեմ պայքարող երկրների*
*ու ժողովուրդների հաղթանակները, կապիտալիզմի երկրներում բանվոր դա-*
*սակարգի պայքարի ակտիվացումը, համաշխարհային կոմունիստական և*
*բանվորական շարժման հետագա աճը: Դրա հետ մեկտեղ շարունակվում է*
*կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սրման ու խորացման պրոցեսը: Աճել*
*է նրա ագրեսիվությունը, որի հետևանքով լրջորեն սրվել է միջազգային իրա-*
դրությունը: Պատմական զարգացման ամբողջ ընթացքը հստակ դրսևորում է
մարդկության նակատագրում համաշխարհային հեղափոխական պրոցեսի
երեք հիմնական ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգա-
յին բանվորական, կոմունիստական շարժման և ժողովուրդների ազգային-
ազատագրական շարժման առաջատար դերը:

*Կոմունիստական և բանվորական շարժման ուժն ու ազդեցությունը չի*
*չափվում միայն նրա մասնակիցների թվով: Կոմունիստների հեղափոխական*
*աշխատանքի իսկական թափն ու արդյունավետությունը կարելի է ճիշտ գնա-*
*հատել միայն համաշխարհային կոմունիստական շարժման մեջ տարբեր կու-*
*սակցությունների գործունեության բովանդակության վերլուծության հիման*
*վրա: Կոմունիստական կուսակցությունների առջև դրված խնդիրների բնույ-*
*թով նրանց կարելի է բաժանել երեք խմբի:* Առաջին՝ *սոցիալիստական 14*
*երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունները: Սա համաշ-*
*խարհային կոմունիզմի ամենահզոր ջոկատն է, որտեղ կենտրոնացված է նրա*
*հիմնական ուժը:* Երկրորդը՝ *զարգացած կապիտալիզմի երկրների 27 կոմու-*
*նիստական կուսակցությունները, որոնք ղեկավարում են կապիտալիստա-*
*կան երկրների աշխատավորների պայքարն ընդդեմ մոնոպոլիստների գերիշ-*
*խանության և հանուն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի:*
Երրորդ՝ *ազգային անկախություն նվաճած կամ հանուն դրա պայքարող*

երկրների 47 կոմունիստական կուսակցությունները։ Արդի կոմունիստական շարժման այս հիմնական ջոկատների կուսակցություններից յուրաքանչյուրը, մասնակցելով ամբողջ աշխարհի կոմունիստների ինտերնացիոնալ ընդհանուր պայքարին, միաժամանակ վճռում է իր ազգային հեղափոխական խնդիրները։ Կառավարող մարքսիստական-լենինյան կուսակցությունների հեղափոխական գործունեության հիմնական բովանդակությունը սոցիալիզմի և կոմունիզմի շինարարությունն է։

Լենինյան պատգամներին հավատարիմ՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն ստեղծագործաբար է վճռում կոմունիստական շինարարության հասունացած հարցերը։ Դրա վառ ապացույցը ՍՄԿԿ XXIII համագումարն էր, որի որոշումներում մեծ ուժով արտահայտվեց մեր կուսակցության խիզախ, գիտականորեն հիմնավորված մոտեցումը ժամանակակից հասարակական զարգացման բարդ պրոբլեմներին։

Անշուշտ, այնպիսի բարդ գործում, ինչպիսին է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը, դժվարություններ ու թերություններ շատ կան։ Սակայն գլխավորն ակնառու է. հինգ տասնամյակի ընթացքում սոցիալիզմը երազանքից վերածվեց համաշխարհային մեծ և անպարտելի ուժի։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ոչ մի ջանք չի խնայում սոցիալիզմի երկրների համախմբվածության ամրապնդման համար։ ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների միջև մշտապես տեղի են ունենում կարծիքների, քաղաքական կոնսուլտացիաների փոխանակումներ։ Այսպես, 1966—1967 թթ. Մոսկվայում և այլուր հանդիպեցին սոցիալիստական մի շարք երկրների կոմունիստական կուսակցությունների ներկայացուցիչները։ Համատեղ ջանքերի շնորհիվ վերջին ժամանակաշրջանում ընդլայնվել և ամրապնդվել են Սովետական Միության եղբայրական հարաբերությունները սոցիալիզմի երկրների բացարձակ մեծամասնության հետ։ Այսուհանդերձ, ինչպես նշվեց XXIII համագումարում, չնայած ՍՄԿԿ բոլոր ջանքերին, մեր հարաբերությունները սոցիալիստական երկու երկրների կուսակցությունների՝ Չինաստանի կոմունիստական և Ալբանիայի աշխատանքային կուսակցությունների հետ մնում են անգոհացուցիչ։

Տվյալ դեպքում չպետք է անտեսել, որ սոցիալիզմի ուղին բռնած երկրների աշխարհագրական, սոցիալ-տնտեսական, էթնիկական, կացութաձևային, պատմական և ազգային էական տարբերությունները կարճ ժամանակում չէին կարող համահարթվել հաղթանակած նոր կարգերի շրջանակներում, առանց փոխադարձ օգնության և ըմբռնման։ Սոցիալիզմի կառուցումը ոչ միայն նոր արտադրահարաբերությունների արմատավորումն է, այլև միաժամանակ բուրժուական հասարակության «անիծյալ բծերից» աշխատավորության տևական ու դժվարին ինքնամաքրումն է, նրա կոմունիստական դաստիարակությունը։ Հետևաբար, այդ տարբերությունները չեն կարող այս կամ այն ձևով չդրսևորվել կոմունիստական կուսակցությունների գործունեության մեջ։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին տարիներին Լենինը նախազգուշացնում էր, որ ազգերի լիակատար վստահությունը միմյանց հանդեպ անհնար է իրագործել անմիջապես։ Որպեսզի հնարավոր լինի ձերբազերծվել կալվածատերերի ու կապիտալիստների, մասնավոր սեփականության դարավոր ճնշման հետևանքով մնացած ազգային անվստահությունից, հին հոգեբանությունից ու սովորույթներից, անհրաժեշտ է մեծ համբերատա-



րություն ու զգուշություն։ Եվ քանի որ սոցիալիստական երկրների միջև հարաբերությունների կարգավորումը նոր և դժվարին գործ է, ապա այստեղ կարող են տեղ գտնել սխալներ, ինչպես այդ պատահել է անցյալում։ Նշենք, որ սոցիալիստական երկրներն ունեն տնտեսական և կուլտուրական զարգացման դեռևս տարբեր մակարդակ, իսկ այստեղից էլ բխում է համաշխարհային սոցիալիստական ամբողջ սիստեմի համար ընդհանուր տնտեսական պրոբլեմների նկատմամբ ոչ միատեսակ մոտեցումը։ Սոցիալիստական երկրների միջազգային քաղաքականության համար էական նշանակություն ունի նաև առանձին հարցերի առնչությամբ իմպերիալիստական տերությունների հետ ունեցած տնտեսական-կուլտուրական շփումների բնույթը։ Ի վերջո, սոցիալիստական երկրների և կոմունիստական կուսակցությունների փոխհարաբերությունների վրա կարող են ազդել նաև սուբյեկտիվ գործոնները։

Այս բոլոր գործոնների ազդեցությամբ առանձին հարցերի շուրջ կարող են դրսևորվել տարբեր տեսակետներ, որոնք մերթ կարող են վերաճել քաղաքական տարաձայնությունների։ Որպեսզի կանխվի այդ, հարկավոր է յուրաքանչյուր կուսակցության ինքնուրույնության նկատմամբ լիակատար հարգանքի, առանձին կոմունիստական կուսակցությունների և սոցիալիստական պետությունների ներքին գործերին չմիջամտելու հիման վրա փնտրել շփման կետեր, մշակել ընդհանուր հարցերի նկատմամբ այնպիսի տեսակետներ, որոնք ընդունելի լինեն բոլոր կոմունիստական կուսակցությունների համար։ Իսկ դա ձեռք է բերվում եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչների միջև հանդիպումների, կոնսուլտացիաների, խորհրդակցությունների և բանակցերի միջոցով։

Իսկական և կայուն միասնություն ձեռք բերելու համար սոցիալիստական երկրների ժողովուրդները նախ պետք է սովորեն հասկանալ ու հարգել միմյանց։ Մարքսիստ-լենինյանները միշտ հարգել և հարգում են ազգային սուվերենությունը, կանգնած են սոցիալիստական երկրների ազգային տնտեսության և մշակույթի լիակատար բարգավաճման, նրանց իրական իրավահավասարության դիրքերում։ Ճանաչելով յուրաքանչյուր երկրի, յուրաքանչյուր ազգի ինքնուրույն և անկախ զարգացման իրավունքը, կոմունիստները դրա մեջ տեսնում են ազգերի անշեղ մերձեցման, նրանց եղբայրական համագործակցության ու անխախտ դաշինքի միակ ուղին։ Մեր կուսակցությունը հենց այդպիսի քաղաքականություն է կենսագործում։

Սոցիալիստական երկրների համագործակցությունը և փոխօգնությունը տնտեսական ու քաղաքական անհրաժեշտություն է։ Նրանք շահագրգռված են միմյանց հետ սերտ կապեր հաստատել, քանի որ այդպիսի կապերը նրանց անկախության ու ազգային սուվերենության ամրապնդման, նրանց արագ ու հաջող զարգացման երաշխիքն են և ստեղծում են ժողովրդի նյութական բարեկեցության անընդհատ աճ, ապահովում սոցիալ-տնտեսական և մշակութային զարգացման մակարդակների աստիճանական հավասարեցում։ Առանց սոցիալիստական պետությունների դաշինքի, առանց նրանց փոխադարձ աջակցության անհնար է լուծել սոցիալիզմի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման բարդ խնդիրները, անհնար է սոցիալիստական ամեն մի երկրի և ողջ սիստեմի պաշտպանության կազմակերպումը։

Թվում է, թե այս ամենը քաջ հայտնի է և չպետք է վեճեր առաջացնի առանձին սոցիալիստական երկրների կոմունիստների միջև։ Սակայն քաղաքական

անաղնիվ ուտնձգությունները կարող են անվիճելի ճշմարտությունները վիճելի դարձնել, բարին չարիք ներկայացնել։ Հենց այդպես են վարվում դոգմատիկները և տարբեր երկրների կոմունիստների միասնության ու համախմբվածության մյուս հակառակորդները։ Իրենց արտաքին քաղաքականությունը համաձայնեցնելու սոցիալիստական երկրների ձգտումը նրանք բացատրում են որպես մեկի կամքը մյուսին պարտադրելու դիտավորություն, մյուսներին ինքնուրույնությունից զրկելու փորձ։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը գոյություն ունի և զարգանում է։ Նա գոյություն կունենա և կշարունակի զարգանալ նույնիսկ այն դեպքում, եթե այս կամ այն երկիրը որոշ ժամանակամիջոցում ինքնամեկուսացման քաղաքականություն վարի, հրաժարվի սոցիալիզմի մյուս երկրների հետ համագործակցելուց։ Բայց դրա անխուսափելի հետևանքները կլինեն ավելորդ դժվարությունները, հասարակական առաջադիմության թափի ոչնչով չարդարացվող դանդաղեցումը։

Աշխարհի ժողովուրդները սոցիալիզմի համաշխարհային սիստեմում իրավացիորեն տեսնում են իրենց դարավոր երազի, պատմական իդեալի մարմնավորումը, իրենց ապագան։ Համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա սոցիալիզմի սիստեմն ազդում է շատ ուղղություններով։ Այս առումով առաջնակարգ նշանակություն ունեն նրա տնտեսական հաջողությունները։ Արտացոլելով իրենց երկրների աշխատավորության կամքն ու միջազգային բանվոր դասակարգի առաջավոր խավերի ձգտումներին համաձայն գործելով, Սովետական Միությունն ու սոցիալիստական մյուս պետություններն իրենց պատմության ամբողջ ընթացքում հետզհետե աճող օգնություն են ցույց տալիս Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժմանը։

Սոցիալիստական երկրների գոյությունն ու հաջողությունները լուրջ ազդեցություն են գործում սոցիալական ուժերի հարաբերակցության վրա նաև համաշխարհային կապիտալիզմի ներսում, ստիպում են բուրժուական երկրների կառավարող շրջաններին հաճախակի զիջումներ անել աշխատավորությանը։

Կապիտալի երկրների կոմունիստական կուսակցությունները գլխավորում են մասսաների պայքարը մոնոպոլիաների դեմ, դասակարգային մարտերում կոփում են հեղափոխության քաղաքական բանակը։ Այդ երկրներից շատերում այժմ կոմունիստական կուսակցությունները խորապես ազդում են ամբողջ ազգային կյանքի վրա։ Կոմունիստների շրջանից դուրս են գալիս հասարակական և քաղաքական խոշոր գործիչներ, աշխատավորության գործի անձնուրաց մարտիկներ։ Մի շարք զարգացած կապիտալիստական երկրներում, մասնավորապես Ֆրանսիայում, Իտալիայում, Ֆինլանդիայում կոմունիստական կուսակցությունները դարձել են մասսայական և ազգային մասշտաբով մեծ ազդեցություն են գործում իրենց երկրների հասարակական- քաղաքական կյանքի վրա։ Նրանք ոչ միայն իրենց ետևից են տանում միլիոնավոր բանվորների, այլև զգալի ազդեցություն ունեն աշխատավոր ժողովրդի բոլոր խավերի, մտավորականության առաջավոր մասի շրջանում։

Աշխատավոր մասսաների վրա իրենց ազդեցությունն ուժեղացրել են նաև Հունաստանի, Բելգիայի, Արգենտինայի, Չիլիի, Ուրուգվայի կոմունիստական կուսակցությունները։ Մի շարք երկրներում (Ֆինլանդիա, Սիրիա և այլն) կոմունիստները մտնում են կոալիցիոն կառավարությունների կազմի մեջ։ Իրենց մասնակցությունը բուրժուական կառավարություններում նրանք դիտում



են իբրև բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության շահերը պաշտպանելու նպատակով այդ կառավարությունների քաղաքականության վրա ներգործելու կարևոր միջոց։

Կոմունիստների աճող հեղինակության մասին են խոսում ընտրություններում նրանց հաջողությունները։ Օրինակ, Իտալիայում, Ֆրանսիայում կամ Ֆինլանդիայում կոմունիստների օգտին է քվեարկում յուրաքանչյուր չորրորդ-հինգերորդ ընտրողը։ Վերջերս տեղի ունեցած XVIII համագումարում Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը ցուցաբերեց հաստատակամություն մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային դիրքերի պաշտպանման գործում, ինչպես նաև ստեղծագործական մոտեցում և ճկունություն՝ տեսության հարցերի և տակտիկական խնդիրների լուծման բնագավառում։

Լուրջ հաջողությունների է հասել Իտալիայի կոմունիստական կուսակցությունը։ 1964 թվականի ընտրություններում նա հավաքեց մոտ 8 միլիոն ձայն, մեկ միլիոնով ավելի, քան նախորդ ընտրություններին։

Ֆինլանդիայի պառլամենտի ամենախոշոր ֆրակցիան Ժողովրդի դեմոկրատական միությունն է (ՖԺԴՄ)։ Նրա ղեկավար ուժը կոմկուսն է։ Ֆինլանդիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության աջ լիդերներին երկար ժամանակ հաջողվում էր խոչընդոտել կոմունիստների և սոցիալիստների գործողությունների միասնությունը։ Սակայն, ստորին կազմակերպությունների ճնշման տակ, սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությունում զգալի առաջխաղացում նկատվեց, որը կառավարական մակարդակով սոցիալ-դեմոկրատների և կոմունիստների համագործակցության նախադրյալներ ստեղծեց։ Ֆինլանդիայի կոմկուսի շարքերում ներկայումս կա 48 հազար անդամ։

Բելգիայի, Իսլանդիայի, Լյուքսեմբուրգի, Շվեյցարիայի, Իսրայելի, Հնդկաստանի, Ցեյլոնի, Ճապոնիայի, Պանամայի, Ուրուգվայի, Չիլիի և այլ կոմունիստական կուսակցություններ ներկայացուցչություններ ունեն իրենց երկրների պառլամենտներում։ 1964—1967 թվականներին տեղի ունեցած պառլամենտական ընտրությունների ժամանակ ոչ-սոցիալիստական երկրների կոմունիստներն ընդհանուր առմամբ հավաքել են 40 միլիոն ձայն։

Մեծ Բրիտանիայի, Բելգիայի, Ավստրիայի, Դանիայի և մյուս երկրների կոմունիստներն ամրապնդում են իրենց կապերը մասսաների հետ, հանդես են գալիս իբրև աշխատավորության շահերի ամենահետևողական պաշտպաններ, գտնում են դասակարգային պայքարի նոր ուղիներ ու ձևեր, որի գլխավոր պայմանը գործողությունների միասնականությունն է։

Դժվարին ու փշոտ է կոմունիստների ճանապարհը կապիտալիստական երկրներում, որը կեղծավորաբար անվանում են «ազատ աշխարհ»։ Այստեղ կոմունիստական շարժման յուրաքանչյուր քայլը կատարվում է փորձված, նենգ ու դաժան հակառակորդի դեմ մղվող կատաղի պայքարում։ XXIII համագումարին տված՝ ՍՄԿԿ ԿԿ հաշվետու զեկուցման մեջ նշվում էր, որ մեր կուսակցությունը, որը փառավոր ուղի է անցել XIX դարի վերջերի առաջին ընդհատակյա մարքսիստական խմբակներից, 1905 թվականի բարիկադային կռիվներից, Մեծ Հոկտեմբերի հեղափոխական ճակատամարտերի միջով մինչև սոցիալիզմի հաղթանակը, լիովին գիտակցում է, թե կոմունիստներից որպիսի արիություն, կայունություն և հերոսություն է պահանջում ժողովրդի գործի համար մղվող պայքարը թշնամու անընդհատ կրակի ներքո։ Արդեն շատ տարիներ անլեգալ են Իսպանիայի, Պորտուգալիայի, Հունաստանի, Արևմտյան Գերմանիայի, Վենեսուելայի, Պերուի, Էկվադորի, Կոլումբիա–

յի, Գվատեմալայի, Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և մի շարք այլ երկրների կոմունիստական կուսակցություններ։ Դժվարին պայմաններում, դիմագրավելով ոստիկանական վիթխարի մեքենայի գրոհը, մշտապես հալածվելով բուրժուազիայի կողմից վարձված՝ հակակոմունիզմի գաղափարախոսներից, արիաբար մարտնչում է ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցությունը։

Մեծ Հոկտեմբերի ժամանակներից ի վեր և հատկապես սոցիալիստական սիստեմի ստեղծումից հետո, համաշխարհային մասշտաբով ուժերի հարաբերակցության արմատական փոփոխությունը բարենպաստ պայմաններ ստեղծեց ազգային-ազատագրական շարժման ծավալման համար։

Այդ շարժումն ամենից առաջ, հակաիմպերիալիստական բնույթ է կրում, սակայն վերջին ժամանակներս այն միաժամանակ վերաճում է ընդհանրապես կապիտալիզմի դեմ ուղղված շարժման։ Մի շարք երկրներ, օրինակ, Արաբական Միացյալ Հանրապետությունը, Ալժիրը, Սիրիան, Բիրման, Մալին, Գվինեան, Կոնգոն (Բրազավիլ) արդեն ձեռնամուխ են եղել սոցիալիստական վերափոխումներին, մյուս երկրներում դեռևս զարգացման ուղիների հարցը չի գտել իր լուծումը, չնայած պատմական փորձը սովորեցնում է, որ միայն զարգացման ոչ-կապիտալիստական ուղին կարող է ապահովել կայուն անկախություն և բարգավաճում։

Հեղափոխական ուժերի բուռն աճ է տեղի ունենում և Լատինական Ամերիկայում, որը վաղուց ի վեր հանդիսանում է Ուոլ-ստրիտի հումքի աղբյուրը։ Արդեն միայն այն հանգամանքը, որ հենց համաշխարհային իմպերիալիզմի որջի ու միջնաբերդի մոտ աճում և ուժ է հավաքում սոցիալիստական Կուբան, շատ բան է ասում։ Կուբայի հեղափոխության անմար ջահը լուսավորում է Լատինական Ամերիկայի բոլոր ժողովուրդների ուղին։ Դեռ երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին կոմունիստական կուսակցությունները գործում էին Լատինական Ամերիկայի միայն 15 երկրներում, ըստ որում, դրանք շատ փոքրաթիվ էին և իրենց շարքերում համախմբում էին 90 հազար մարդուց ոչ ավելի։ Ներկայումս նրանք գործում են մայրցամաքի բոլոր երկրներում և իրենց շարքերում ունեն 300 հազար մարդ։

Դասակարգային պայքարի ղեկավարումը մեծ և բարդ արվեստ է, իսկ մեր ժամանակներում, հավանաբար, այն ավելի բարդ է, քան երբևէ։ Միանգամայն բազմազան են այն պայմանները, որոնցում պայքարում են եղբայրական կուսակցությունները։ «Վերջին տարիների հեղափոխական շարժման փորձը վերստին հաստատեց,— ընդգծվեց ՍՄԿԿ XXIII համագումարում,— որ հաջողության են հասնում այն կուսակցությունները, որոնք առաջնորդվում են ստրատեգիայի և տակտիկայի՝ փորձված ու պրակտիկայում ստուգված լենինյան սկզբունքներով, հաշվի են առնում ռեալ իրադրությունը»։ Կյանքը սովորեցնում է, որ մարքս-լենինյան գծից ինչպես դեպի «աջ», այնպես էլ դեպի «ձախ» կատարվող շեղումները հատկապես վտանգավոր են դառնում, երբ դրանք զուգորդվում են նացիոնալիզմի, մեծապետական շովինիզմի և հեգեմոնիզմի դրսևորումներով։ ՍՄԿԿ-ն հանդես է գալիս ընդդեմ կոմունիստական շարժման մեջ հեգեմոնիզմի ամեն տեսակ արտահայտության և հանուն բոլոր կուսակցությունների միջև իսկապես ինտերնացիոնալիստական իրավահավասար հարաբերությունների։

ՍՄԿԿ XXIII համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման միասնության և համախմբվածության հարցերին։ Մեր կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս



և կտա եղբայրական կուսակցությունների հետ երկկողմանի և բազմակողմանի կապերի ու կոնտակտների զարգացմանը։ Միայն վերջին մեկուկես տարվա ընթացքում ՍՄԿԿ ներկայացուցիչները հանդիպումներ ու զրույցներ են ունեցել եղբայրական 60 կուսակցությունների 200 պատվիրակությունների հետ։ ՍՄԿԿ-ն կապ է պաշտպանում և այն կուսակցությունների հետ, որոնց ղեկավարության գրաված դիրքերը տարբերվում են կոմունիստական շարժման ընդհանուր գլխավոր գծից, այն նպատակով, որպեսզի մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա, այդ կուսակցությունների հետ հասնի հարաբերությունների նորմալացման։

ՍՄԿԿ XXIII համագումարում ելույթ ունեցող եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչները բարձր գնահատեցին ՍՄԿԿ պայքարը հանուն միջազգային կոմունիստական շարժման միասնականության ամրապնդման։

Անցյալ տարի կայացան Չեխոսլովակիայի, Մոնղոլիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Իտալիայի, Արևմտյան Բեռլինի, Կանադայի, Կիպրոսի, Կոլումբիայի, Ֆինլանդիայի, Կոստա-Ռիկայի, ԱՄՆ-ի կոմունիստական և բանվորական կուսակցությունների համագումարները։ 1967 թվականի հունվարի առաջին օրերին տեղի ունեցավ Ֆրանսիայի կոմկուսի XVIII համագումարը, իսկ ապրիլին՝ Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության VII համագումարը։ Այդ համագումարների նյութերում և փաստաթղթերում արտահայտվում է եղբայրական կուսակցությունների ամուր վճռականությունը՝ հասնել համաշխարհային կոմունիստական շարժման համախմբման։

1966 թվականի դեկտեմբերի 12—13-ին կայացած՝ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը լսեց և քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի «ՍՍՀՄ միջազգային քաղաքականության և կոմունիստական շարժման համախմբման համար ՍՄԿԿ-ի պայքարի մասին» զեկուցումը։ Կենտկոմի պլենումը կարևոր որոշումներ ընդունեց։ Հավատարիմ մնալով իր արտաքին քաղաքականության լենինյան կուրսին, մեր կուսակցությունը հատկապես ընդգծում է, որ արդի միջազգային իրադրության մեջ, ինչպես երբեք, կարևոր է ամրապնդել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի համախմբվածությունն ու հզորությունը, զարգացնել սոցիալիստական պետությունների քաղաքական ու տնտեսական համագործակցությունը, ամրապնդել բանվոր դասակարգի միջազգային համերաշխությունը, պաշտպանել գաղութային լծի ու նեոգաղութատիրության դեմ մարտնչող ժողովուրդներին, անշեղորեն վարել ազգային-ազատագրության ուժերի հետ դաշինքն ամրապնդելու կուրս։ Կենտկոմի պլենումը լիովին հավանություն տվեց Քաղբյուրոյի և սովետական կառավարության գծին ու պրակտիկ գործունեությանը ՍՄԿԿ-ի և Չինաստանի կոմունիստական կուսակցության, Սովետական Միության և Չինական Ժողովրդական Հանրապետության փոխհարաբերությունների բնագավառում։

Չինաստանի վերջին իրադարձությունները, Չինաստանի կոմկուսի XI պլենումի որոշումները վկայում են, որ Մաո Ցզե-դունի և նրա խմբի մեծապետական, հակասովետական կուրսը թևակոխել է նոր, վտանգավոր փուլ։

ՍՄԿԿ ԿԿ-ի պլենումը համամիտ է մարքսիստական-լենինյան եղբայրական կուսակցությունների այն կարծիքին, որ ներկայումս նպաստավոր պայմաններ են ստեղծվում կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների միջազգային նոր խորհրդակցություն հրավիրելու համար, որը պետք է լավ նախապատրաստվի կուսակցությունների փոխադարձ կոնսուլտացիաների ընթացքում։

Կոմունիստական և բանվորական կուսակցություններն իրենց գործունեության մեջ ո՛չ միայն հաշվի են առնում յուրաքանչյուր երկրի հեղափոխական շարժման կոնկրետ առանձնահատկությունները, այլև ղեկավարվում են հեղափոխական պայքարի ընդհանուր օրինաչափություններով: Ընդհանուր պայքարում նման համատեղ գործողությունները հատկապես անհրաժեշտ են ներկայումս, երբ ամերիկյան իմպերիալիզմը լրջորեն սրել է միջազգային իրադրությունը: Պենտագոնը լարվածության վտանգավոր օջախ է ստեղծել Հարավ-Արևելյան Ասիայում, ձգտելով պատերազմով խեղդել Վիետնամի, Լաոսի և մյուս երկրների ժողովուրդների ազատությունն ու անկախությունը:

Սովետական Միությունը բազմակողմանի օգնություն է ցույց տվել և կշարունակի ցույց տալ հերոսական Վիետնամի ժողովրդին: ՎԴՀ-ին առաջիկայում ևս հետզհետե աճող և բազմակողմանի օգնություն ցույց տալու իրենց հաստատ վճռականությունը հայտնեցին Վարշավայի պայմանագրի մասնակից բոլոր պետությունները: Եվ այսօր, երբ Վիետնամի հերոսական ժողովուրդը ծանր պայքար է մղում ագրեսորի դեմ, հատկապես կարևոր է սոցիալիստական բոլոր երկրների գործողությունների միասնականությունն ու համախմբվածությունը՝ ագրեսորին դիմագրավելու համար: Ցավոք, չինական ղեկավարներն այլ տեսակետի են հետևում: Նրանց հրաժարումը՝ հանուն Վիետնամի պաշտպանության համատեղ գործողություններից, նրանց կատաղի ելույթները՝ ագրեսիան ետ մղելու գործում Վիետնամին իսկապես մեծ և բազմակողմանի օգնություն ցույց տվող ուժերի դեմ, խստորեն դատապարտվում են կոմունիստների, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկանց կողմից: Հենց դրանով չինական ղեկավարները փաստորեն օգնում են ագրեսորին և ծանր պատասխանատվություն վերցնում իրենց վրա:

Աշխատավորների միջազգային համերաշխության վարգացումը, դրան խանգարող խոչընդոտների հաղթահարումը և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ամրապնդումը բանվոր դասակարգի բոլոր կազմակերպությունների, բոլոր իսկական հեղափոխականների պարտքն է: Ահա թե ինչու վճռականապես դատապարտվում է Չինաստանի կոմկուսի ղեկավարության այն գիծը, որն իր արտահայտությունը գտավ Չինաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի XI պլենումի մասին ընդունված կոմյունիկեում և հակասովետական վերջին պրովոկացիաներում: Մարքսիստական-լենինյան կուսակցությունները վրդովմունքով դատապարտում են ՉԿԿ ԿԿ-ի XI պլենումի որոշումների հակասովետական ուղղվածությունը և ՉԺՀ-ում տեղի ունեցող, այսպես կոչված, «կուլտուրական հեղափոխությունը»: Կոմունիստները վճռականապես հերքում են չինական պառակտիչների հերյուրանքները ՍՄԿԿ հասցեին:

Եղբայրական կուսակցությունների փաստաթղթերում մատնացույց է արվում և այն, որ շնորհիվ Չինաստանում այժմ կիրառվող «պրոլետարական կուլտուրական հեղափոխության», որը ո՛չ պրոլետարական է, ո՛չ կուլտուրական և ո՛չ էլ հեղափոխական, ՉԿԿ ղեկավարությունը ջանում է կուսակցության և երկրի աշխատավորության ուշադրությունը շեղել նրա ինչպես արտաքին, այնպես էլ ներքին քաղաքականության «գլխավոր գծի» մեկը մյուսին հաջորդող ձախողումներից, համաշխարհային ազատագրական շարժման մեջ ՉԿԿ-ի ավելի ու ավելի աճող մեկուսացումից: Եղբայրական կուսակցությունները մտահոգված են Չինաստանում սոցիալիզմի հետագա ճակատագրով:

Միջազգային կոմունիստական և բանվորական շարժման միասնության համար կարևոր նշանակություն ունեցավ Եվրոպայի անվտանգության հարցերին նվիրված մայր ցամաքի կոմունիստական և բանվորական 25 կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ 1967 թ. ապրիլի 24-ից 26-ը Չեխոսլովակիայի Կառլովի Վարի քաղաքում: Կոնֆերանսը միաձայն ընդունեց կոմունիստական ու բանվորական կուսակցությունների դիմում վիետնամական ժողովրդի պայքարի կապակցությամբ, որի մեջ կոչ է արվում Եվրոպայի բոլոր աշխատավորներին, բոլոր ժողովուրդներին, քաղաքական կուսակցություններին, առանձնապես, սոցիալ-դեմոկրատական, սոցիալիստական ու կաթոլիկական կուսակցություններին, բոլոր հավատացյալներին, բոլոր նրանց, ում համար թանկ է խաղաղությունն ու ազատությունը, ավելի լայնորեն ծավալել պայքարը՝ հերոսական Վիետնամի դեմ ամերիկյան ագրեսիան անվերապահորեն դադարեցնելու համար: Ընդունվեց նաև հատուկ հայտարարություն Հունաստանում վերջերս տեղի ունեցած զինվորական հեղաշրջման առթիվ, որով կոչ արվեց անհապաղ դադարեցնել ֆաշիստական տեռորը և դեմոկրատների հալածանքները, պահանջվեց ազատել բոլոր ձերբակալվածներին և անհապաղ վերականգնել հույն ժողովրդի սահմանադրական և դեմոկրատական ազատությունները:

Կոնֆերանսի մասնակիցները պատասխանատվության խոր զգացումով քննարկեցին Եվրոպայի անվտանգության հարցերը: ՍՄԿԿ-ն խաղաղության և սոցիալական առաջադիմության պայքարը միշտ էլ համարել է բոլոր կոմունիստական կուսակցությունների ինտերնացիոնալ գործը: Արևմտաեվրոպական երկրների մարքս-լենինյան կուսակցություններն անցել են բանվոր դասակարգի գործի համար մղվող պայքարի մեծ ու փառավոր ուղի: Մասսաների մեջ կատարվող աշխատանքի այն հսկայական փորձը, որ ձեռք են բերել կոմունիստները միասնական ժողովրդական ճակատ ստեղծելու, ֆաշիզմին և հիտլերյան ագրեսիային դիմադրելու շարժումներում երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին և այն պայքարում, որ նրանք մղում են ներկայումս, ամբողջ աշխարհի կոմունիստների արժեքավոր սեփականությունն է: «Հենվելով այդ փորձի վրա,— նշեց կոնֆերանսում արտասանած իր ճառում ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— մենք՝ իշխանության գլուխ կանգնած կոմունիստներս և սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար պայքարող մեր ընկերները, հավաքվելով այս կոնֆերանսում, կարող ենք համարձակորեն ասել, որ մենք ի վիճակի ենք լուծելու վիթխարի, բայց միանգամայն ռեալ խնդիրը՝ ժողովրդական լայն մասսաներին պայքարի համախմբել հանուն խաղաղության գործի, կաշկանդել ռեակցիայի և պատերազմի ուժերը»:

Կառլովի Վարիի կոնֆերանսի մասնակից Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցություններն միաձայն ընդունեցին հատուկ հայտարարություն՝ «Հանուն Եվրոպայի խաղաղության և անվտանգության», որը խորհրդակցության հիմնական փաստաթուղթն է հանդիսանում: Կոնֆերանսի մասնակիցները նշեցին իրենց խոր համոզվածությունը, որ այդ հանդիպումը, անշուշտ, կնպաստի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների եղբայրական կապերի ամրապնդմանը, Եվրոպայի և ամբողջ աշխարհի խաղաղասիրական ու հակաիմպերիալիստական ուժերի համախմբմանը:

Հավատարիմ լենինիզմի գաղափարներին մեր կուսակցությունը հետևողականորեն պայքարում է խաղաղության, ժողովուրդների ազատության և բարգավաճման, սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության և համախմբվածության համար:

# ՄԱՐԴԿԱՆՑ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԱՆՄԻՋԱԿԱՆ ԱԶԴԱԿՆԵՐԸ

Բ. ԱՆԱՆԻԿՅԱՆ

«...Մարդկությունը միշտ առաջադրում է իրեն լոկ այնպիսի խնդիրներ, որ ինքը կարող է լուծել, որովհետև, մոտիկից քննելով, միշտ պարզվում է, որ հենց բուն խնդիրը ծագում է միայն այն ժամանակ, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն գոյություն ունեն, կամ, գոնե, գտնվում են լինելության պրոցեսում»:

ՄԱՐՔՍ

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը զարգացման արդի էտապում առաջադրել է հումանիստական վեհ նպատակ՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ մեկտեղ բազմակողմանիորեն ու ներդաշնակ զարգացնել աշխատանքի մարդուն, ձևավորել նոր հասարակարգի անհատին: Կուսակցությունն այդ պրոբլեմը դիտում է որպես օբյեկտիվ անհրաժեշտություն, սովետական մարդկանց ներկա սերնդի պրակտիկ խնդիր:

Մարդու դաստիարակության հարցը հարյուրամյակներ շարունակ հուզել է շատ ու շատ մեծագույն մտածողների: Սակայն, չնայած առանձին հանճարեղ կռահումներին, չհասունացած կապիտալիստական հասարակական հարաբերությունները անխուսափելիորեն ծնում էին նաև չհասունացած թեորիաներ և նոր մարդու դաստիարակության ուղղությամբ նախամարքսյան մտածողների ինչպես տեսական, այնպես էլ պրակտիկ փորձերը վերջին հաշվով հաջողություն չունեցան:

Դաստիարակության նախամարքսյան որոշ տեսություններ ելնում էին այն ճշմարիտ դրույթից, որ մարդը հանգամանքների արդյունք է, և, հետևաբար, մարդկանց վերափոխումը պահանջում է հանգամանքների փոփոխություն: Մարդու դաստիարակության համար ամենից առաջ անհրաժեշտ է մարդկային դարձնել բուն հանգամանքները: Սակայն, հանգամանքները «մարդկայնացնելը» հենց իրենց՝ մարդկանց գործն է: Ուրեմն, մարդկային հանգամանքներ ստեղծելու համար հարկավոր է սկզբից մարդուն դարձնել իսկական մարդ: Այսպիսով ստացվեց անլուծելի մի հանգույց, որին բախվեցին ինչպես ֆրանսիական մատերիալիստները, այնպես էլ ուտոպիստ սոցիալիստները:

Հասարակական այդ բարդ ու կնճռոտ պրոբլեմի լուծման գործում նրանց



անհաջողությունը պատահական չէր: Նրանք չկարողացան հասկանալ, թե ինչպես համատեղել օբյեկտիվ հանգամանքների (որոնցում ապրում են մարդիկ) փոփոխությունը, բուն մարդկանց փոփոխության հետ:

Գորդյան այդ հանգույցը լուծեց Մարքսը: «Հանգամանքների և մարդկային գործունեության փոփոխության զուգադիպությունը,—գրում էր նա,—կարող է ըմբռնվել և ռացիոնալորեն հասկացվել միայն որպես հեղափոխական պրակտիկա» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 518): Մարքսի մեծագույն ծառայությունն այն է, որ նա հաղթահարեց նախկին տեսությունների դուալիզմը, որոնք նախօրոք անջատում և իբրև ինքնուրույն էություններ էին դիտում հանգամանքներն ու մարդկանց, չկարողանալով տեսնել դրանց դիալեկտիկական կապն ու միասնությունը: Նա ցույց տվեց, որ իր պրակտիկ գործունեությամբ ներգործելով հանգամանքների վրա ու փոփոխելով դրանք, մարդը դրանով իսկ անընդհատ փոփոխում է և իր սեփական բնությունը: Առանց այդպիսի գործունեության նա չէր կարող զարգացնել իր բնության մեջ նիրհող կարողություններն ու ուժերը և իր անհատականության զարգացման նպատակով այդ ուժերի խաղը ենթարկել իր սեփական իշխանությանը: Անտեսելով պրոցեսի օբյեկտիվ ու սուբյեկտիվ կողմերի դիալեկտիկական միասնությունը, նախորդ ուսմունքները անխուսափելիորեն հասարակությունը բաժանում էին երկու մասի, ըստ որում դաստիարակողի ֆունկցիան վերագրում էին ինչ-որ ընտրյալ վերնախավի, մոռանալով, որ դաստիարակողին հենց իրեն պետք է դաստիարակել:

Հակառակ իդեալիստական տեսությունների, Մարքսը ելնում էր այն բանից, որ պատմությունը պետք է դիտել որպես մարդու ինքնածնման պրոցես, որն իրագործվում է նրա կողմից պրակտիկ գործունեության, առարկայական աշխարհի վերափոխման միջոցով: Դեռևս իր վաղ շրջանի աշխատություններում նա գրում էր, որ «Ամբողջ, այսպես կոչված, համաշխարհային պատմությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ մարդկային աշխատանքի միջոցով մարդու լինելության պրոցես» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, էջ 598): Մարքսը դաստիարակությունը դիտում էր ոչ թե մարդու մոտ այս կամ այն հատկանիշի մեխանիկական պատվաստում՝ դրսից կատարված ներգործության շնորհիվ, այլ մարդու ինքնավերափոխման պրոցես, որը տեղի է ունենում նրա սեփական պրակտիկ և, ամենից առաջ, առարկայական գործունեության ընթացքում: Նա գիտականորեն ապացուցեց, որ հեղափոխական պրակտիկան մարդկանց կողմից ինչպես շրջապատող աշխարհը, այնպես էլ հենց իրենց վերափոխելու պրոցես է:

Պրոբլեմի հետազոտության ելակետային մոմենտներից մեկն էլ այն է, որ հանգամանքների և մարդկանց փոփոխության զուգադիպությունը չի նշանակում այդ պրոցեսի երկու՝ օբյեկտիվ և սուբյեկտիվ կողմերի լիակատար նույնություն: Ընդհակառակը, դրանց դիալեկտիկական միասնությունը իրենից ներկայացնում է հակասական պրոցես, որի տարբեր կողմերը զարգանում են անհավասարաչափ: Կյանքը ցույց է տվել, որ պրոցեսի սուբյեկտիվ կողմը ետ է մնում օբյեկտիվից, որ ընդհանրապես մարդկանց գիտակցության վերափոխումը ավելի տևական ու դժվարին գործ է, քան տնտեսական հարաբերությունների փոփոխումը:

Մեր երկրում կոմունիստական շինարարության պրակտիկան լիովին հաստատեց, որ մարդկանց գիտակցության վերափոխման և նոր մարդու ձևավորման գործում, տնտեսական-հասարակական հարաբերությունների զարգաց-

ման հետ մեկտեղ, վճռական դեր է խաղում անձնական ու հասարակական շահերի ճիշտ զուգակցումը, որն իր հերթին հետադարձ վիթխարի ներգործություն է ունենում հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։

## Ի՞ՆՉ ԲԱՆ ԵՆ ՇԱՀԵՐԸ

Հասարակության կյանքում շահերի դերի գիտակցումը պատմության մատերիալիստական ըմբռնման ուղղությամբ հասարակական մտքի առաջին քայլերից մեկն էր։ Այդ պրոբլեմը շատ է զբաղեցրել հատկապես XVIII դարի ֆրանսիական մատերիալիստներին, որոնք շահեր հասկացողությունը դնում էին բարոյականության, ամբողջությամբ վերցրած մարդկանց սոցիալական վարքագծի տեսությունների հիմքում։ Շահերի վերաբերյալ ֆրանսիական մատերիալիստների տեսությունը առաջին լուրջ փորձերից էր հասարակության մեջ մարդկանց վարքագիծը մատերիալիստորեն բացատրելու ուղղությամբ։ Ըստ այդ տեսության, որի ելակետն անհատն է, մարդը դիտվում է որպես յուրատեսակ «սոցիալական ատոմ», որը շարժման մեջ է դրվում շահերով։

Սակայն ֆրանսիական մատերիալիստների աշխարհայացքի պատմական սահմանափակությունը նրանց հնարավորություն չտվեց ստեղծելու մարդկանց վարքագծի ռացիոնալ տեսություն։ Նրանց թուլությունը դրսևորվեց հատկապես այն բանում, որ նրանք չկարողացան ճիշտ մեկնաբանել հասարակական ու անձնական շահերի փոխհարաբերությունը և չշահերի ծագման օբյեկտիվ աղբյուրն ու դրանց էությունը։

Միանգամայն ճիշտ էին ֆրանսիական մատերիալիստները, երբ մարդկանց գործողությունների հիմքում դնում էին շահերը։ Սակայն չի կարելի համաձայնվել նրանց հետ, երբ մարդկանց բոլոր գործողությունները բացատրում էին միայն նրանց անձնական շահերով։ Այդ մտածողների կարծիքով, երբ մարդը կատարում է որևէ անձնազոհ արարք, ապա այն, վերջին հաշվով, պայմանավորված է նրա անձնական օգուտով։ Ստացվում է, որ անձնազոհության հիմքում ընկած է միայն ու միայն էգոիզմը։ Նման ելակետը երբեք էլ հնարավորություն չի տա բազմակողմանիորեն ու ճիշտ մեկնաբանել մարդկանց արարքների դրդապատճառները, որովհետև մարդն ամենից առաջ սոցիալական էակ է, հասարակական բոլոր հարաբերությունների ամբողջությունը։ Մարդու նույնիսկ ամենապարզ, ամենահասարակ գործունեությունն անգամ ենթադրում է որոշակի հարաբերություններ մյուս մարդկանց հետ, հարաբերություններ, որոնք միջնորդավորվում են սոցիալական բարդ ընդհանրություններով։

Կ. Մարքսը հանճարեղ խորաթափանցությամբ նկատեց, որ մարդկանց անձնական շահերը ինչ-որ մեկընդմիշտ տրված, անփոփոխ, քարացած բան չեն։ Որոշակի, մարդկանց կամքից անկախ արտադրության եղանակի սահմաններում դրանք միշտ էլ զարգանում, վերաճում են դասակարգային շահերի և ձեռք բերում առավել ընդհանուր շահերի բնույթ։ Այդ պատճառով էլ,—գրում էր նա,—«կոմունիստներն առաջ չեն քաշում ոչ էգոիզմը ընդդեմ անձնազոհության, ոչ էլ անձնազոհությունը ընդդեմ էգոիզմի... Նրանք մարդկանց բարոյական պահանջ չեն ներկայացնում՝ սիրեցեք միմյանց, մի լինեք էգոիստներ և այլն. Նրանք քաջ գիտեն, որ ինչպես էգոիզմը, այնպես էլ անձնազոհությունը որոշակի հանգամանքներում անհատի ինքնահաստատման



անհրաժեշտ ձևերն են» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 3, էջ 236)։

Հասարակական կյանքի բոլոր բնագավառներում մարդկանց գործունեության շարժառիթը նրանց շահերն են։ Սակայն հասարակական կյանքն ու նրա սոցիալական կառուցվածքը խիստ բարդ են և գործը չպետք է պատկերացնել այնպես, թե այստեղ գործում են միայն անձնական շահերը։ Ցանկացած քիչ թե շատ զարգացած հասարակարգում կան ամենաբազմապիսի շահեր՝ անձնական, խմբային, դասակարգային, հասարակական, ազգային և այլն։ Յուրաքանչյուր անհատ, որն ունի իր անձնական շահերը, մարդկային այդպիսի ընդհանրությունների անդամ է, սակայն այդ ընդհանրությունները անհատների պարզ գումար չեն։ Ուրեմն, ինչպես որ հասարակությունը անհատների պարզ գումար չէ, այնպես էլ հասարակական շահերը անձնական շահերի պարզ գումար չեն։ Դասակարգի, ազգի շահերը անհատի համար հանդես են գալիս միաժամանակ որպես սեփական շահեր։ Սակայն ի տարբերություն անմիջական անձնական շահերից, հասարակական շահերը, որոնք անձնական շահերի համեմատությամբ շատ ավելի բարձր են ու վեհ, մարդկանց կողմից ընկալվում են ոչ թե անմիջականորեն, այլ այս կամ այն գաղափարի միջոցով, լինի այն դասակարգային համերաշխության գաղափար, թե դասակարգի, ազգի, հասարակության առջև իր բարոյական պարտքի գիտակցում։ Ոչ միայն անձնական, այլ ամենից առաջ այդպիսի վեհ շահերը, որոնք վեհ են հենց այն պատճառով, որ դրանք բազում անհատների բարձր նպատակներ հետապնդող շահերի դիալեկտիկական միասնությունն են, անհատից կարող են պահանջել անձնազոհ, հերոսական արարքներ, որոնք երևան են գալիս արդեն գաղափարական, բարոյական ազդակների ներգործությամբ։

Սակայն պետք է ի նկատի ունենալ, որ մարդկանց գործունեության գաղափարական, բարոյական ազդակները նույնպես կտրված չեն շահերից, դրանք ևս արտահայտում են շահերը, բայց միայն ոչ թե անձնական, այլ հասարակական շահերը։ Ահա թե ինչու դեռևս վաղ շրջանում Մարքսը ընդունելով, որ «Այն ամենը, ինչի համար մարդը պայքարում է, կապված են նրա շահերի հետ», միաժամանակ վճռականորեն հանդես եկավ այն կարծիքի դեմ, թե իբր գոյություն ունեն միայն «մանր» շահեր, միայն ստոր ինքնասիրության շահեր, (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. I, էջ 72)։ Մարքսի տեսությունը ելնում է այն բանից, որ անձնական շահերի հետ մեկտեղ գոյություն ունեն նաև հանրային շահեր, որոնց լիակատար ապահովումով միայն կարելի է բավարարել բոլոր անհատների անձնական պահանջմունքները։

Վերոհիշյալ ամբողջից պարզ է, որ խելամիտ ու գիտական չէ անձնական ու հասարակական շահերի մեխանիկական անջատումը, դրանց հակադրումը, որովհետև կյանքում, օբյեկտիվ իրականության մեջ դրանք չեն դրսևորվում որպես բացարձակ, միանգամայն անհամատեղելի հակադրություններ։ Հասարակության կամ դասակարգի համար մարդկանց արարքները դրական կամ բացասական են, նայած թե դրանք որքանով են համապատասխանում տվյալ ընդհանրության շահերին։ Իսկ սա այլ բան չէ, եթե ոչ յուրատեսակ սոցիալական էգոիզմ։ Եվ երբ անհատի գործողությունները համընկնում են հասարակության շահերին, ապա պետք է ընդունել, որ նրա այդպիսի անձնական վարմունքը վերջին հաշվով զարգանում է հենց այդ սոցիալական էգոիզմի հիմքի վրա, այսինքն անձնականն ու հասարականը գործում են մեկ ուղղությամբ։

Այսպիսով մարքսիստական տեսությունը հնարավորություն է տալիս գիտականորեն բացատրել մարդկանց սոցիալական գործողությունները, որքան էլ դրանք խճճված, բազմակերպ ու հակասական լինեն։ Մարդկանց ինչպես ամեն մի ստոր արարք, այնպես էլ նրանց ամեն մի վեհ գործողություն վերջին հաշվով պայմանավորված են նրանց կյանքի կոնկրետ-պատմական պայմաններով, հասարակության մեջ նրանց դրությամբ ու նրանց հոգեկան և նյութական շահագրգռություններով։

Փիլիսոփաներին ու սոցիոլոգներին քիչ չի մտահոգել նաև շահերի աղբյուրի և դրանց էության հարցը։ Այստեղ ամենից առաջ պետք է ի նկատի ունենալ, որ ռեալ շահերը և դրանց վերաբերյալ պատկերացումները նույնը չեն, դրանք կարող են նույնիսկ չհամընկնել միմյանց, մի բան, որը չկարողացան տեսնել մինչմարքսյան մտածողները։

Մարքսիզմն ուսուցանում է, որ շահերը չի կարելի դիտել միայն որպես գիտակցական փաստ, որ դրանք գոյություն ունեն օբյեկտիվորեն, մարդկանց կամքից ու ցանկությունից անկախ և անընդհատ զարգանում ու փոփոխվում են։ Շահերը հասարակության մեջ, հասարակական արտադրության սիստեմում մարդու դրության և դրանով պայմանավորված նրա պահանջմունքների անմիջական արտահայտությունն են։ Մարդկանց պահանջմունքների բազմապիսությունը պայմանավորում է և նրանց շահերի բազմատեսակությունը, որոնք փոփոխվում են պահանջմունքների փոփոխման համեմատ։ Ֆ. Էնգելսը նշում էր, որ մարդկանց գործողությունները պայմանավորված են նրանց պահանջմունքներով։ Բավարարված պահանջմունքները կյանքի են կոչում նոր արտադրություն, որն իր հերթին զարկ է տալիս նոր պահանջմունքների զարգացմանը, իսկ վերջիններս դրսևորվում են նոր շահերի ձևով։

Շահերի օբյեկտիվությունը հաստատվում է թեկուզ և այն փաստով, որ դրանք չեն գիտակցվում իրենց երևան գալուց անմիջապես հետո։ Պրոլետարիատը, օրինակ, իր դասակարգային պայքարի վաղ էտապում չէր գիտակցում իր արմատական, համադասակարգային շահերը։ Սակայն բոլոր դեպքերում այդ շահերը գոյություն ունեն որպես օբյեկտիվ ռեալականություն։ Դասակարգի կողմից իր արմատական շահերի գիտակցումը երկարատև պատմական պրոցեսի արդասիք է։

Այս առնչությամբ ծագում է շատ կարևոր մի հարց ևս. եթե ռեալ շահերը չեն գիտակցվում միանգամից, ապա այդ դեպքում ինչո՞վ են պայմանավորված դասակարգի գործունեությունն ու պայքարը կամ, կարող ե՞ն չգիտակցված շահերը դառնալ գործողությունների ազդակ։ Ֆ. Էնգելսն իր «Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը» ու մի շարք այլ աշխատություններում որոշակիորեն ընդգծում էր, որ մարդու գործունեության մղող բոլոր ազդակները պետք է անխուսափելիորեն անցնեն նրա գլխի միջով, որպեսզի վերածվեն նրա կամքի մոտիվների։ Գործունեության ազդակները այլ բան չեն, եթե ոչ մարդկանց շահերի արտացոլումը նրանց գիտակցության մեջ։ Չգիտակցված շահերն, իհարկե, չեն կարող ծնել որևէ ազդակ։ Այս ամենի հետ մեկտեղ չպետք է մոռանալ, սակայն, որ շահը կարող է ոչ միայն արտացոլվել մարդու գիտակցության մեջ գաղափարի ձևով, որն ավելի խորն է բացահայտում նրա բովանդակությունը, այլև կարող է իր դրսևորումը գտնել մարդկանց տարերային, բնազդական գործողությունների մեջ։



Մարդկանց գիտակցության մեջ շահերի արտացոլման ընթացքը կախված է նաև շահերի բնույթը, որովհետև մարդկանց շահերը խիստ բազմազան են. կան արմատական ու ոչ արմատական, երկարատև ու ժամանակավոր, հեռավոր ու մերձավոր շահեր, որոնք դրսևորվում են նույնպես տարբեր բնագավառներում՝ տնտեսական, քաղաքական, կուլտուրական։ Մարդիկ գիտակցում են ամենից առաջ իրենց մերձավոր, և դրանց մեջ էլ ամենից առաջ նյութական շահերը, որոնց հետ նրանք շփվում են իրենց ամենօրյա կյանքում։ Այդ շահերը կարող են գիտակցվել առօրյա, սովորական մտածողության շրջանակներում, մինչդեռ արմատական, հեռավոր շահերի իմացությունը պահանջում է տեսական մտքի որոշակի ճիգ և անհնարին է առանց գիտական ընդհանրացումների։ Դասակարգը կարող է պայքարի դուրս գալ իր զարգացման առաջին շրջանում, դեռևս լիովին չգիտակցելով հասարակության մեջ իր դրությունը, իր շահերի հակադրությունը մյուս դասակարգերի շահերին։ Այդպիսի պայքարը հարուցվում է մերձավոր և ամենից առաջ առօրյա նյութական շահերի ընկալմամբ, որի հետևանքով էլ շարժումը մնում է տարերային։ Ժամանակի ընթացքում, հենց դասակարգային կռվի փորձից իմաստնացած, բանվոր դասակարգը գիտակցում է իր արմատական, համադասակարգային շահերը, որի շնորհիվ էլ տարերային պայքարը փոխարինվում է գիտակցական պայքարով, տնտեսական պայքարը վերաճում է քաղաքականի, որի նպատակը առավել արմատական շահերի պաշտպանությունն է։

Կապերով ու հարաբերություններով հարուստ հասարակական բարդ կյանքն իրենից ներկայացնում է բազմաթիվ ու բազմաբնույթ շահերի մի խառնարան, որտեղ դրանք խաչաձևվում են, հաճախ էլ հակադրվում միմյանց։ Շահերի աղբյուրի և դրանց էության մատերիալիստական մեկնաբանումը հնարավորություն տվեց գիտականորեն որոշելու տարբեր կարգի շահերի և հատկապես իրենց սուբյեկտի ու պատկանելիությամբ տարբերվող շահերի փոխհարաբերությունները։ Պատմության մատերիալիստական ըմբռնումը միաժամանակ հասարակության առաջավոր ուժերին ցույց տվեց, թե որ շահերից պետք է ելնել, ինչպես պրակտիկորեն ներգործել դրանց վրա, ինչպես հաշվի առնել շահերը և մեկը ենթարկել մյուսին՝ մասնակին՝ արմատականին, անձնականը՝ հասարակականին։

## ՌԵԱԼ, ՃՇՄԱՐԻՏ ՈՒՂԻՆ

Գոյություն ունեցող շահերի մեջ վճռական նշանակություն ունեն տնտեսական, նյութական շահերը։ Դրանք կազմավորվում են տվյալ հասարակարգում գոյություն ունեցող արտադրական, բարիքների փոխանակության ու բաշխման հարաբերությունների, վերջին հաշվով մարդկանց նյութական պահանջմունքների հիմքի վրա և, հետևաբար, փոփոխվում են այդ հարաբերությունների ու պահանջմունքների փոփոխության հետ մեկտեղ։ Մարդկանց նյութական շահերը, անձնական ու հասարակական շահերի փոխհարաբերությունը անմիջականորեն կախված են տիրապետող արտադրական հարաբերությունների բնույթից։

Արտադրության միջոցների մասնավոր սեփականության լիկվիդացման հետ մեկտեղ անցյալի գիրկն են անցնում նաև նրանց ծնած շահերը։ Արտադրության միջոցների հանրային սեփականության հիմքի վրա կազմավոր-

վում են նոր շահեր, որոնք ոչ միայն չեն բաժանում, այլ, ընդհակառակը, միավորում են հասարակության բոլոր անդամներին, որովհետև վերջիններս միատեսակ դրության մեջ են դրված արտադրության միջոցների նկատմամբ։

Մարդկանց նյութական շահերի մեջ գլխավորը հասարակական նյութական շահն է, որը հասարակության անդամներին կապակցող ուժ է և հիմնականում ընդհանուր է սոցիալական բոլոր խմբերի՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի համար, հասարակության բոլոր անդամների համար։ Ահա թե ինչու սոցիալիզմի պայմաններում մարդկանց նյութական շահագրգռվածությունն այն գլխավոր մայրուղիներից մեկն է, որ ապահովում է ինչպես ամբողջ հասարակության, այնպես էլ յուրաքանչյուր անհատի բարեկեցությունը։

Հասարակական նյութական շահագրգռվածության գաղափարական արտահայտությունը աշխատանքի բարոյական ազդակներն են։ Սրանք խիստ բազմազան են և այնպես, ինչպես նյութական շահագրգռվածությունը, սրանք նույնպես բաժանվում են անձնականի ու հասարակականի, ըստ որում գլխավորը հասարակական ազդակներն են։ Աշխատանքի բարոյական ազդակներն, այդ թվում և անձնական, այլ բան չեն, եթե ոչ հասարակական շահերի գիտակցված արտահայտություն։

Հասարակական նյութական շահագրգռվածությունը, որ ընկած է աշխատանքի բարոյական ազդակների հիմքում, կմնա նաև կոմունիզմի ժամանակ, երբ աշխատանքը կվերածվի առաջին կենսական պահանջմունքի։ Կոմունիզմի բարձրագույն փուլում, ինչպես և սոցիալիզմի ժամանակ, յուրաքանչյուր առանձին աշխատավոր շահագրգռված կլինի իր աշխատանքի հասարակական արդյունքների նկատմամբ, քանի որ հասարակական արտադրությանը նրա մասնակցությունից է կախված ամբողջ հասարակության բարեկեցությունը, հետևաբար և, իր անձնական բարեկեցությունը։ Սակայն, ի տարբերություն սոցիալիզմի, կոմունիզմի բարձրագույն փուլում հասարակական շահագրգռվածությունը մարդկանց աշխատանքի կմղի անմիջականորեն և ոչ թե նրանց անհատական աշխատանքի վճարման մեխանիզմի միջոցով, այսինքն իր ուժը կկորցնի մարդկանց անձնական նյութական շահագրգռվածությունը, ինչպես այդ, մեր կարծիքով, ճիշտ կերպով ընդգծում են մի շարք մտածողներ։

Իր աշխատանքի արդյունքի նկատմամբ առանձին աշխատողի նյութական շահագրգռվածության անհետացումը կոմունիզմի ժամանակ, սակայն, չի նշանակի ընդհանրապես նյութական շահագրգռվածության վերացում, ինչպես այդ պատկերացնում են մի շարք փիլիսոփաներ ու տնտեսագետներ։ Մարդիկ իրենց արտադրությունը չեն զարգացրել և չեն զարգացնի ի սեր միայն բարոյական մղումների. Նրանց միշտ խթանել և այսուհետև էլ կխթանեն ամենից առաջ նյութական շահերը։

Սոցիալիզմի պայմաններում շահերը կազմավորվում են սեփականության ձևերի, արտադրական հարաբերությունների բոլոր կողմերի, բաշխման եղանակի անմիջական ներգործությամբ։ Եվ քանի որ նոր հասարակության հիմքում ընկած է արտադրության միջոցների հանրային սեփականությունը, ապա հասարակության անդամների տնտեսական շահերը հիմնականում համընկնում են։ Սակայն մարդկանց արմատական շահերի ընդհանրությունը երբեք էլ չի բացառում նրանց առանձնահատուկ շահերի վիթխարի բազմազանությունը։ Մարդն ապրում է հասարակության մեջ և այնքանով, որքանով յուրաքանչյուր անհատ սոցիալական բազմապիսի կապերով կապված է մյուս



մարդկանց, կոլեկտիվի, ամբողջությամբ վերցրած հասարակության հետ, այդքանով էլ նա ունի բազմապիսի շահեր։ Այսպես, կոլտնտեսականն ունի անձնական շահեր, կապված իր տնամերձ տնտեսության հետ, բայց նա ապրում է նաև կոլտնտեսության ընդհանուր շահերով, կոլտնտեսային գյուղացիության շահերով, իր հանրապետության, իր շրջանի, գյուղի և բազմաթիվ այլ շահերով։ Այդ շահերը խաչաձևվում են տարբեր ուղղություններով և միշտ չէ, որ համընկնում են միմյանց։ Այդ հիմքի վրա երբեմն ծագում են լուրջ հակասություններ, որոնք հասարակությունը պետք է հաշվի առնի, եթե չի ցանկանում բախվել անցանկալի հետևանքների հետ։

Մարդկանց տարբեր ընդհանրությունների ու միավորումների գերատեսչական շահերի առկայությունը կարող է խաղալ երկակի դեր՝ խթանել կամ արգելակել հասարակության զարգացումը։ Դրանց այդպիսի դերը կախված է հիմնականում այն բանից, թե ինչպես են զուգակցվում այդ բազմապիսի շահերը։ Այսպես, սոցիալիստական ամեն մի ձեռնարկության առանձնահատուկ շահերը հիմնականում խթանող դեր են կատարում էկոնոմիկայի զարգացման գործում, որովհետև դրանք պահանջում են եղած ռեսուրսների ռացիոնալ օգտագործում, աշխատանքի էֆեկտիվության բարձրացում, որը համապատասխանում է ամբողջ հասարակության շահերին։ Դրանք միաժամանակ հիմնականում համապատասխանում են նաև կոլեկտիվի, նրա յուրաքանչյուր անդամի շահերին, որովհետև նրանց բարեկեցությունը կախված է ձեռնարկության աշխատանքի արդյունքից։

Սակայն ձեռնարկության առանձնահատուկ շահերը որոշ դեպքերում կարող են և բացասական դեր խաղալ, եթե դրանք հակասում են ամբողջ ժողովրդական տնտեսության շահերին։ Այսպես, ոչ վաղ անցյալում մեզ մոտ ձեռնարկությունների աշխատանքը գնահատվում էր միայն համախառն արտադրանքով, որի պատճառով առանձին ձեռնարկություններ, ելնելով միայն իրենց շահերից, տալիս էին թանկ, բայց պահանջարկ չունեցող արտադրանք, իսկ երբեմն էլ ձգտելով համախառն արտադրանքի պլանը կատարել քանակի հաշվին, անտեսում էին որակը։ Եթե դրան ավելացնենք նաև, որ ձեռնարկության ներսում նյութական շահագրգռվածության սկզբունքի խեղաթյուրման կամ անտեսման, բաշխման բնագավառում եղած թերությունների, աշխատանքի անբավարար կազմակերպման և բազմաթիվ այլ պատճառներով հակասություններ էին ծագում անհատի ու կոլեկտիվի շահերի միջև, ապա պատկերն ավելի պարզ կլինի։ Այս և այլ կարգի հակասությունները չէին կարող բացասաբար չանդրադառնալ ժողովրդական տնտեսության զարգացման վրա։ Ահա թե ինչու սոցիալիստական հասարակարգը ամեն կերպ աշխատում է ներդաշնակորեն զուգակցել անհատի, կոլեկտիվի, հասարակության շահերը այն հաշվով, որպեսզի այն, ինչ օգտակար է հասարակությանը, օգտակար լինի նաև ձեռնարկությանն ու անհատին։

Այստեղ մենք մոտեցանք սոցիալիստական հասարակարգում առկա բազմապիսի շահերի ներդաշնակ զուգակցման հարցին, որը վիթխարի դեր է կատարում ոչ միայն հասարակության արագ զարգացման գործում, այլև հանդիսանում է մարդկանց գիտակցության վերափոխման, նոր մարդու դաստիարակության ռեալ ուղի։

Ոչ վաղ անցյալում մեզ մոտ տարածված էր այն տեսակետը, թե բարոյական վեհ հատկանիշների դաստիարակումը նախատեսում է միայն անվերապահորեն ծառայել հասարակական պարտքին, ասել է, թե մարդկանց անձ-

նական շահերը չունեն վճռական դեր։ Ավելին, կար այն պատկերացումը, թե կոմունիզմը, որտեղ աշխատանքը կդառնա առաջին կենսական պահանջմունք, կարելի է կառուցել միայն աշխատանքի բարոյական ազդակների զարգացման շնորհիվ (տե՛ս օրինակ. «Организация и нормирование труда в промышленных предприятиях», М. 1962, էջ 155—158), որ անձնական նյութական շահագրգռվածությունը միայն խանգարում է այդ խնդրի հաջող լուծմանը։

Նման տեսակետները խորապես սխալ են, ապակողմնորոշում են մասսաներին, խեղաթյուրում են մեր սկզբունքային պատկերացումները հասարակական մեծ վերափոխումների վերաբերյալ։ Սոցիալիզմի պայմաններում ժխտել աշխատանքի արդյունքի նկատմամբ աշխատավորի անձնական նյութական շահագրգռվածությունը, նշանակում է չըմբռնել նոր հասարակարգի բուն էությունը, որի զարգացման օբյեկտիվ պայմանը աշխատանքի նյութական ու բարոյական ազդակների զուգակցումն է։

Մեր երկրում կոմունիստական շինարարության պրակտիկան ցույց տվեց, որ անձնական նյութական շահագրգռվածությունը հենց հանդիսացավ խթանման այն ձևը, որը հսկայական դեր խաղաց ժողովրդական ամենալայն մասսաներին նոր կյանքի շինարարությանը ներգրավելու գործում։ Կյանքը միաժամանակ անհերքելիորեն ապացուցեց, թե ինչպիսի հսկայական վնաս կարող է պատճառել և պատճառեց հասարակության զարգացմանը անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքի թերագնահատումը, դրա խեղաթյուրումը։

Դեռևս Հոկտեմբերյան հեղափոխության չորրորդ տարեդարձի նախօրյակին Վ. Ի. Լենինը հանճարեղ խորաթափանցությամբ նշում էր, որ հենվելով մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության վրա, մենք հույս ունեինք իրագործել տնտեսական մեծ խնդիրները՝ պրոլետարական պետության անմիջական հրամաններով կարգավորել պրոդուկտների պետական արտադրությունն ու բաշխումը կոմունիստական ձևով։ Սակայն, ընդգծում էր նա, կյանքը ցույց տվեց մեր սխալը։ Ելնելով պրակտիկայի դասերից Լենինը կուսակցությանն ուղղակի ցուցում տվեց, որ «ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա, աշխատեցեք կառուցել նախ ամուր կամուրջներ, որոնք մանր գյուղացիական երկրում պետական կապիտալիզմի վրայով տանում են դեպի սոցիալիզմ. այլ կերպ դուք չեք մոտենա կոմունիզմին, այլ կերպ դուք տասնյակ ու տասնյակ միլիոնավոր մարդկանց չեք մոտեցնի կոմունիզմին։ Այսպես ասաց մեզ կյանքը։ Այսպես ասաց մեզ հեղափոխության զարգացման օբյեկտիվ ընթացքը» (Երկեր, հ. 33, էջ 46—47)։

Ասված է պարզ, ասված է որոշակի։ Եվ իրոք, երբ խոսքը վերաբերում է ոչ թե անհատների, այլ միլիոնների դաստիարակությանը, ապա միանգամայն հասկանալի է, որ այդ պրոցեսը չի կարելի կառուցել անձնական շահերի անտեսման, դրանց բացառման բազայի վրա. այստեղ գլխավորը անձնական ու հասարակական շահերի միավորման ճիշտ չափը գտնելն է։ Իհարկե, այդ չափը գտնելը այնքան էլ դյուրին չէ, բայց դա է արտադրության հետագա բուռն զարգացման, լայն մասսաների դաստիարակության գրավականը։

Վերոհիշյալ ամբողջը, իհարկե, չի նշանակում, թե պետք է ընկնել մեկ այլ ծայրահեղության մեջ և դաստիարակության գործը կառուցել միայն անձնական շահերից ելնելով։ Սոցիալիստական հասարակարգի հենց բուն օբյեկտիվ հիմքը կանխորոշում է հասարակական ու անձնական շահերի անխզելի կապը. պետք է միայն գտնել չափը, ներդաշնակորեն զուգակցել այդ շահերը, որը և կդառնա նոր մարդու դաստիարակության հուսալի եղանակը։ Շահերի այդպիսի ներդաշնակ զուգակցման հնարավորությունը որոշված է սոցիալիստական հասարակարգի, նրա տնտեսական ու քաղաքական կարգի զարգացման պայմաններով։ Սակայն, այդ հնարավորությունը իրականություն է դառնում միայն այն դեպքում, երբ հաղթահարվում են կյանքի ծնած հակասությունները, իսկ անձնական, կոլեկտիվ ու հասարակական շահերի միջև այդպիսի հակասություններ երևան են գալիս և չպետք է տարվել այն պատրանքով, թե այդ շահերի զուգորդումն ինքնահոսի, տարերային պրոցես է։

Սոցիալիստական հասարակարգը վերացնելով մարդկանց շահերի միջև անհաշտելի կոնֆլիկտը, դեռևս չի հաղթահարում անհատի, կոլեկտիվի, հասարակության բազմապիսի շահերի միջև հակասության հնարավորությունը։ Այդ շահերը խաչաձևվում են տարբեր ուղղություններով և ոչ բոլոր դեպքերում են համընկնում միմյանց։

Այսպես, արտադրության և աշխատանքի վարձատրության ոչ ճիշտ կազմակերպման դեպքում անձնական նյութական շահագրգռվածությունը կարող է հասցնել անհատի և հասարակության շահերի բախման, նպաստել գռփողական տենդենցների զարգացմանը։ Այսպիսի դեպքերում անձնական նյութական շահագրգռվածությունը կոնֆլիկտի մեջ է մտնում բարոյական ազդակների հետ, որը, վերջին հաշվով, հասցնում է մարդկանց խղճի ու վարքագծի, խոսքի ու գործի աններդաշնակության։

Կամ, հայտնի է, որ մարդը դաստիարակվում է ոչ միայն գաղափարական ներգործության միջոցներով, այլև ամենօրյա պրակտիկ կյանքով, այդ թվում և արտադրության կազմակերպման, բաշխման, կենցաղային սպասարկման և բազմաթիվ այլ ձևերով։ Ահա թե ինչու խիստ կարևոր է, որպեսզի տնտեսական, սոցիալ-կենցաղային, քաղաքական ու իրավական բոլոր լծակներն իրենց գործունեության մեջ ոչ միայն չհակասեն միմյանց, այլև գործեն մեկ ուղղությամբ՝ անհատների մոտ կոլեկտիվիստական հոգեբանությունն ամրապնդելու ուղղությամբ։

Հասարակական ու անձնական շահերի ներդաշնակ զուգակցումը նոր մարդու ձևավորման կարևոր օբյեկտիվ պայմաններից մեկն է։ Սակայն անհատի դաստիարակության պրոցեսն ունի ոչ միայն օբյեկտիվ կողմ, այլև այդ գործում վճռական դեր է կատարում նաև սուբյեկտիվ գործոնը, և ամենից առաջ գաղափարական, դաստիարակչական աշխատանքը։

Մարդու համար անձնական շահը և, ամենից առաջ անձնական նյութական շահը անմիջականորեն տրված բան է, որը մարդիկ գիտակցում են իրենց ամենօրյա պրակտիկ կյանքում։ Սակայն այս մոմենտը չի բացառում այն հանգամանքը, որ մարդկանց մոտ պետք է դաստիարակել նաև իրենց անձնական շահերի ճիշտ ըմբռնում, որովհետև, ինչպես ցույց են տալիս փաստերը, դրանք ևս երբեմն ընկալվում են ոչ ճիշտ, խիստ նեղ ու սահմանափակ ձևով։ Դեռևս Պ. Հոլբախն էր նկատում, որ «...մարդիկ բնությամբ ոչ լավ են, ոչ հիմար։ Նրանք հավասարապես ընդունակ են դառնալ ինչպես լավ, այնպես էլ հիմար՝ կախված այն բանից... թե նրանց ինչում են սովորեցնում տեսնել շահը» (П. Гольбах, Система природы, Соцэкгиз, 1940, էջ 171)։

Բոլորովին այլ է դրությունը հասարակական շահերի հարցում, որովհետև դրանք հիմնականում գիտակցվում են գաղափարական-դաստիարակչական գործունեության շնորհիվ։ Դրանց գիտակցումը պահանջում է իրականության երևույթների որոշակի ընդհանրացում, դրանց էության իմացություն, էություն, որը երբեմն թաքնված է երևույթների ետևում։ Այդ պատճառով էլ գաղափարական աշխատանքի խնդիրն է լայնացնել մարդու մտահորիզոնը, իր անձնական, ընտանեկան, ձեռնարկության, անմիջական մերձավոր շահերի գիտակցումից նրան բարձրացնել ամբողջ հասարակության շահերի գիտակցման աստիճանը։

Վերոհիշյալը տրամաբանորեն հանգեցնում է այն հետևությանը, որ հասարակական շահերը անձնական շահերի համեմատությամբ առաջնային են, որը, սակայն, երբեք էլ չի նշանակում անձնական շահերի անտեսում կամ նսեմացում։ Հայտնի է, որ մարդու դրությունը և նրա շահերը միշտ էլ որոշվում են հասարակական պայմաններով։ Իսկ անհատը միայնակ չի կարող այդ պայմանները փոփոխել կամ կատարելագործել, այդ կարող են կատարել դասակարգը, ժողովրդական մասսաները։ Այդ պատճառով էլ մարքսիզմը պահանջում է մարդկանց դաստիարակել կոլեկտիվիզմի ոգով, հասարակական պայմանները փոփոխելու կամ կատարելագործելու համար ընդհանուր պայքարի անհրաժեշտության ըմբռնմամբ։ Իսկ կոլեկտիվը ոչ միայն չի բացառում կամ սահմանափակում անհատականությունը, այլ ընդհակառակը, հենց կոլեկտիվ աշխատանքը, կոմունիստորեն կազմակերպված արտադրողների ազատ ասոցիացիան են լիակատար ապահովում մարդու անհատականության համակողմանի ծաղկումը։

# ԳԻՏԱԿԱՆ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Դ. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ

Էություն-երևույթը մարքս-լենինյան փիլիսոփայության կատեգորիաներից մեկն է, որի խոր և հստակ ըմբռնումը կողմնորոշող, էական նշանակություն ունի։ Կատեգորիաները, ընդհանրապես, արտահայտում են իրականության առավել ընդհանուր գծերի հարաբերությունները. իմացության մեջ նրանք հենակետեր են։ Հեգելն իր ժամանակին ցույց է տվել կատեգորիաների նշանակությունն իմացության ընդհանուր պրոցեսի մեջ։ Նա շեշտել է այն դրույթը, որ կատեգորիաներն արտաքին գոյության անսահման շատ մասնավորությունների կրճատումն են։

Լենինը բարձր է գնահատել Հեգելի մոտեցման նշանակությունը։ Կոնկրետացնելով և ճիշտ հիմքի վրա դնելով Հեգելի մտքերը, նա գտել է, որ «Մարդն իր առջև ունի բնության երևույթների ցանցը։ Բնազդական մարդը, վայրենին իրեն չի ջոկում բնությունից։ Գիտակից մարդն իրեն ջոկում է. կատեգորիաները ջոկման աստիճաններ են, այսինքն՝ աշխարհի իմացությունը, հանգուցային կետեր ցանցի մեջ, որոնք, օգնում են ճանաչելու այդ ցանցը և տիրապետելու այն» (В. И. Ленин, философские тетради, 1947, стр. 67)։ Հեգելի իդեալիստական ելակետը կատեգորիաները զրկում էր ռեալ բովանդակությունից. դրանք դիտվում էին որպես ինչ-որ բացարձակ իդեայի ինքնազարգացման աստիճաններ. իրերը ներկայացվում էին որպես իդեաների պատճեններ, մինչդեռ բովանդակ գիտությունների հիմնական ելակետն այն է, որ մարդկային միտքը արտացոլում է բնության երևույթներն ու կապերը և այդ հողի վրա էլ մշակվում ու ստեղծվում են օրենքներ, կատեգորիաներ։

Մարդկությունը շատ վաղ շրջաններից ձգտել է ճանաչել շրջապատը, սակայն հայտնի է, որ փակ շրջապատ գոյություն չունի. ամեն մի հորիզոնի ետևում նորանոր հորիզոններ են բացվում, մտքի շարժումն ու ակտիվությունը կապվում է էությունների մեջ թափանցելու ձգտման հետ։ Այստեղ առաջանում է մեծ դժվարություն. մարդը կյանքի, պրակտիկայի պահանջով ձգտում է հասու լինել էությանը, սակայն բնությունը, իսկ որոշ աստիճանի վրա հատկապես հասարակությունը իրենց դրսևորում են խիստ բարդ, հակասական ձևերի և հարաբերությունների մեջ։

Երկար դարերի ընթացքում իրերը, դրանց կապերն ու հարաբերությունները գծագրվում էին որպես քաոս, բարդ հյուսվածք։ Շատ ուշ շրջանում մարդիկ ոլոր-մոլոր ճանապարհով, մեծ դժվարություններով, ի դեմս առավել լուսավորված մտածողների ընդհանրացրին, առաջին հերթին բնության երևույթ-

ները և սահմանեցին որոշ օրենքներ, կատեգորիաներ։ Ինչքան էլ օրենքների ու կատեգորիաների բնորոշումները, սահմանումները առաջին շրջաններում թերի լինեին, այնուամենայնիվ, դրա շնորհիվ շրջապատի երևույթներն արդեն ներկայացվում էին որոշ կարգով. աստիճանաբար առաջանում է օրենքի, օրինաչափության հասկացությունը։

Մեր էրայից վեց դար առաջ երևան եկավ հասարակական գիտության մի նոր ձև, որը կոչվեց փիլիսոփայություն, այն արտահայտվեց երկու ուղղություններով՝ մատերիալիստական և իդեալիստական։ Մշակվեցին փիլիսոփայության որոշ կատեգորիաներ։ Հնդկական փիլիսոփաները (վայշիշեկներ, մոտ V դար, մ. թ. ա.) շրջանառության մեջ դրեցին յոթ կատեգորիա։ Հունական նշանավոր փիլիսոփա Արիստոտելը (IV դար, մ. թ. ա.) հատուկ աշխատություն գրեց կատեգորիաների մասին։ Նա առաջարկեց տասը կատեգորիա՝ էություն, որակ, քանակ, հարաբերություն, տեղ, ժամանակ, դրություն, տիրապետում, գործողություն, տառապանք։ Այդ հիմնական հասկացությունների մշակման մեջ նա մատերիալիստական մոտեցում ցուցաբերեց։

Դեռևս գիտելիքների թույլ զարգացման աստիճանում Արիստոտելը հասկացավ, որ իրականությունը բարդ է և բազմազան, որ ընդհանրացումների միջոցով կարելի է ամփոփել, ամբողջացնել աշխարհի բազմազանությունը։ Նա գրել է. «Հասկացությունը ոչ մի դեպքում գոյության, իրերի պատճառը չէ, այլ իրն է հասկացության, ճշմարտության պատճառը» (Аристотель, Категории, 1939, стр. 45)։

Գտնել, հայտնաբերել օրենք, կատեգորիա հասարակ բան չէ, միայն դիտողությունը չի տալիս օրենքի ըմբռնումը։ Օրենքը, էականը հասկանալու համար պետք է հետազոտողը, մտածողը կարողանա թափանցել երևույթների ներքին անհրաժեշտ կապերի մեջ։ Իսկ դա, իր հերթին, կապվում է մարդկային իմացության արդեն բարձր աստիճանի հետ։ Օրենքի, կատեգորիաների մասին ճիշտ հայացքի մշակումը կախված չէ միայն գիտելիքների աստիճանից. այս գործում մեծ դեր է խաղում սոցիալ-դասակարգային մոտեցումը։ Մինչև անգամ գիտության բարձր աստիճանում էլ երբեմն մթագնվում են երևույթների էական կողմերը, էությունը։

Անհրաժեշտ է ընդգծել, որ մինչ մարքսիզմը գիտական ամբողջական տեսակետ չի մշակվել օրենքների, կատեգորիաների մասին։ Հայտնի է, որ մարդկային միտքը արգասավոր է դառնում ո՛չ միայն գիտության վերելքի, այլև սոցիալական մեծ տեղաշարժերի ժամանակ, երբ շարժման մեջ են մտնում լայն մասսաները, ժողովուրդները։ Նման պայմաններում պրոգրեսիվ մտածողները հետազոտության ծանրության կենտրոն են դարձնում այնպիսի շարժումները, որոնք առաջացնում են պատմական մեծ փոփոխություններ։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկներին վիճակվեց ուշադրությունը կենտրոնացնել առանձնապես մեծ փոփոխություններ առաջացնող պրոլետարիատի պատմական գործողության վրա։

***

Իմացությունն իր ամենանախնական աստիճանից սկսած հակում է ունեցել դեպի էությունը. իմացությունն երևույթների մեջ, երևույթների միջոցով էության բացահայտումն է։ Բանն այն է, որ երևույթը չի համընկնում էությանը, պետք է որոնել, հետազոտել և իմացության զգայական աստիճանից շարժվել դեպի տրամաբանականը։ Առանց գիտական աբստրակցիայի հնարավոր



չէ հասու լինել էությանը։ Գիտական աբստրակցիային բնորոշ է երկու կողմ՝ վերացում և ընդհանրացում։ Մարքսը նկատել է, որ եթե իրերի դրսևորման ձևն ու էությունն անմիջականորեն համընկնեին, ապա ամեն մի գիտություն ավելորդ կլիներ։ Մարդիկ դարերի ընթացքում իրենց ամենօրյա գործունեության հիման վրա հասկացել են, որ անմիջական տրվածը ամբողջը չէ։ Ավելին, պրակտիկան շատ կողմերով վկայել է, որ տեսանելիությունը կարող է խաբուսիկ լինել։ Բոլոր ժողովուրդների մոտ կան համանման արտահայտություններ։ Գերմանացիներն ասում են. der schein täuscht, ռուսները՝ внешность обманчива, հայերը արտաքինը խաբուսիկ է և այլն։ Ա. Դոդեի Ջեկ պատմվածքում բժիշկը (բարեհոգի Ռիվալը) Գիրշի մեջ տեսնում էր ինչ-որ արտակարգ բան, Փարիզի նշանավոր դեմքերից մեկը, բայց շատ շուտ նկատեց, որ այդ փարիսեցու գլխում սումբուլ է։ Դ. Արժանտոն ճաշից հետո ճեմում է, որպեսզի մարսողության գործունեությունը լավացնի, իսկ նրանով հմայված Իդային թվում է, որ նա լցված է ինչպիսի-ինչպիսի՜ երազանքներով։ Մեկը կարող է երևալ որպես հրեշտակ, բայց իրականության մեջ լինի սատանա. ինչպես ասել է Լերմոնտովը.

«Որ դևի նման նենգ էր ու անեղ
Եվ չճնաղ ինչպես կույսը երկրային»։

Կարող են դրանից հետևեցնել, և իրոք որոշ մտածողներ, փիլիսոփաներ այնպիսի հետևություններ են արել, որ եթե առհասարակ կա, գործում է էությունը, ապա դա փակ է և արտաքինի հետ ոչ մի ներքին կապի մեջ չէ։ Մինչդեռ, ինքնանպատակ արտաքին չի եղել և չի էլ կարող լինել։ Որքան էլ արտաքինը խաբուսիկ լինի, այնուամենայնիվ, ինչ-որ բան ցույց է տալիս, ուրեմն նա չի կարող բացարձակ դատարկ լինել։

Գիտությունների տվյալները ասում են, որ արտաքինը նույնպես էության դրսևորումն է, բայց, իհարկե, միակողմանի, ոչ-ադեկվատ, որոշ դեպքերում էլ մինչև իսկ խեղաթյուրված։ Էության մեջ թափանցելու այլ ճանապարհ չկա, քան արտաքինի, երևույթների միջոցով։ Այսպես, օրինակ, կապիտալիստական արտադրահարաբերություններն երևացել են, որպես հարաբերություններ իրերի, ապրանքների և ո՛չ թե մարդկանց միջև, սակայն, չնայած դրան, այնուամենայնիվ, հնարավոր է եղել թափանցել էության մեջ, իսկ եթե էությունը փակ լիներ և չդրսևորվեր երևույթների մեջ, ապա այդ դեպքում ոչ մի հանճար էլ չէր կարողանա խորանալ էության մեջ։ Փակ դուռը մնում է փակ։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները ղեկավարվելով ճիշտ սկզբունքներով, կարողացան թափանցել բուրժուական «դեմոկրատիայի» էության մեջ, որը շատ խաբուսիկ ձևերով է իրեն դրսևորել և շարունակում է դրսևորել։ Լենինը հիմնավոր փաստերով ցույց տվեց, որ «զուտ», «մաքուր» դեմոկրատիան խաբեություն է, աչքակապություն։ Որպես այդ փաստի վկայություն Լենինը նշում է Ամերիկայի և Շվեյցարիայի պրակտիկան։ «...ոչ մի տեղ բանվորական շարժման այդ ճնշումը չի կատարվում այնպիսի անողոք վայրագությամբ, ինչպես Շվեյցարիայում ու Ամերիկայում, և ոչ մի տեղ պառլամենտում կապիտալի ազդեցությունն այնպես ուժեղ չի զգացվում, ինչպես հենց այդտեղ» (Երկեր, հ. 29, էջ 603)։ Բուրժուական սոցիոլոգները որքան էլ ցանկանան քողարկել էությունը, այնուամենայնիվ, այն իրեն ցուցադրում է։

Նրանք ձգտում են և մինչև հիմա էլ մեծ ջանքեր են գործադրում աղճա-

տելու պրոլետարիատի էությունը, սակայն այդ էությունը իրեն ցուցադրում է
և այն տեսնում են նրանք, որոնք օբյեկտիվորեն են քննում երևույթները և ա-
ղատ են սոցիալ-դասակարգային նեղությունից։ Պրոլետարիատն իր ներքին
էությունը ցուցադրում է հարուստ տվյալներով և չի տառապում սուբյեկտի-
վիզմով։ Ով կանգնած է գիտական մտքի ճիշտ ճանապարհի վրա, տեսնում է
պրոլետարիատի էության դրսևորումները։

Պրոլետարիատն իրեն ցուցադրեց որպես մի նոր ուժ, որը կապիտալիզմի
պայմաններում իրոք արտահայտում է աշխատավորության իսկական շահերը,
իսկ կապիտալիզմն այդ շահերը ոտնահարում է չնայած շռայլ խոստումներին։
Լենինը հատուկ ուշադրություն է նվիրել հարցի այդ կողմի վրա։ Նա գրել է.
«...պրոլետարիատն իր օբյեկտիվ, տնտեսական դրության հետևանքով կապի-
տալիստական ամեն մի հասարակության մեջ ճիշտ է արտահայտում աշխա-
տավոր և շահագործվող ամբողջ մասսաների, ամբողջ կիսապրոլետարների
(այսինքն՝ մասամբ բանվորական ուժի վաճառքով ապրողների), ամբողջ մանր
գյուղացիների և ուրիշների շահերը» (Երկեր, հ. 30, էջ 431)։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկներն իրոք կարողացան բացահայտել և
վերծանել պրոլետարիատի էությունը։ Այդ էության ճանաչումով ճիշտ հողի
վրա դրվեց դաշինքի հարցը։ Առանձնապես Լենինը մեծ ուժով և հիմնավոր
ցույց տվեց պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիական հոծ մասսաների
դաշինքի պատմական մեծագույն կարևորությունը։ Բուրժուազիան իր էու-
թյամբ, իբրև կանոն, չի կարող դաշնակցել աշխատավորության հետ։ Պատ-
մության մեջ եղել են մոմենտներ, երբ գյուղացիությունը ժամանակի մի որոշ
հատվածում շարժվել է բուրժուազիայի հետ մի ընդհանուր գծով, բայց դա
տևել է շատ կարճ, տարբեր ուժերի էությունների հակադրություններն իրենց
ցուցադրել են։

Լենինը խորապես բացահայտել և ցույց է տվել գյուղացիության սոցիա-
լական էության բարդությունը, հակասականությունը։ Ճիշտ վերաբերմունքը
գյուղացիության հանդեպ ժամանակի ընթացքում սովետական հանրապետու-
թյուններում հաղթահարեց հակասությունները, ստեղծեց պրոլետարիատի և
աշխատավոր գյուղացիության ընդհանրության ամուր բազա։ Պրոլետարիատի
սոցիալական էությունն իր կողմը գրավեց բոլոր աշխատավորներին։ Այդ
էությունն, ամենից առաջ, այն է, որ խորտակում է հինը, անարդարը, զարգա-
ցումը կասեցնող հարաբերությունները։ Ժամանակի կարճ հատվածում պրո-
լետարիատի էությունն իրեն ցուցադրեց այն բանով, որ նա միայն տառապող
դասակարգ չէ, այլ նոր աշխարհ կերտող, համայն մարդկային կյանքը ներ-
դաշնակ հիմքերի վրա բարձրացնող մեծ ուժ։ Պրոլետարիատը որպես նոր ուժ
աճելու և ամրանալու հիմնավոր նախադրյալներ ունի։ Կապիտալիզմի շահերն
արտահայտող գործիչները, սոցիոլոգները, անչափ շատ ջանքեր են գործադրել
և գործադրում են, որպեսզի ցույց տան, որ պրոլետարները կարիք չունեն
ձեռք բարձրացնելու կապիտալիստական հասարակարգի վրա, քանի որ նրանք,
իբր, բոլոր կողմերով և տեսակետներով դարձել են լիակատար ազատ ու ա-
պահովված։ Այսինքն՝ ամեն կերպ ձգտում են աղճատել հենց էությունը։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները համարձակությամբ դեն նետեցին
էությունը ծածկող վարագույրը։ Էնգելսը գրել է, որ բանվորն ու ճորտը փաս-
տորեն տնտեսական կյանքի ստրուկներն են. «Երկուսն էլ ստրուկներ են, սա-
կայն մեկի ստրկությունն անկեղծ, բացահայտ, ճշմարիտ ստրկություն է, իսկ
մյուսինը՝ կեղծավոր, խորամանկորեն սքողված, թե՛ իրենից և թե մյուսներից



սքողված ստրկություն է, մի տեսակ աստվածաբանական ճորտություն, այն
ավելի վատ է, քան հին ճորտությունը» (Ֆ. Էնգելս. Բանվոր դասակարգի դրու-
թյունն Անգլիայում, էջ 195, 1934 թ.)։

Լենինը գիտական իմացության հիմնական խնդիրը տեսնում էր այն բա-
նում, որ թափանցի էության մեջ, բացահայտի պրոցեսների ներքին կապերը,
որոնք թաքնված են արտաքին անմիջական երևութականությամբ։ Երևույթը
դադարում է երևույթ լինելուց, երբ նրա մեջ, այսպես թե այնպես, չդրսևորվի,
իրեն չցուցադրի էությունը։ Առանց էության երևույթը պարզապես մտապատ-
րանք է. դրանք օբյեկտիվ իրականության երկու անքակտելի կողմերն են։ Այդ
երկու հասկացությունները ոչ նույնական են և ո՛չ էլ իրարամերժ, էությունը
օբյեկտիվ իրականության, առարկայական աշխարհի՝ հարաբերական կայուն,
հաստատուն կողմն է, որն իր արտահայտությունը գտնում է երևույթների մեջ
և երևույթների միջոցով։ Լենինն այս կապակցությամբ նշում էր, որ իրերի աշ-
խարհին հատուկ է անցում, վերալցում. էությունը դրսևորվում է և, այդ ուժով
էլ, երևույթը էական է։

Բացարձակ դատարկ, սնամեջ երևույթները չեն կարող լինել, դրանք,
այսպես թե այնպես, բովանդակություն ունեն, մի բան, որ լռելյայն ենթա-
դրում է էության գոյության փաստը։ Հենց այն, որ գիտական միտքը միշտ էլ
ձգտել և ձգտում է արտաքինի, թվացողի ներքո որոնել և գտնել արմատական
շարժիչ ուժերը, վկայում է, որ էությունը սառած բան չէ, այլ գտնվում է մըշ-
տական խմորումների մեջ, նրա ներքին հարստությունը կապվում է հավերժ
ակտիվության հետ։ Դիալեկտիկայի օրենքների համաձայն ամեն մի գոյու-
թյուն ունեցող դեռևս իրական չէ։ Էնգելսը ի դեմս հեգելյան դիալեկտիկայի
ցույց է տվել, որ իր ծավալման մեջ իրականությունը երևան է գալիս իբրև
անհրաժեշտություն։ Ճշմարտությունը դա հարստացող պրոցես է։ Դիալեկ-
տիկական փիլիսոփայության համար չկա ինչ-որ նախօրոք սահմանված հա-
վերժական բան։ Մշտնջենական է հնի և նորի պայքարը։

Էությունը, եթե իրոք էություն է և ոչ մտապատրանք, երևույթականանում
է, այսինքն՝ նա իրեն ցուցադրում է։ Եվ դա է պատճառը, որ մարդկային միտ-
քը հետզհետե կարողանում է խորանալ էության մեջ, էությունն արտահայտ-
վում է իրական, ռեալ ձևերի մեջ։ Հայտնի է, որ դարերի ընթացքում շատ սո-
ցիոլոգների միտքը զբաղվել է այն հարցով, թե ինչո՞ւմն է պետության էու-
թյունը։ Սոցիալ-դասակարգային տեսանկյունը շատ է դժվարացրել պետու-
թյան բուն էության հայտաբերումը։ Մինչև իսկ հանճարեղ մտածողները,
դրանց թվում առավել խորաթափանց փիլիսոփա Հեգելը, անտեսել է պետու-
թյան էության ռեալ դրսևորումները, այսինքն՝ երևույթների այն ցանցը, որի
մեջ իր արտահայտությունն է գտնում այդ, «թաքնված» էությունը։ Պետու-
թյան էությունը Հեգելը, փաստորեն, աստվածացրել է։ Դրան տվել է վերերկ-
րային, ինչ-որ վերացական նշանակություն։

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրներն առաջին անգամ պետության
էության կոնկրետ դրսևորումների համակողմանի, զգաստ վերլուծությամբ
ցույց տվեցին դրա ողջ պրոզան։ Լենինը հատկապես ապացուցել է, որ պետու-
թյունների էությունը՝ զինված ջոկատներն են, բանտերը, աշխատավորների
կամքը բռնության ենթարկելու այլ միջոցները։ Չլիներ պետությունը, չէին լի-
նի նման երևույթները, չլինեին այս երևույթները, չէր լինի այդպիսի էությունը։

Հարցի դիալեկտիկան այն է, որ էությունը երևույթներից դուրս չէ, այլ

նրանց մեջ է։ Սակայն, պրոբլեմի բարդությունն այն է, որ թեև իրերի էությունը երևույթների մեջ է իրեն ցուցադրում, սակայն ոչ անմիջականորեն և ամբողջովին։ Որոշ իմաստով էությունը երևույթների մեջ ինչ-որ աստիճանով և չափով է մնում «թաքնված», «ծածկված»։ Հայտնի է, որ դարերի ընթացքում կեղծը, վատը, մինչև իսկ այլանդակը ներկայացրել են որպես լավ, ընդունելի, շրջանակը «ոսկեզօծվել է», դաժանությունը «քաղցրացնելով» են ներկայացրել։ Լենինը այսպիսի կապակցության մեջ շեշտել է այն փաստը, որ մինչև իսկ պրոլետարական կուլտուրայի ձևի տակ մարդկանց հրամցրել են գարշելի բան։ Նա գրել է. «...շատ հաճախ ամենաանհեթեթ ծամռումը հրամցվում էր ինչ-որ նոր բանի տեղ, և զուտ պրոլետարական արվեստի ու պրոլետարական կուլտուրայի անվան տակ հրամցվում էր ինչ-որ գերբնական և այլանդակ բան» (Երկեր, հ. 29, էջ 407)։

Էությունը հնարավոր է խճճել այն աստիճան, որ այն երկար ժամանակ ծածկված մնա։ Այդ բանը հատուկ է ներհակ հասարակություններին։

Այս տեսակետից բնորոշ է մի մոմենտ. 1963 թվականի նոյեմբերի 22-ի օրը-ցերեկով սպանվեց Ամերիկայի պրեզիդենտ Քեննեդին։ Գործի հետաղոտություններից մոտ 26 հատոր կազմվեց, սակայն «գաղտնիքը» շարունակում է մնալ «գաղտնիք»։ Էությունը խճճված է։ Բանը այնտեղ է հասել, որ գործի որոշ հետազոտողներ գտել են, թե Օսվալդը բարկացել է իր կնոջ վրա և վրեժը լուծել է Քեննեդիից։ Հարցի սոցիալ-դասակարգային իմաստն այն է, որ տեռորի էությունը փնտրում են պատահական դիպվածների մեջ, այսինքն՝ ամեն կերպ ջանում են շրջանցել էությունը, դուրս թողնել հասարակական, քաղաքական կողմը։ Հարցերին մոտենալով մարքս-լենինյան տեսանկյունից, չենք կասկածում, որ տվյալ դժխեմ երևույթը սոցիալ-դասակարգային ինչ-որ որոշակի էության հետ է կապվում։

Խճճված էության գիտական ըմբռնումը թույլ չի տալիս խաբվելու։ Էությունները նույնպես, վերջիվերջո, իրենց ցուցադրում են երևույթների միջոցով, մինչև իսկ թվացությունը նույնպես օբյեկտիվ բովանդակություն ունի։ Թվացությունն ըստ Լենինի բուն իրի էության հայտարկումն է նրա շարժման վայրկյաններից մեկում։ Թվացողն ու անցականը շատ են չքանում։ Լենինը բերում է այսպիսի օրինակ. գետի շարժումը վերևից փրփուր է, ներքևում՝ խոր հոսանքներ։ Փրփուրը ինչքան էլ մակերեսային, անցողիկ լինի, այնուամենայնիվ, էության որոշ արտահայտությունն է։ Ինչքան էլ երևույթը խաբուսիկ թվա, մնում է որպես էության ցուցադրում։ «Խաբուսիկությունը», խճճվածությունը հանդես են գալիս որպես էությունը սքողող նշաններ, մարդիկ երևույթների բարդ ցանցի միջով, վերջիվերջո, ճանապարհ են գտնում հասու լինելու իսկական էությանը։

Հայտնի է, որ հասարակական կյանքն ինքնին, առանձնապես ներհակ հասարակական անցքերը, շատ բարդ են, ռեակցիոն ուժերը, իբրև կանոն, վտանգավոր քայլերը, գործողությունները ներկայացնում են որպես դրական, առաջադիմական բաներ, սակայն ուշի-ուշով դիտելով, քննելով երևույթները կարելի է գտնել «անմեղ» թվացող ձգտումների էությունը։ Այսպես, օրինակ, Բոննի կառավարությունը մշտապես իրեն ցուցադրում է որպես ամբողջ գերմանական ժողովրդի շահերի իսկական արտահայտիչ, առաջադրում է Գերմանիայի վերամիավորման կարևոր հարցը։ Իսկ ի՞նչ եղանակով։ Երևույթների ցանցի միջոցով պարզվում է, որ վերամիավորման հիմնական ուղին դա զենքն է, այսինքն՝ ագրեսիան. նվաճումը ներգափոխվում է վերամիավորման տեր-



մինով։ Դրանք դեմոկրատական սոցիալիստական Գերմանիան անեքսիայի ենթարկելու որոգայթներ են։

Էության մթագնումն ինքնին սրում է խուզարկու միտքը, որը չի ուզում շեղվել էությանը հասու լինելու նպատակադրումից։ Բոննի կառավարությունը Օդերի, Նեյսի սահմանները խախտելու նպատակով (Լեհաստանի հյուսիսային և արևմտյան հողերը, լեհական հողերի $1/3$-ը իրեն միացնելու համար) առաջ է քաշում առաջին հայացքից շատ «անմեղ» մի դրույթ. իբր Լեհաստանը այդ տերիտորիայում չի կարողանում տեղավորել իր բնակչությունը և տնտեսությունը կարգի բերել, այդ մասը մնում է որպես «բաց տեղ» (Եվրոպական քարտեզի վրա)։ Տվյալ հարցի էությունը իրեն դրսևորում է մի շարք բնորոշ երևույթների մեջ և նրա միջոցով։ Թվական հարուստ տվյալներով հաստատվում է, որ սոցիալիստական Լեհաստանը մեծ հաջողությունների է հասել այդ, այսպես կոչված, «բաց տեղում»։ Ներկա շրջանում այդ տերիտորիայի վրա լեհերն ավելի շատ են, քան գերմանացիները մինչև 1937 թվականը։ Ակնառու է, որ հիշյալ հողամասում տնտեսական, կուլտուրական տեղաշարժերը մեծ չափերի են հասել։ Վերելքը նշանակալից չափերով բարձր է նախապատերազմյան շրջանից։ Բոննի կառավարությունը 1937 թվականին սահմանների վերանայումով պարզապես պատերազմի կուրս է վարում։ Պատահական չէ, որ հիտլերյան շրջանի գեներալների, գործիչների ազդեցությունը գնալով մեծանում է։ «Այն անձինք, որոնք մեղավոր են խաղաղության և մարդկության նկատմամբ իրենց ծանր հանցանքներով, այսօր կառավարության, բանակի, դիվանագիտության իրավական հաստատությունների և ֆեդերատիվ Գերմանիայի հանրապետության հասարակական կյանքի այլ ոլորտներում վճռական ազդեցություն ունեն» («Neues Deutschland», 1 հոկտեմբերի, 1966 թ.)։ Իբրև բնորոշ բան բերվում է Հենրիխ Լյուբկեի օրինակը. հիտլերյան շրջանի այդ դահիճն այժմ Բոննի կառավարության պրեզիդենտն է, որն իր շուրջն է հավաքում համախոհներին։ Ագրեսիան և նվաճումը նույնպես «թեորիապես» հիմնավորում են, որը պահանջում է իրական էության խիստ խճճվածություն և քողարկում։

Էությունն աղճատելու կիրքը նույնպես էություն է, որը հենց դրանով էլ ցուցադրում է իր ռեակցիոն իմաստը։ Այս տեսակետից շատ բնորոշ է Էյզենհաուերի և Իդենի համատեղ դեկլարացիան (1956 թ. փետրվար)։ Երկու մեծ երկրների աչքի ընկնող գործիչներն ամբողջովին սքողում են իրականությունը, ծածկում, վարագուրում էությունը։ Դեկլարացիայում շեշտվում է—Մարդը ծագել է աստծուց և նրա ճակատագիրը կախված է նրանից. «էությանը» այսպիսի ըմբռնումով գնահատում են կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների քաղաքական վարքագիծը։ Դեկլարացիայում նշված է, որ «բարձր իդեայով» ղեկավարվող մարդիկ (այսինքն՝ կապիտալիստական աշխարհի գործիչները) պայքարում են նրանց դեմ, ովքեր մարդու վրա նայում են որպես պետական մեքենայի ենթակա մի բանի։ Բարձրագույն կեղծիքը արտահայտվում է հետևյալում. դեկլարացիայում նշվել է, որ սովետական կառավարողները չեն կարող ուրիշ ժողովուրդների նկատմամբ հոգատարություն ցուցաբերել, որովհետև այդ չեն անում, ամենից առաջ, իրենց ժողովուրդների նկատմամբ։ Այնուհետև Դեկլարացիայում ասվում է, որ, իբր, իրենք «բոլոր միջոցներով կպաշտպանեն խաղաղությունը, ազատությունը և սոցիալական պրոգրեսը»։ Վերջում հանդիսավոր նշվում է, թե իրենք կվերականգնեն «մարդու իրավունքն այնտեղ, որտեղ նա ժամանակավորապես ոտնահարվել է»։ ...Մարքսիստը չի կարող չթափանցել այսպիսի մոտեցման իսկական էության մեջ։

Դա ագրեսիայի արդարացումն է, ժողովուրդներին խոշտանգելու ծածկված մտադրությունները: «Վերականգնել մարդու իրավունքը» կոչը մեր օրերում կապիտալիստական որոշ տերությունների համար, նշանակում է՝ շարունակել նվաճման քաղաքականությունը, ոտնահարել ռազմական, տնտեսական տեսակետից թույլ ժողովուրդներին: Այս փաստը հաստատվում է Ամերիկայի ագրեսիայով Վիետնամում:

Պատմությունից հայտնի է, որ նվաճումների ձգտումը ներկայացվել և ներկայացվում է որպես «ժողովուրդների ինքնորոշման իրավունք», սակայն եղել են և կան չափը կորցրած սոցիոլոգներ, որոնք մարդկության ընդհանուր շարժման, փոխակերպությունների, տեղաշարժերի էությունը տեսնում են պարզապես ուժի «օրենքի» մեջ, ստացվում է այնպես, որ մարդկային կյանքի պրոգրեսը պահանջում է միշտ սրել զենքը, դուրս մղել խղճի, ափսոսանքի զգացմունքները և ղեկավարվել միայն մի կանոնով՝ սահման ֆաչանց զենf յուրյանց:

Իմպերիալիզմի հակասությունների սրման հետ վերջին ժամանակներում լույս աշխարհ եկան «թեորիաներ», որոնցից ուղղակի արյան հոտ է գալիս: Ուժեղի «իրավունքի» դոկտրինայի էությունն արտահայտվում է մի քանի բառերով. ուզում եմ, ցանկանում եմ, վերցնում եմ: Մինչև անգամ այս մոլուցքները ներկայացվում են որպես պատմական օրինական բան և դա հազար ու մի հնարքներով «հիմնավորում» են: Հայտնի է, որ Հիտլերը 1939 թվականին քիչ չէր խոսում իրավունքի անունից (նա նույնպես շաղ էր տալիս «ինքնորոշման իրավունք» տերմինը): Գերմանիայի ֆեդերատիվ կառավարությունն առերևույթ ջանում է իրեն հեռու ցույց տալ հիտլերյան քաղաքականությունից: Այս պատճառով էլ շրջանառության մեջ է դնում հումանիզմ, արդարամտություն հիշեցնող տերմինները:

Բոննի իմաստունները շատ են մտածել և ստեղծել մի նոր տերմին, որը կոչվում է «ծննդավայրի իրավունք»: Առաջին հայացքից կարող է թվալ, որ դա ինչ-որ հումանիստական խնդրանք է, սակայն իրականությունն այն է, որ «ծննդավայրի իրավունքի» կոչը իմպերիալիստական պահանջ է՝ լեհական հողը նվաճելու, Եվրոպայի քարտեզը վերանայելու համար:

Վալտեր Ուլբրիխտը կուսակցության Կենտրոնական կոմիտեի XIII պլենումում շեշտեց այն միտքը, որ Գերմանիայում կա, գործում է երկու տրադիցիա, երկու կուլտուրա, մեկը մարմնավորվում է և հանդես է գալիս Դեմոկրատական Գերմանիայի կարգերի ձևով, իսկ մյուսը՝ Բոննի: Բոննում հսկայական աղմուկ բարձրացավ այս ուղղությամբ, որը համարվեց հանդգնություն, պնդաճակատություն գերմանական ազգի նկատմամբ, իբր, Գերմանիան եղել և մնում է որպես մեկ ներդաշնակ հզոր ուժ: Գերմանական մոնոպոլիստները, իրենց զինվորականների հետ, չափից դուրս գրգռվել ու չարացել էին դրանից: Բոննի վերնախավը ամեն կերպ ձգտում է քողարկել գերմանական իմպերիալիզմի էությունը, սակայն նույն գերմանացիների աշխատավոր զանգվածները, ի դեմս պրոգրեսիվ մեծ մտածողների, սկսել են ավելի ու ավելի հասկանալ վերնախավի ռեակցիոն նկրտումները:

Ուլբրիխտի ելույթում վերհանվում է գերմանական ժողովրդի իսկական էությունը: Դրա համար էլ այդ էությունը այլասերող Բոննի գործիչները զայրույթով են ընդունում ճշմարտությունը: Նրանք ամբաստանում են գերմանական պրոգրեսիվ նշանավոր գործիչներին, որոնք Հիտլերի ռեժիմի օրոք կառուցել են «համակենտրոնացման ճամբարներ, մարդկանց խեղդող խուցեր և միլիոնավոր մարդկանց իրենց կոմունիստական, սոցիալիստական, հումանիստական աշխարհայացքի, և այն բանի համար, որ նրանք պատկանել են որոշակի ռասայի կամ թե կրոնի, փակել են արգելանոցներում ու ոչնչացրել, և տիրող այդ դասակարգը հավակնություն ունի կուլտուրական ազգի ներկայացուցիչը լինելու: Կուլտուրան, բարբարոսությունն իրար չհամընկնող բաներ են» («Neues Deutschland», 29 սեպտեմբերի, 1966 թ.):



Գիտության խնդիրը եղել և մնում է էության հայտաբերումը: Մարքսը մեծ ուժով շեշտել է այդ դրույթը. «... գիտության խնդիրն այն է, որ թվացող երևույթների մակերեսին հանդես եկող շարժումը հանգեցնի իրական ներքին շարժմանը» (том III, стр. 324):

Աշխարհի հստակ պատկերը կարող է ստեղծվել միայն այն ժամանակ, երբ մարդը հասու է էությանը: Կողմնորոշման ուժը, հեռատեսությունը, լավատեսությունը, վերջին հաշվով, կապվում են էականի ըմբռնման հետ, որն, իր հերթին, ենթադրում է էությանը հասու լինելու աստիճանը:

Մարքսը շեշտել է այդ դրույթը: Նա գրել է. Երբ իրերի կապակցությունն ըմբռնելի է դառնում, ապա փուլ է գալիս թեորիական հավատը գոյություն ունեցող կարգերի մշտական անհրաժեշտության հանդեպ... (տե՛ս Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 596):

Էությունն արտահայտում է ընդհանուրը, ներքինը, խորը, ավելի կայունը, հանգիստը, իսկ երևույթը կապված լինելով էության հետ, արտահայտում է եզակին, արտաքինը, իրականության ավելի մակերեսային կողմերը: Այդ պատճառով էլ երևույթների աշխարհը աչքի է ընկնում իր շարժունակությամբ, փոփոխականություններով: Հասկանալի է, որ երևույթների աշխարհը ներկայանում է մեզ բազմազանությունների մեջ և այն էլ շատ անցողիկ:

Էությունների խորությունն ու անսպառելիությունն անվերջ խթանում են մարդկային մտքի ակտիվությունը, ամեն մի հորիզոնի ետևում մարդիկ ձգտում են փնտրել ու գտնել նորանոր հորիզոններ:

# «ПРАВДА»-Ն ԵՎ 20-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՍՈՎԵՏԱՀԱՅ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

Հ. ՖԵԼԵՔՅԱՆ

Մեր հանրապետությունում պարբերական մամուլի տեսական-գաղափարական մակարդակի և կազմակերպչական դերի բարձրացման հետ կապված կենսական խնդիրների լուծման համար խոշոր արժեք ուներ նոր տիպի մամուլի կազմակերպման այն հարուստ փորձը, որ ամբարվել էր Սովետական Ռուսաստանում։ Դեռևս 1921 թվականի գարնանը, անդրադառնալով սոցիալիստական շինարարության հերթական միջոցառումների մշակման գործում մամուլի էֆեկտիվության բարձրացման խնդրին, «Խորհրդային Հայաստան» թերթը գրում էր. «Ռուսաստանի կոմունիստական կուսակցության փորձը պետք է նկատի առնվի և օգտագործվի իր ամբողջությամբ այս ծայրաստիճան կարևոր և անհրաժեշտ աշխատանքի մեջ» (1921, № 89)։

1920-ական թվականներին սովետահայ մամուլում լայնորեն լուսաբանվում էին հեղափոխական պայքարի կազմակերպման ու ղեկավարման, սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում մամուլին վերապահված դերի լենինյան ըմբռնումները, որոնք գնահատվում էին իբրև առաջնորդի ցուցումներ՝ ինչպես կոմունիստական մամուլի անցած ճանապարհը լուսաբանելու, այնպես էլ նրա հետագա զարգացման ուղիները որոշելու համար։ «Այն ամենը,— ընդգծում էր «Խորհրդային Հայաստան»-ը,— ինչ խոսել է ու գրել Իլյիչը թերթի, նրա կազմակերպչական սկզբունքի, նրա անելիքների ու հնարավորությունների մասին, դեռ երկար ժամանակ կմնա անգնահատելի և բացառիկ կարևոր ու մեր կուսակցության և ամբողջ բանվորական դասակարգի համար՝ թերթերի, գրականության և մամուլի վերաբերյալ ուղեցույց աստղ կծառայի» (1924, № 111)։ Իր տեսադաշտում ունենալով քննարկվող հարցի վերաբերյալ այն ժամանակ հայտնի լենինյան ողջ ժառանգությունը, սովետահայ պարբերական մամուլը յուրաքանչյուր կոնկրետ դեպքում շեշտում էր այն դրույթներն ու պահանջ-առաջարկները, որոնք սկզբունքային նշանակություն էին ձեռք բերում մամուլի գաղափարական-դաստիարակչական և կազմակերպչական աշխատանքի համար սոցիալիստական շինարարության տվյալ էտապում։

Կոմունիստական մամուլի լենինյան սկզբունքները մասսայականացնելիս սովետահայ մամուլը, բնականաբար, առանձնակի ուշադրություն էր նվիրում կուսակցության կենտրոնական օրգան «Правда»-ին։ Նախապես նշենք, որ «Правда»-ն և սովետահայ մամուլը ինքնին արդեն ուսումնասիրության մի հատուկ նյութ է։ Այստեղ մենք կառանձնացնենք միայն սովետահայ պարբերական մամուլի զարգացման առաջին տասնամյակում նոր տիպի մամուլի սկզբունքների արմատավորման հետ առնչվող մի քանի հարցեր։



Սովետահայ մամուլն անդրադարձել է «Правда»-ի գործունեության մի շարք կարևոր կողմերին՝ կապված նրա անցած ուղու հետ։ Նման մոտեցումը, հատկապես, նկատելի է բանվորական մամուլի օրվան նվիրված նյութերում (առաջնորդողներ, հոդվածներ, հուշեր, արտատպություններ և այլն), որոնցում շեշտը դրվում էր «Правда»-ի հարուստ և ուսանելի փորձի օգտագործման, նրա ավանդների կիրառման անհրաժեշտության վրա՝ հետհոկտեմբերյան ժամանակաշրջանում, երբ բանվորական մամուլն սկսեց գործել «հարյուրապատիկ, հազարապատիկ ավելի բարդ, պատասխանատու պայմաններում»։ Ելակետային նշանակություն ուներ մասնավորապես կուսակցականության և մասսայականության պահանջը, որը դրվեց սովետական մամուլի ստեղծման ու զարգացման հիմքում. «Ընկ. Լենինի ղեկավարությամբ սնված ու ապրած հին «Правда»-ի գլխավոր արժանիքները,— կուսակցականություն և մասսայականություն,— այսօր նոր «Պրավդա»-ի և նրա հարյուրավոր ընկերակիցների աշխատանքի առանցքն են կազմում» («Խորհրդային Հայաստան», 1924, № 102)։

Մեր երկրում ազգային լեզուներով հրատարակվող պարբերական մամուլի կազմակերպման ու զարգացման գործում «Правда»-ի ավանդների կենսունակությունն ու կարևորությունը նկատի ուներ «Խորհրդային Հայաստան»-ը, գրելով՝ ««Правда»-ին են հետևում, նրանից սովորում Խորհրդային Միության մեջ հրատարակվող հարյուրավոր թերթերը» (1927, № 104)։ Կոնկրետացնելով այս միտքը սովետահայ մամուլի վերաբերյալ, թերթը մի այլ առիթով ընդգծում էր. ««Правда»-ի կատարած վիթխարի աշխատանքներն այսօր, սոցիալիստական շինարարության ներկաստադիայում, գծում են մամուլի ուղեգիծը Խորհրդային Հայաստանում». մեր հանրապետության համար կենսական նշանակություն ունեցող տնտեսական և գաղափարական խնդիրների «լուծման անփոխարինելի և ամենահզոր զենքն է բանվորական և գյուղացիական մամուլը, **«Правда»-ի ոգով և մեթոդներով** աշխատող մամուլը» (1927, № 110։ Ընդգծումը մերն է—Հ. Ֆ.)։ Այնուհետև սովետահայ մամուլի զարգացման համար առաջիկայում կարևոր համարելով աշխատավորական զանգվածների հետ կապերի ամրապնդումը, մամուլի բովանդակության հարստացումը, գաղափարական մակարդակի բարձրացումը, լեզվի ու ոճի կատարելագործման խնդիրները, թերթը Հայաստանի ժուռնալիստներին, բանգյուղթղթակիցներին ու մամուլի բոլոր աշխատողներին է դիմում այսպիսի կոչով. «Հին «Правда»-ի մարտական ավանդները վերհիշենք, սովորենք և կիրառենք նոր «Правда»-ի մասսայական քաղաքական-դաստիարակչական աշխատանքի լենինյան նուրբ մեթոդները»։

Ընդգծելով, որ «Правда»-ն «սովորելու ու նմանվելու ամենահուսալի ու փայլուն օրինակն է», «Խորհրդային Հայաստան»-ը հիշեցնում էր ստեղծագործական մոտեցման անհրաժեշտությունը. «Правда»-ն ինքը չունի աշխատանքի քարացած, մեկընդմիշտ սրբագործված մեթոդներ, ձևեր ու եղանակներ, նա միշտ փոփոխում, զարգացնում ու կատարելագործում է դրանք՝ կոնկրետ իրադրության և իր առջև ծառացած նոր խնդիրներին համապատասխան. ««Правда»-ն կոմունիստական բանվորաթերթի իդեալական տիպն է, որը սակայն չի քարանում, այլ անընդհատ զարգանում, մասսայական աշխատանքի նոր մեթոդներ է գտնում» (1927, № 104)։

Ի լրումն վերն ասվածի՝ նշենք, որ հատկանշական են նաև սովետահայ մամուլի արտատպությունները «Правда»-ից։ Սրան հարկ է ավելացնել նաև հետևյալը. անդրադառնալով «Правда»-ի ելույթներին, կամ նրա նախաձեռնությամբ ծավալվող այս կամ այն կամպանիային, սովետահայ պարբերականները որոշ դեպքերում կոնկրետացնում, այսպես ասած՝ «տեղայնացնում» էին նրա արծարծած խնդիրները՝ կապված Հայաստանի կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունների գործունեության հետ։

Մամուլի կազմակերպման ու ղեկավարման լենինյան սկզբունքների և «Правда»-ի փորձի կենսական նշանակությունը սովետահայ մամուլը մեկնում էր ճշմարիտ ելակետից. ««Правда»-ի ավանդները նրա գլխավոր աշխա-

տակից և ղեկավար ընկ. Լենինի ավանդներն են, մեր կուսակցության մարտական ավանդները» («Խորհրդային Հայաստան», 1926 թ. № 104): Այսպես, ուրեմն՝ «Правда»-ի ոգին և աշխատանքի լենինյան նուրբ մեթոդները սկզբունքային, էական նշանակություն ունեին նաև սովետահայ պարբերական մամուլի զարգացման համար:

Բոլշևիկյան մամուլի լենինյան սկզբունքների պրոպագանդմանը, «Правда»-ի ավանդներին ու փորձին հետևողականորեն անդրադառնում էր մեր հանրապետության ղեկավար կուսակցական օրգանը՝ «Խորհրդային Հայաստան»-ը, որը կոչված էր ուղղություն տալու ամբողջ սովետահայ մամուլի գործունեությանը: Այդ մամուլի կազմակերպման ու զարգացման գործը ճշգրիտ և արգասավոր ուղու վրա դնելու նպատակով էլ Հայաստանի կոմկուսի կենտրոնական օրգանը որոշակի տեղ էր հատկացնում նոր տիպի մամուլի դերի և խնդիրների բացահայտմանը՝ հասարակական նոր հարաբերությունների արմատավորման, գաղափարական պայքարի, ժողովրդական տնտեսության կազմակերպման ասպարեզներում:

***

Սովետական իշխանության հաստատումից հետո պատմական նոր խնդիրներ դրվեցին մեր երկրի պարբերական մամուլի առջև: Իշխանության դեմ կռվելու զենքից այն դարձել էր իշխանության պահպանման ու ամրապնդման, նոր կյանքի կառուցման զորեղ միջոց: Սովետական երկրում 130 միլիոնանոց ժողովրդի ձեռքով կատարվող վիթխարի, իրոք հրաշագործ վերափոխումների համար,— գրում էր «Խորհրդային Հայաստան»-ը,—«մամուլը նույնքան անհրաժեշտ է, որքան և վառելիքը, հում նյութերը, հացը...» (1923, № 31: Ընդգծումը մերն է— Հ. Ց.):

«Правда»-ի նորօրյա փորձից ելնելով և սովետահայ մամուլի գործունեության բարելավմանը նպաստելու նպատակով Հայաստանի կոմկուսի կենտրոնական օրգանը գրում էր, թե մեր երկրում մամուլը, որ «...միլիոնավոր մասսաների առօրյա մրջյունային ջանքերի պատմությունն է», պետք է հարազատորեն արտացոլի աշխատավոր զանգվածների հերոսական գործերը, նրանց հոգսերն ու ուրախությունները: Արտացոլման այս պահանջը, իհարկե, չէր հանգեցվում լուսանկարչական պատճենավորման անհրաժեշտությանը: Խոսքը կյանքի կենդանի պրոցեսի տարեգրության, պատմական ընթացքին հարազատ մնալու մասին էր:

Ճշմարտացիության և հեղափոխական օբյեկտիվության պարտադիր հատկանիշի հետ առնչվող կարևորագույն պայմաններից մեկն էլ «Правда»-ն համարում էր անհաշտ պայքարը նոր կյանքի կառուցման պրակտիկայում ի հայտ եկած թերությունների, սխալների և կուսակցության գլխավոր գծից շեղվելու ամեն տեսակ դրսևորումների դեմ: Իրականության ճշմարտացի արտացոլման խնդիրը սովետահայ մամուլը ևս ըմբռնում էր երկու միմյանց լրացնող հատկանիշների միասնության մեջ. մի կողմից՝ ամփոփել, ի մի բերել նվաճումները, խրախուսել նորը, առաջավորն ու օրինակելին, այսինքն՝ հանրագումարել սոցիալիստական շինարարության կուտակած դրական փորձը, ժողովրդական զանգվածներին տեղյակ պահելով նաև ծրագրվող աշխատանքներին. մյուս կողմից՝ թղթե վարագույրով չծածկել-չթաքցնել տարբեր ասպարեզներում առկա դժվարությունները, պակասությունների, սխալների կրքոտ բացահայտմամբ ուղիներ նշել դրանց շուտափույթ հաղթահարման համար: Ի դեպ՝ իր խնդիրների նման ըմբռնման մեջ էլ հենց արտահայտվում է սովետական մամուլի որակական-տարբերիչ հատկանիշներից մեկը բուրժուական տպագիր խոսքի համեմատությամբ. սովետական մամուլի վերոհիշյալ նպատակադրումն ինքնին արդեն թելադրում էր համապատասխան շահագրգռվածություն հասարակական հուզող խնդիրների հանդեպ և բացառում ամեն մի ժուռնալիստական սենսացիա:

Ըստ որում կարևոր նշանակություն էր տրվում մամուլի քննադատական ելույթներին պատասխանելու խնդրին: Սկզբից ևեթ ամենայն սրությամբ դնելով այս պահանջը, սովետահայ պարբերականները բազմիցս հիշեցնում էին



ՌԿ(բ)Կ VIII համագումարի հայտնի որոշումը մամուլի վերաբերյալ. «Այն անձինք կամ հիմնարկները, որոնց գործողությունների մասին խոսվում է մամուլում, պարտավոր են ամենակարճ ժամկետում նույն թերթի էջերում տալ գործարար փաստական հերքում կամ էլ մատնանշել շտկված թերություններն ու սխալները» (Պարտիական և սովետական մամուլի մասին, 1955 թ., էջ 289): 1922 թվականի սկզբին Ռուսաստանի ֆեդերացիայի արդարադատության ժողկոմատը օրենքների կատարմանը վերահսկող մարմիններին հրահանգեց հետևել հակաօրինական գործերի մասին այն բոլոր հաղորդագրություններին, որ «լույս են տեսնում կենտրոնական թե տեղական մամուլում, կատարել քննություն այդ գործերի վերաբերյալ և, ի դեպ անհրաժեշտության՝ պատասխանատվության կանչել հանցավորներին»: Հաղորդելով այս մասին, «Խորհրդային Հայաստան»-ը ընդգծում էր. «Այսպիսի մի նոր և կարևորագույն ֆունկցիա է վերապահվում մամուլին Խորհրդային Ռուսաստանում». դրանում ևս տեսնելով սովետական ու բուրժուական մամուլի օրգանական տարբերությունը, թերթը ուշադրություն էր հրավիրում Ռուսաստանում կիրառվող այդ դրական փորձի վրա. «Ահա այս առանձնահատկությունն է, որ գնահատվելու և օգտագործվելու է ըստ արժանվույն նաև մեր երկրում... Մամուլը դառնալու է... պետության առաջնակարգ օրգանը նաև հեղափոխական օրինապահության ասպարեզում...»: Այնուհետև թերթը նշում էր, որ խորհրդային իշխանությունը և արդարադատության ժողովրդական կոմիսարիատը պետք է հրահանգեն իրենց պատշաճ մարմիններին՝ «աչալուրջ հետևել մամուլի այդ մերկացումներին և տեղն ու տեղը, անմիջապես միջոցներ ձեռնարկել օրինականության վերականգնման համար» (1922, № 66): 1923 թվականի աշնանը «Խորհրդային Հայաստան»-ի խմբագրության ջանքերով աշխատանքի կոմիսարիատին առընթեր ստեղծվեց մի հանձնաժողով, որը քննության էր առնում թերթի Բանվորական բաժնում հրապարակվող թղթակցությունները:

Պարբերական մամուլը հասարակական կարծիքի, սոցիալիստական շինարարության կազմակերպման խթան կարող է լինել այն դեպքում միայն, եթե կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս համապատասխան օրգանները պատշաճ ուշադրություն, հոգատար վերաբերմունք ցուցաբերեն մամուլում տպագրված աշխատավորների նամակներին, ուսումնասիրեն նրանց առաջարկությունների ու պահանջները, սատար կանգնեն ամեն մի խելամիտ նախաձեռնության: Այս սկզբունքը կարևոր դեր խաղաց սովետահայ մամուլի զարգացման գործում: Սոցիալիստական շինարարության կոնկրետ խնդիրների լուծմանը աջակցելուն զուգընթաց՝ այս հանգամանքը վճռական նշանակություն ուներ նաև մասսաների հետ մամուլի կապերի ամրապնդման, թերթերի շուրջը նորանոր թղթակիցներ համախմբելու, առհասարակ տպագիր օրգանների հեղինակությունն ու կշիռը բարձրացնելու տեսակետից: Մասսայական թերթերի ճիշտ դրվածքի առաջին և ամենագլխավոր պայմանը համարելով խմբագրությունների և ընթերցողների միջև մշտական, ամուր կապերի հաստատումը, ՌԿ(բ)Կ Կենտկոմը 1921 թվականի ապրիլի 4-ի շրջաբերականում հիշեցնում էր, որ «...տեղական շահերը շոշափող գործարար և հասկանալի թղթակցություններին պատասխանելու դեպքում անհապաղ երևան կգա ընթերցողների նամակների նոր հոսանք» (Պարտիական և սովետական մամուլի մասին, էջ 322):

Այս հանգամանքը հատուկ նշանակություն ուներ մեր հանրապետության մասսայական-գյուղացիական թերթի՝ «Մաճկալ»-ի համար: Խմբագրությունը հաճախակի անդրադառնում էր թերթի էջերում տպագրվող գյուղացիների նամակներին, հետամուտ լինում նրանց առաջարկների ու պահանջարկների կենսագործմանը: «Մաճկալ»-ին մեծապես օգնում էր «Խորհրդային Հայաստան»-ը. արտատպում և համապատասխան կազմակերպությունների ուշադրությանն էր ներկայացնում գյուղացիական թերթի կարևորագույն ելույթները, տպագրում էր մամուլի տեսություններ, առաջնորդողներ էր նվիրում ընթերցողների հետ թերթի կապերի ընդլայնման, պարբերականի տարածման հարցերին, քննադատում գյուղացիների նամակների նկատմամբ ցուցաբերվող անտարբերության փաստերը...

Նշելով, որ միայն մեկ տարում «Մաճկալ»-ում տպագրվել է մոտ երեք հազար գյուղական թղթակցություն, «Խորհրդային Հայաստան-ը հիշեցնում էր, որ դրանցում «...արծարծված մտքերն ու առաջարկությունները մեր կյանքի բազմազան մանր ու մեծ հարցերի մասին այնպիսի ուշադիր վերաբերմունքի չեն արժանանում, ինչպես Ռուսաստանում»: «...Գյուղացիների նամակները պետք է հատուկ ուշադրության արժանանան, օգտագործվեն, խնամքով ուսումնասիրվեն մեր համապատասխան հիմնարկների կողմից»,—գրում էր թերթը (1927 թ., № 86):

* * *

Առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում բանգյուղթղթակցական շարժման, թերթերի մասսայականությունն ապահովելու և բանվորական բաժնի աշխատանքներն աշխուժացնելու խնդիրների քննարկումը սովետահայ մամուլում՝ այդ ասպարեզում «Правда»-ի և Ռուսաստանում ու Անդրկովկասում լույս տեսնող կուսակցական-սովետական պարբերականների դրական փորձի օգտագործման առնչությամբ: Սովետահայ մամուլի զարգացման առաջին տարիներին, մասնավորապես, գավառական տեղական պարբերականների համար կենսական կարևորություն էր ստացել լայն մասսաների հետ սերտորեն կապվելու խնդիրը:

Այս տեսանկյունից էլ անդրադառնալով «մեր առօրյա մամուլին», «Խորհրդային Հայաստան»-ը ընդգծում էր, որ այն «շատ քիչ է կապված լայն մասսաների հետ»: Նման կապի անբավարարությամբ էր բացատրում թերթը տեղական կյանքի դժգույն արտացոլումը մամուլի էջերում. «Կարդում ես տեղեկություններ գավառներից. չոր ու ցամաք լրագրային ինֆորմացիա, իսկ գավառներում կատարվում է կրակոտ աշխատանք, կարդում ես կոնֆերանսների մասին, իսկ որքա՞ն է այնտեղ բնորոշիչը մեր անցուդարձի համար, մեր մասսաների հայեցակետի համար. հարցումներ կան, խոսքեր ու զրույցներ կան: Մենք ապրում ենք այնպիսի պատմական մոմենտ, երբ ամեն մի խոսքը հետագայում գնահատվելու է շատ թանկ: Եվ այդ մասսաների ապրումների արթնանալը, ձգտումը դեպի լույս անմիջականորեն, իրենց խոսքերով և ձևով չեն արձանագրվում»: Մամուլի այս էական բացը վերացնելու համար թերթը կոչ էր անում բանգյուղթղթակիցներ ունենալ և նրանց աջակցությամբ տեղերում կատարվող «կրակոտ աշխատանքը» արտացոլել մամուլի էջերում՝ հետևելով Սովետական Ռուսաստանի մամուլի ուսանելի օրինակին. «Պետք է ոտքի կանգնեցնել մեր կուսակցական և խորհրդային ապարատը և սկսել լայն ագիտացիա Հայաստանի բոլոր վայրերում: Պետք է ստեղծել բանվորական և գյուղացիական կորեսպոնդենտներ, այնպես, ինչպես այդ վաղուց ունեն ռուսական «Правда»-ն և «Беднота»-ն, Մոսկվայի «Рабочая газета»-ն» (1922 թ., № 287): «Խորհրդային Հայաստան»-ի այս ելույթը փաստորեն բանգյուղթղթակցական շարժում կազմակերպելու առաջին կոչն էր սովետահայ մամուլում:

Կարևոր նշանակություն տալով բանվորների թղթակցությանը մամուլին, որով, մի կողմից՝ ավելի լավ կարտացոլվեր բանվորական կյանքը, մյուս կողմից՝ ըստ պատշաճի կարծարծվեին արտադրության կազմակերպման հարցերը յուրաքանչյուր կոնկրետ ձեռնարկությունում, սովետահայ թերթերը կոչ էին անում բանվորներին՝ «հրապարակ գալ» իրենց խոհերով ու նկատառումներով, պարբերաբար նյութեր ուղարկել՝ խմբագրություններին հնարավորություն ընձեռելով լույս ընծայելու Բանվորական էջիկներ: «Խորհրդային ֆեդերացիայի խոշոր կենտրոններում այդ բանն արդեն սկսված է և ուժեղ թափով առաջ է գնում,— գրում էր բանվոր թղթակիցներից մեկը:—Բանվորական լայն էջիկներ ունեն Մոսկվայի «Правда»-ն, Բաքվի «Бакинский рабочий»-ն և Թիֆլիսի «Заря Востока»-ն ու «Մարտակոչ»-ը և ուրիշ այլ շատ թերթեր: Մենք՝ Երևանի բանվորներս էլ պիտի լցվենք բարի նախանձով և հավասարվենք նրանց» («Խորհրդային Հայաստան», 1923, № 112): 1924 թվականի ամռանը «Խորհրդային Հայաստան»-ի խմբագրությունը «Правда»-ի Բանվորական կյանք բաժնից և բանթղթակիցների բյուրոյից ստացավ շրջաբերական



նամակ՝ ուղղված բոլոր բանվորական թղթակիցներին: Մի շարք համարներում շարունակաբար հրապարակելով կոնսուլտացիոն բնույթի այդ կարևոր նյութը, խմբագրությունը կոչ էր անում թղթակիցներին՝ ուշադրությամբ կարդալ ու հետևել այդ հոդվածաշարքին:

Բանգյուղթղթակցական շարժման հետագա ծավալումն ու ճիշտ ղեկավարությունը, աշխատավորական լայն զանգվածների հետ խմբագրությունների կապի ամրապնդումն ու ընդլայնումը «Правда»-ն համարում էր մեր երկրում մամուլի գործունեության բարելավման ու առաջընթացի կարևորագույն խթաններից մեկը, մամուլի օրգանների առջև դրված խնդիրների հաջող կենսագործման երաշխիքը: Սկզբունքային նշանակություն ունեցող այս ըմբռնումն իր արտահայտությունը գտավ նաև ողջույնի այն խոսքում, որ հղեց «Правда»-ն «Խորհրդային Հայաստան»-ի խմբագրությանը՝ թերթի 1000-րդ համարի լույսընծայման առթիվ:

Իրականության ճշմարտացի արտացոլումը, թերությունների պատճառների հետևողական բացահայտումը և ծրագրվող աշխատանքների քննարկումն ու մասսայականացումը մամուլի գործունեության արգասավորության նախապայմանն են: Սովետահայ մամուլում ի սկզբանե կարևորագույն նշանակություն ստացավ նոր տիպի մամուլին վերապահված կոլեկտիվ կազմակերպչի դերի պարզաբանումը: Այդ խնդիրը ծառանում էր մամուլի առջև ամեն անգամ, երբ կուսակցությունն առաջադրում էր լուծել այս կամ այն պրոբլեմը ժողովրդական տնտեսության զարգացման, երկրի պաշտպանունակության ամրապնդման, գաղափարական աշխատանքի և կուլտուրական շինարարության ասպարեզներում: Բոլոր կուսկոմիտեներին և կուսանդամներին ուղղված շրջաբերականում (1922 թ. դեկտեմբեր) ՀԿԿ Կենտկոմը առաջադրելով թերթերի էջերում «մեր շինարարական աշխատանքը իր բազում ծալքերով լիովին արտացոլելու» խնդիրը, ընդգծում էր, որ մամուլը կոչված է «լինելու մեր ամենօրյա գործնական աշխատանքի դրդիչ, ղեկավար, սրբագրող»: Մամուլի՝ իբրև կոլեկտիվ կազմակերպչի դերը ինքնին արդեն անհարիր է կրավորականության հետ. նա պիտի հարցեր հարուցի, խնդիրներ առաջադրի՝ ջանալով ճիշտ հունի մեջ դնել հասարակական կարծիքի ձևավորման ընթացքը. նա պիտի յուրովի ուղղություն տա, ղեկավարի մասսաների ստեղծագործական աշխատանքը, հսկի ընդհանուր գործի շահերից բխող ամեն մի նախաձեռնության կենսագործմանը. վերջապես, նա պիտի աչալրջորեն հետևի կյանքի բոլոր ասպարեզներում տարվող գործնական աշխատանքներին և այս կամ այն միջոցառման ձախողման վտանգ զգալու դեպքում ահազանգի թերացումների, միտումնավոր կամ ակամա թույլ տրված սխալների, դանդաղկոտության, գլխավոր ուղուց կատարվող խոտորումների մասին: Թերթը պետք է հետևողականություն հանդես բերի բացահայտված թերությունների վերացման գործում և կոնկրետ միջոցառումներ նշելուց բացի հետևի դրանց կենսագործմանը:

«Правда»-ի փորձը հաստատում էր նաև, որ մեր կուսակցության կենտրոնական օրգանում միշտ միասնաբար են հանդես գալիս կազմակերպչական աշխատանքը և դաստիարակչական գործունեությունը. նա ո՛չ միայն արտացոլում, արձանագրում էր կատարվող աշխատանքի արդյունքները, այլև «...ամենալայն, մանրամասն քննությամբ էր զբաղվում բոլոր այն խնդիրներին, որոնց լուծման վրա են աշխատում կուսակցությունն ու կառավարությունը»: Մեր մամուլը, նշում էր «Խորհրդային Հայաստան»-ը, «կոչված է կազմակերպչական, դաստիարակչական վիթխարի գործ կատարելու սոցիալիստական շինարարության ասպարեզում, մասսաների կուլտուրական վերելքի գործում» (1926, № 104):

* * *

«Правда»-ի գործնական աշխատանքի փորձից ստեղծագործաբար օգտվելուն զուգընթաց՝ սովետական ամբողջ մամուլի համար կարևոր էին նաև կուսակցության կենտրոնական օրգանի ելույթները մեր երկրի պարբերական մամուլի առջև ծառացած կոնկրետ խնդիրների վերաբերյալ: Առաջնորդողնե-

րում, մամուլի տեսություններում և առանձին հոդվածներում «Правда»-ն հաճախ անդրադառնում էր պարբերականների կատարած աշխատանքին, միութենական ամբիոն բարձրացնում դրական փորձը, կենսականն ու կենսունակը, միաժամանակ ցույց էր տալիս, ամենայն խստությամբ քննադատում սխալները, թերություններն ու խոտորումները, միշտ հիշեցնելով մամուլին վերապահված անփոխարինելի դերը սոցիալիստական շինարարության մեջ։ Բերենք մի երկու օրինակ։

Արտադրության ինքնարժեքի իջեցման և խնայողության ռեժիմի կիրառման հարցերը, որ կենտրոնական թեմաներ էին մեր երկրի ողջ մամուլի համար, լայնորեն քննարկվեցին նաև 1926—1930 թվականների սովետահայ պարբերականներում («Խորհրդային Հայաստան», «Ավանգարդ», «Բանվոր», «Գյուղի կոմունիստ», «Լենինյան ուղի», «Խորհրդային շինարարություն», «Կոոպերացիա» և այլն)։ Այդ կամպանիաների ծավալման սկզբնական շրջանում սովետական մամուլում ի հայտ եկան ընդհանուր բնույթի մի քանի թերություններ, որոնցից զերծ չէին նաև մեր հանրապետությունում այդ ժամանակ լույս տեսնող պարբերականները։ Անհրաժեշտ էր սկզբից ևեթ կանխել վրիպումները, ճիշտ հունի մեջ դնելով մամուլի կազմակերպչական-դաստիարակչական աշխատանքը այդ կարևորագույն սոցիալիստական միջոցառումների կենսագործման ուղղությամբ։ «Правда»-ն գտնում էր, որ առանձին ձեռնարկությունների աշխատանքը պետք է գնահատել ո՛չ միայն ըստ արտադրանքի ծավալի ու որակի, այլև նկատի պիտի ունենալ արտադրության էժանացման ասպարեզում ձեռք բերված արդյունքները և «մամուլի էջերում... բազմակողմանիորեն քննել բարձր ինքնարժեքի և համանման ձեռնարկություններում կատարվող ծախքերի անթույլատրելի զանազանությունների պատճառները» («Правда», 1926 թ., № 224, սեպտեմբերի 29)։ Շուտով սովետահայ պարբերականներում սկսեցին լույս տեսնել «Правда»-ի այս առաջադրանքների ոգով գրված տարբեր բնույթի նյութեր (սկսած խմբագրականներից մինչև ինֆորմացիաները), որոնք զգալի չափով նպաստեցին մեր հանրապետության գործարաններում, հանքերում և այլ ձեռնարկություններում արտադրական նոր հնարավորությունների հայտաբերմանը, ինքնարժեքի իջեցմանը, անարտադրողական ծախսերի մաքսիմալ կրճատմանը։

«Правда»-ն ուղղություն տվեց նաև հանուն խնայողության ռեժիմի սովետական մամուլի ծավալած գործունեությանը, բացահայտելով ու քննադատելով այդ կամպանիան կիրառելիս թույլ տրված սխալներն ու վրիպումները, ամենայն սրությամբ հարուցեց մամուլի պատասխանատվության բարձրացման խնդիրը։ Նշելով, որ երկրի ինդուստրացման համար կարևոր նշանակություն ունեցող այդ միջոցառումը դեռևս անբավարար է արտացոլվում մամուլի էջերում, հատկապես հանրապետական և տեղական պարբերականներում, «Правда»-ն գրում էր, որ խնայողության ռեժիմի ոչ ճիշտ կիրառման համար պատասխանատու են հասարակական կազմակերպությունները, ինչպես և մամուլը. մինչդեռ վերջինս ուշադրություն է նվիրում հաճախ մանր, երբեմն էլ չստուգված փաստերի, հարկ եղած չափով հաշվի չի առնում տվյալ ձեռնարկության աշխատանքներն ու նվաճումները. «Մի քանի տեղերում սկսված կամպանիան ընդունել է տնտեսվարների վրա հարձակվելու բնույթ, նկատվում է ձգտում դեպի սենսացիան» («Правда» 1926 թ., հունիսի 17)։ Հաղթահարելով նման կարգի թերությունները, սովետահայ մամուլը մեծապես օգնեց մեր հանրապետության կուսակցական ու տնտեսական կազմակերպություններին՝ խնայողության ռեժիմի ճիշտ կիրառման, ինդուստրացման քաղաքականության հետևողական կենսագործման համար մղված պայքարում։

Կարևոր նշանակություն ունեցան «Правда»-ի ելույթները սոցիալիստական շինարարության կազմակերպման զորեղ գործոնի՝ ինքնաքննադատության ծավալման և ճիշտ կիրառության վերաբերյալ։ Հայտնի է, որ երբ հրապարակ եկավ բոլշևիկյան ինքնաքննադատության լոզունգը, գրեթե միաժամանակ «հեղափոխական զգուշավորության» դիրքերից ձևավորվեց հայտնի մտավախությունը՝ թշնամին կօգտագործի մեր ինքնամերկացումները։ «Правда»-ն ժամանակին հակահարված տվեց այդ մտայնության արտահայտություն-



ներին՝ պայքարելով ինչպես ինքնաքննադատության նկատմամբ անհանդուրժողականության, այնպես էլ այդ լոզունգի գռեհկացման, դրան «խծբծանքի բնույթ ու ձև» տալու փորձերի դեմ։ «Մեր մամուլը և, մանավանդ, կենտրոնական ու խոշոր արդյունաբերական շրջանների մամուլը,— գրում էր «Правда»-ն Ինքնաքննադատության մասին խմբագրական հոդվածում,— այնպես պարզորոշ ու ցայտուն է արտահայտում դեպի ինքնաքննադատությունը բռնած մեր կուրսը, որ մեր արտասահմանյան թշնամիներն ու հակառակորդները այդ մամուլում երևացող մերկացումներն ամեն կերպ աշխատում են օգտագործել իրենց սեփական նպատակների համար»։ Սակայն դա չի կարող շփոթության մեջ գցել մեզ, շարունակում էր կուսակցության կենտրոնական օրգանը և ապա կոչ էր անում մամուլի էջերում ավելի համարձակ, հետևողականորեն ծավալել ու խորացնել բոլշևիկյան առողջ ինքնաքննադատությունը. որպեսզի հաջողությամբ պսակվի այն հսկայական, բազմակողմանի աշխատանքը, որին ձեռնարկել է մեր կուսակցությունը սոցիալիզմի շինարարության համար, ընդգծում էր «Правда»-ն, «մեզ քննադատություն է հարկավոր. ոչ թե «կողմնակի» մի քննադատություն, որ պրոլետարիատի դիկտատուրայի թշնամիներից է գալիս, այլ բանվորներից և աշխատավոր մասսաներից բխող ինքնաքննադատություն, որովհետև մեր պրոլետարական իշխանությունն այդ մասսաներից է քաղում այն բոլոր ուժերը, որ անհրաժեշտ են սոցիալիստական շինարարության համար և թշնամիներին հակահարված տալու համար» («Правда», 1928 թ., մարտի 23)։

Ինքնաքննադատության լոզունգը հետևողականորեն, մինչև վերջ կենսագործելու ուղղությամբ խոշոր աշխատանք ծավալեցին սովետահայ պարբերականները, մասնավորապես «Խորհրդային Հայաստան»-ը, «Բանվոր»-ը, «Ավանգարդ»-ը։ Նրանք կիրառում էին լրագրային աշխատանքի տարբեր եղանակներ, հրապարակախոսության զանազան միջոցներ։ Այդ շրջանում զգալիորեն աշխուժացավ թերթերի ոճը. հոդվածները, թղթակցությունները, ելույթներն ու նամակները դարձան առավել նպատակասլաց ու հակիրճ, դիպուկ ու խոսուն վերնագրերը առաջին իսկ հայացքից գրավում էին ընթերցողի ուշադրությունը։

Սովետահայ մամուլի՝ որպես կոլեկտիվ կազմակերպչի՝ հնարավորությունները լայնորեն դրսևորվեցին նաև սոցիալիստական մրցության հարցերի լուսաբանման ընթացքում։ Մեր հանրապետությունում լույս տեսնող թերթերն ու հանդեսներն այս ուղղությամբ տարվող տեսական, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը զուգակցում էին գործնական քայլերի հետ՝ կազմակերպում ռեյդեր, թղթակցային կետեր, հսկիչ պոստեր էին ստեղծում գործարաններում, հանքերում, շինարարական տեղամասերում։ Քիչ չէին նաև արձագանքները «Правда»-ի, «Заря Востока»-ի, «Бакинский рабочий»-ի ելույթներին, որոնք նվիրված էին սոցիալիստական մրցության կազմակերպմանը։

* * *

«Правда»-ի խմբագրությունը կարևոր նշանակություն էր տալիս ազգային հանրապետությունների կյանքի բազմակողմանի արտացոլմանը։ Այդ գործի հաջող կազմակերպման նպատակով օգտագործվում էր ամեն մի հարմար առիթ, թղթակցային ակտիվի ստեղծման ու ընդլայնման յուրաքանչյուր հնարավորություն։ Ազգային հարցի վերաբերյալ Մոսկվայում կայացած խորհրդակցության ժամանակ, 1923 թվականի ամռանը, «Правда»-ի խմբագրությունը դիմեց պատվիրակներին՝ խնդրելով «անել հնարավոր ամեն բան... «Правда»-ին համապատասխան թղթակցություններ ուղարկելու համար»։ Խմբագրությունը նշում էր, թե ինչ տիպի նյութեր է ցանկանում ստանալ և խոստանում էր դրանց հիման վրա առանձին էջեր հատկացնել ազգային հանրապետություններին։ Այդ դիմում-կոչը ՀԿԿ Կենտկոմն ուղարկեց հանրապետության բոլոր գավկոմներին, առաջարկելով «անել ինչ, որ անհրաժեշտ է՝ «Правда»-ի հետ թղթակցային կապ հաստատելու համար»։ Դրանից հետո

թերթի խմբագրությունում զգալի չափով ավելացան մեր հանրապետությունից ստացվող թղթակցությունները։

Արխիվային մի շարք փաստաթղթեր, ինչպես նաև մամուլում հրապարակված նյութերը հավաստում են նաև, որ Հայաստանում հետևողական ու լայն աշխատանք էր ծավալվել «Правда»-ն տարածելու, նրա խոսքը ամենալայն զանգվածներին հասցնելու ուղղությամբ։ Այդ կարևորագույն գործը նոր թափ ստացավ, մասնավորապես, 1931 թվականի հունիսին, երբ «Правда»-ի խմբագրությունը որոշում կայացրեց Անդրկովկասում տարածվող «Правда»-ի տիրաժը հրատարակել Թիֆլիսում։ Այս միջոցառումը քաղաքական խոշոր նշանակություն ուներ։ ՀամԿ(բ)Կ Անդրերկոմը այս առթիվ ընդունեց հատուկ որոշում, որի նպատակն էր ավելի բարելավել «Правда»-ի տարածման գործը անդրկովկասյան հանրապետություններում. մշակվեցին մի շարք միջոցառումներ, որոնց շնորհիվ բաժանորդների թիվը Անդրկովկասում պետք է հասցվեր 100 000-ի։ Նշելով, որ այս կապակցությամբ լուրջ պարտականություններ են դրվում նաև Հայաստանի կուսակցական-սովետական կազմակերպությունների, մամուլի տարածմամբ զբաղվող հիմնարկների, ինչպես նաև հանրապետական ու շրջանային թերթերի և բոլոր բանգյուղթղթակիցների վրա, «Խորհրդային Հայաստան»-ը գրում էր, որ «Правда»-ի Թիֆլիսում հրատարակվելը ազդակ պետք է դառնա կուսակցության կենտրոնական օրգանը գործարանի ամեն մի առաջավոր բանվորին, իսկ գյուղում՝ «յուրաքանչյուր առաջավոր խորհտնտեսականին ու կոլտնտեսականին, ինչպես և անհատական տնտեսատեր չքավոր ու միջակ գյուղացիներին» հասցնելու համար (1931, № 142)։ Սովետահայ պարբերականները տպագրում էին տվյալներ «Правда»-ի տիրաժի բարձրացման, տարածման ոլորտների ընդլայնման մասին, ընդգծում նրա բացառիկ ծառայությունները սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում, մեր երկրում մամուլի զարգացման գործում։

Այսպիսով՝ սովետահայ պարբերական մամուլի զարգացման առաջին տասնամյակում, որ բնորոշվում է իբրև նոր տիպի մամուլի սկզբունքների ձևավորման ու արմատավորման, պարբերականների կազմակերպման ու ակտիվ գործունեության մի ժամանակաշրջան, լենինյան ավանդների կենսագործմանը զուգընթաց՝ կարևոր նշանակություն ունեցավ «Правда»-ի հարուստ փորձի օգտագործումը։ Ճշմարիտ և արգասավոր մի ուղի էր այդ, որով ընթանալով՝ սովետահայ մամուլը նորանոր նվաճումների էր հասնելու նաև հետագա տարիներին։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՇՐՋԿՈՄԸ ԵՎ ԻՐ ՕՐԳԱՆԸ

Մյուս թերթերի ու ամսագրերի հետ շաբաթական երեք անգամ ընթերցողներին է մատուցվում նաև անհամեմատ փոքր ծավալով մի թերթ, որին հատուկ սիրով են սպասում մարդիկ։

— «Այգաբաց» կա՞,— հարցնում են անհամբեր։

— Կա՛, իհարկե, կա,— պատասխանում է փոստատարը։

Հետո փոքր լռություն է տիրում. ընթերցողը շտապ շուռ է տալիս թերթի էջերը, որոնում իրեն հետաքրքրող հոդվածը, թղթակցությունը կամ ինֆորմացիան իրենց կոլտնտեսության, սովխոզի, ձեռնարկության, հարևանի մասին, ու վերսկսում է ընդհատված խոսակցությունը, որը հաճախ տաք վիճաբանության է փոխվում...

Ես այն կարծիքին չեմ, թե այդպես է միայն մեզ մոտ։ Բնական է, շրջանային թերթը, առաջին հերթին, պետք է հետաքրքրի շրջանի մարդկանց, որքան էլ այն դժգույն լինի, որքան էլ թույլ լուսաբանի տեղական կյանքը։ Չէ՞ որ շրջանային թերթը եղել և մնում է ընթերցողի իղձերի ու ցանկությունների առաջին արտահայտիչը։ Իրոք, դժվար է պատկերացնել շրջանն առանց թերթի, առանց այն ամբիոնի, որտեղից կուսակցական կազմակերպությունները կոմունիստներին, ողջ աշխատավորությանը լուսաբանում են ո՛չ միայն օրվա հրատապ հարցերը, այլև պարզաբանում հեռանկարային պրոբլեմները, դրանով իսկ մասսաներին նախապատրաստում մեծ խնդիրների կենսագործման համար։

Արդեն երկու տարի է, ինչ ՀԿԿ Շամշադինի շրջկոմի և շրջսովետի օրգան «Այգաբաց» թերթը վերսկսել է հրատարակվել։ Թերթի վերստին հրատարակումը շրջանի աշխատավորները ցնծությամբ ընդունեցին։ Չէ՞ որ դա կարևոր իրադարձություն էր նրանց կյանքում։

Կուսակցական շրջանային կոմիտեն շահագրգռված էր թերթի վերականգնման հարցով, քանի որ այն կոչված է մոտիկից ու սիստեմատիկորեն լուսաբանելու շրջանում ծավալվող տնտեսական ու կուլտուրական շինարարության հրատապ հարցերը, շրջանի կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների առօրյան, վեր հանելու եղած թերությունները։ Թերթի միջոցով մենք կապվում ենք մասսաների հետ, բարձրացնում նրանց ակտիվությունը։

Եվ այժմ, մենք ուրախությամբ ենք նշում, որ թերթը գտել է իր ճիշտ ուղին և այս հարցում մեր մտահոգություններն ու տևական աշխատանքը տվել է իր արդյունքը։ «Այգաբաց»-ն ունի իր սեփական դեմքը. տեղական կյանքի

լուսաբանման հետ միասին, նա պրոպագանդում է մեր կուսակցության ու կառավարության մեծ կանխագծումները և մասսաներին կազմակերպում ու մոբիլիզացնում դրանց կենսագործման համար։

Թերթի առաջնահերթ խնդիրներից մեկը սոցիալիստական մրցության ծավալումն է, նրա հրապարակայնության ապահովումը։ Այս կապակցությամբ ուզում եմ պատմել մեր թերթի բազմաթիվ լավ գործերից միայն մեկի մասին։ 1964 թվականին շրջանի երկու կոլտնտեսություններ (Ղըզլի և Մովսեսի) դարձան միլիոնատերեր։ Երբ շրջանային կոմիտեում (և ոչ միայն այնտեղ) հանգամանորեն վերլուծեցին այդ տնտեսությունների հաջողությունների հիմնական գործոնները, խոսք եղավ նաև Այգեձորի կոլտնտեսության մասին։ Պարզվեց, որ այն նույնպես ռեալ հնարավորություններ ունի միլիոնատեր դառնալու։ Այգեձորցիների հետ խորհրդակցելուց ու հաշվարկներ կատարելուց հետո, նրանք համոզվեցին, որ իրենց կոլտնտեսությունը ևս կարող է միլիոնատեր դառնալ։ Միայն անհրաժեշտ է ուժերի մեծ լարում, նոր ռեզերվների հայտաբերում ու գործադրում։

Եվ ահա շրջանային թերթն օգնության եկավ, ասաց իր խոսքը։ Տնտեսական տարում, ինչպես ասում են, հանգիստ չտրվեց այգեձորցիներին, հիշեցնելով, որ պետք է հասնել միլիոնատերերին։ Թերթն սկսեց էջեր տրամադրել այդ տնտեսության տարբեր բնագավառների աշխատողներին՝ սկսած կոլտնտեսության նախագահից մինչև շարքային կոլտնտեսականը։ Դրվատելով կոլտնտեսությունում կատարվող լավագույն աշխատանքը, եղած ռեզերվների օգտագործումը, թերթը միաժամանակ քննադատում էր թերությունները, ցույց տալիս առաջավորներին հասնելու միջոցները։ Շրջանային կոմիտեն աջակցում էր թերթի՝ այդ ուղղությամբ տարվող աշխատանքներին։ Այսպես էին վարվում նաև կոլտնտեսության վարչությունն ու կուսկազմակերպությունը։ Միացյալ ջանքերը, ծավալված մրցությունը, հետևողականությունն ու անդուլ աշխատանքը տվեցին դրական արդյունքներ։ Այգեձորի կոլտնտեսությունը դարձավ շրջանի՝ միլիոնատեր երրորդ տնտեսությունը։ Այդ գործում, անշուշտ, իր մեծ բաժինն ունի «Այգաբացը»։

Շրջանային կուսկազմակերպությունը թերթի միջոցով մրցության կազմակերպման ուշագրավ պրակտիկա ունի։ Ամեն տնտեսական տարվա սկզբին, երբ կոլտնտեսություններում տեղի են ունենում հաշվետու կամ հաշվետու-ընտրական ժողովներ, ընդունվում են սոցիալիստական պարտավորություններ։ Թերթը նյութեր է հրապարակում այդ ժողովների և վերցված պարտավորությունների մասին, իսկ այնուհետև ժամանակ առ ժամանակ անդրադառնում այդ պարտավորություններին, դրանց կատարման ուղղությամբ ձեռք բերած հաջողություններին, ինչպես նաև դեռևս եղած թերություններին։ Դա կուսակցական կազմակերպություններին պահում է մոբիլիզացիոն վիճակում. նրանք քաջ գիտեն, որ ամեն մի թերացում կարող է քննադատության ենթարկվել թերթի, հետևաբար և շրջանային կոմիտեի կողմից։ Սա, ինչ խոսք, կարգապահության է սովորեցնում կազմակերպություններին, մեր բոլոր կադրերին, որպեսզի նրանք հարգեն սեփական խոստումը, անպայմանորեն գործի վերածեն ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Կադրերի ճիշտ ընտրության և նրանց հանձնարարված գործի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու հարցը կուսակցական աշխատանքի հաջողության հիմքն է։ Այս ուղղությամբ ևս թերթը չի գլացել իր պարտականություններում։ Թերթում ենք «Այգաբաց»-ի անցած երկու



տարվա համարները և համակվում օրինական հպարտությամբ. ինչպիսի՜ բեղմնավոր աշխատանք է կատարել խմբագրության կոլեկտիվը։ Իսկ դա սկսվեց այն բանից հետո, երբ շրջանային կոմիտեն իր պլենումներից մեկում քննարկեց կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության ուղղությամբ կուսկազմակերպությունների կատարած աշխատանքը։

Թերթում երևան եկան առաջին նյութերը։ Տպագրվեցին թեմատիկ առաջնորդողներ՝ **Կուսկազմակերպության քարտուղարը, Բրիգադավարը, Մասնագետը, Մեխանիզատորը** և այլն, որտեղ օրինակելի, սրտացավ կոմունիստի ու ղեկավարի, արտադրության վերելքի համար ջանացողների մասին դրական խոսք ասելու, նրանց փորձը պրոպագանդելու և մասսայականացնելու հետ միասին քննադատվել են և՛ գործում թերացողները։

**Արտադրության մեր հրամանատարները** խորագիրն ունեցող ակնարկաշարն ու հոդվածները նույնպես մարդկանց օգնում էին տեսնելու աշխատանքում եղած դրականն ու խրախուսելին, թերությունները։ Լրագրային աշխատանքի հիշյալ ձևը կադրերի պատասխանատվության բարձրացման գործում կարևոր է, և մենք ամեն կերպ ձգտում ենք, որպեսզի այդ թեմատիկան շարունակի մնալ թերթի էջերում։

Առաջավոր փորձի, արտադրական որևէ տեղամասի հաջողության պրոպագանդան, տարածումն ու արմատավորումը կուսակցական աշխատանքի անկապտելի մասն է։ Ու եթե թերթը կարողանում է այս ամենն արտացոլել իր էջերում, ուրեմն այն մեծ չափով նպաստում է հաջողության ապահովմանը։ Ահա մի օրինակ. Վերին Կարմիր Աղբյուր գյուղի կոլտնտեսության խոզաբուծական ֆերման մսի արտադրության ավելացման, ծախսերի կրճատման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ զգալի հաջողության է հասել։ Մամուլի սրատես աչքից չվրիպեց այդ։ Դեռևս 1965 թվականին թերթը մի ամբողջ էջ նվիրեց ֆերմայի մարդկանց, պատմեց նրանց հաջողությունների և դրանց հասնելու ուղիների մասին։ Շրջանում ամենուր սկսեցին խոսել այդ կոլտնտեսության խոզաբույծների և նրանց շնորհալի ղեկավար, զոոտեխնիկ Մելիք Ավագյանի մասին։ Սրանց լավագույն աշխատանքի շնորհիվ ֆերման անցյալ տարի տվել էր ավելի քան 100 հազար ռուբլու եկամուտ, որից 60 հազարը՝ զուտ եկամուտ։ Եվ ահա կրկին թերթում երևում է ծավալուն հոդված (այս անգամ պատմում է ինքը՝ ֆերմայի վարիչը)։ Կուսակցության շրջանային կոմիտեն բոլոր տնտեսությունների ղեկավարներին և կուսկազմակերպությունների քարտուղարներին հանձնարարել է հանգամանորեն ուսումնասիրել այդ առաջավոր փորձը և արմատավորել այն։

Թերթն իր էջերում լայնորեն պրոպագանդել է նաև Այգեձորի կոլտնտեսային կուսկազմակերպության փորձը՝ կուսխմբերի աշխատանքների կազմակերպման ու գլխավորման ուղղությամբ, ծխախոտի հումքի որակի բարձրացման գործում Մովսեսի կոլտնտեսության հաջողությունները և այլն։

Մեր կուսակցությունն ու կառավարությունը, հետևողականորեն վարում են աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ վերելքի կուրս։ Դրա ապացույցը Կենտրոնական կոմիտեի 1965 թվականի մարտյան և սեպտեմբերյան պլենումներն են, ՍՄԿԿ XXIII համագումարի ու Կենտկոմի հետագա պլենումների մեծ կանխագծումները, որոնց պտուղներն այսօր տեսնում է մեր աշխատավորը։ Ոչ միայն այդ միջոցառումների պրոպագանդան, այլև դրանց կոնկրետ արդյունքները թերթի էջերում լավ են լուսաբան-

վել (տվյալ դեպքում մեր շրջանի աշխատավորների համար)։ Բանն այն է, որպեսզի մեր կոլտնտեսականը, ինչպես ասում են, շոշափի, իր աչքով տեսնի կուսակցության ու կառավարության որևէ միջոցառման նյութական կողմը։ Դա մեծ նշանակություն ունի մարդկանց վաղվա օրվա նկատմամբ հավատ ներշնչելու, հետևաբար և նրանց ուժերը մոբիլիզացնելու տեսակետից։ Ու եթե այսօր գյուղի աշխատավորն ավելի ոգևորված է աշխատում, դա այն բանի շնորհիվ է, որ նա կոնկրետ հաշվարկներ է անում ու համոզվում, որ, օրինակ, մարտյան պլենումի որոշումների կենսագործմամբ իրենց տնտեսությունը լրացուցիչ ստացել է, ասենք՝ 100 հազար ռուբլի, կամ նա տեսնում է մելիորացիոն աշխատանքներն ու համոզվում, որ դա իր համար է։ Թերթն այդ կապակցությամբ հետաքրքրական, առանց ճառայնության, համոզիչ փաստերով հագեցած հոդվածներ է տպագրել։

Եթե վերը նշվածին ավելացնենք այն, որ մարդու կատարած աշխատանքը պետք է գնահատվի նաև թերթում, ապա պարզ կդառնա կուսակցության և կառավարության միջոցառումների ու դրանց կոնկրետ արդյունքների լուսաբանման գործում նրա մեծ դերը։ Այս տեսակետից հատկանշական է մի փաստ։ Մեր շրջանի գյուղատնտեսության 105 առաջավոր անցյալ տարի արժանացան շքանշանների ու մեդալների։ Շրջկոմը նպատակահարմար գտավ թերթի էջերում տեղ տալ հատկապես շարքայիններին, պատմել, թե ինչպիսի հայրենանվեր աշխատանքի համար է այս կամ այն առաջավորն արժանացել կառավարական բարձր պարգևի։ Եվ թերթը ոչ-ստանդարտ ձև ընտրեց։ Նա գտավ առաջավորներից ամեն մեկի առանձնահատուկը, գնահատելին, օրինակելին և բազմապիսի ձևերի ու հնարանքների միջոցով այն դարձրեց բոլորի սեփականությունը։

Մենք մի լավ տրադիցիա ենք մշակել և աշխատում ենք այն ավելի խորացնել։ Դա թերթի ինքնուրույն, ստեղծագործական աշխատանքին լայն տեղ տալն է։ Թերթը պետք է նախաձեռնողի դերում հանդես գա, հուշի, հիշեցնի այն, ինչ երբեմն մոռացվում է կամ ժամանակին չի արվում։ Իսկ եթե այդպես չլինի, կմեռնի նախաձեռնությունը, չի շոշափվի նոր հարցեր, թերթը կդառնա տաղտկալի։ Այս տեսակետից երկու խոսք եմ ուզում ասել մեր թերթի մի նախաձեռնության մասին։ Անցյալ տարվա ամռանը թերթում ժողովրդական լայն քննության դրվեց շրջանը հանցագործություններից զերծ գոտի դարձնելու հարցը։ Թվում էր, թե խմբագրության կոլեկտիվն անհիմն գործ է սկսել և որևէ հաջողության հասնել չի կարող։ Սակայն, այդ միայն թվում էր։ Իրականում լայնորեն քննարկվեցին մասսաների կոմունիստական դաստիարակության շատ կարևոր հարցեր, որոնց մասին թերթի էջերում իրենց խոսքն ասացին մանկավարժներ, հեղափոխության ու Հայրենական պատերազմի վետերաններ, կոմերիտականներ, տնտեսությունների ղեկավարներ, դատաքննչական օրգանների աշխատողներ, արտադրության մարդիկ, որոնք, դաստիարակության ուղղությամբ իրենց և շրջապատի թերությունները անկեղծորեն վեր հանելուց բացի, ցույց տվեցին դրանց վերացման ուղիները։ Շրջանային կոմիտեն լիովին համամիտ էր թերթի ելույթներին։ Այնուհետև շրջանը հանցագործություններից զերծ գոտի դարձնելու մասին մենք լուրջ խոսակցություն սկսեցինք ժողովներում, երիտասարդական հավաքներում և այլուր, որոնց դրական արդյունքները գնալով ակնառու էին դառնում։

Ամբողջ գաղտնիքն այն է, որ թերթի աշխատողը լավ ըմբռնի ժամանակի ամենահուզող, ամենահրատապ հարցերը և կարողանա պատշաճ չափով անդ-



րադառնալ դրանց. այդ դեպքում միայն ընթերցողը կարձագանքի նրա մտքերին ու խոհերին, նորանոր հարցեր կբարձրացնի թերթի էջերում։ Այսպես, նոր չէ, որ շրջանային կոմիտեին և համապատասխան այլ կազմակերպություններին հուզում ու խիստ մտահոգում է բնաշխարհի պահպանումն ու հարստացումը։ Բանն այն է, որ մեր հրաշալի անտառները հեռացել են բնակավայրերից, մեծ մասամբ դարձել խղճուկ, իսկ կենդանական աշխարհն՝ աղքատացել։ Շրջկոմի կողմից մի այլ առիթով հրավիրված խորհրդակցությունն անդրադարձավ նաև այդ խնդրին։ Անհրաժեշտ համարվեց պարտավորեցնել անտառային պահպանության և միլիցիայի աշխատողներին ամեն ինչ անել մեր բնաշխարհը պահպանելու և հարստացնելու ուղղությամբ, խիստ պատժել այդ գործում ոտնձգություններ կատարողներին։

«Այգաբաց»-ը ևս լուռ չմնաց. այն զետեղեց ընդարձակ մի հոդված՝ **Ի խորոց սրտի...** վերնագրով, ուր պարզորոշ ներկայացված էր մեր բնաշխարհի վիճակը և ընթերցողների առջև խնդիր էր դրված հանդես գալ թերթում և կոնկրետ առաջարկություններ անել։ Բարձրացված հարցը մեծ արձագանք գտավ ամենատարբեր մասնագիտության ու տարիքի մարդկանց շրջանում։ Շրջանային կոմիտեի բյուրոն հատուկ որոշմամբ հավանություն տվեց թերթի հայրենասիրական նախաձեռնությանը, սկզբնական կուսակցական և կոմերիտական կազմակերպություններին հանձնարարեց հանգամանորեն քննարկել հարցը, հանդես գալ կոնկրետ նախաձեռնությամբ։ Թերթը բազմաթիվ էջեր տրամադրեց հոդվածի արձագանքներին, որտեղ կային ո՛չ միայն առաջարկություններ, այլև պարտավորություններ, նախաձեռնություններ։ Կասկած չի կարող լինել, որ այս հարցում մենք ցանկալի հաջողության կհասնենք, ուր իր մեծ լուման կունենա մեր «Այգաբաց»-ը։

Շրջանային թերթի ամեն մի դիտողություն, քննադատական ամեն մի ելույթ իր նպատակին է ծառայում, եթե այն աջակցություն է գտնում շրջկոմի կողմից։ Ճիշտ կլինի ասել, որ թերթի խոսքը նաև շրջկոմի խոսքն է։ Շրջանային կոմիտեն կուսակցական, տնտեսական և հասարակական բոլոր կազմակերպություններին պետք է դաստիարակի թերթի հետ հաշվի նստելու, նրա ամեն մի քննադատական դիտողության նկատմամբ ճիշտ մոտեցում դրսևորելու ոգով, այլապես այն վեր կածվի անուշադրության մատնված տպագիր թղթի. չէ՛ որ, վերջին հաշվով, թերթի ներգործությունը, հաջողությունն ու հեղինակությունը կուսակցական ղեկավարության մեջ է։

Մի օրինակը բավական կլինի համոզելու համար, որ մեզ մոտ թերթի հետ լրջորեն են հաշվի նստում բոլոր կազմակերպությունները։

Կոմունալ սպասարկման և բարեկարգման գրասենյակի հասցեին քննադատական բազմաթիվ նամակներ էին տպագրվում թերթում, որոնք մեծ մասամբ պատշաճ ուշադրության չէին արժանանում շրջսովետի գործկոմի և տվյալ գրասենյակի կողմից։ Խմբագրության և նույնիսկ շրջկոմի բաժինների միջամտություններն էլ արդյունք չտվին։ Այդ հարցը շրջկոմի պլենումի քննարկման նյութ դարձավ։ Գործարար մթնոլորտում պլենումի մասնակիցները ավելի լուրջ թերություններ բացահայտեցին՝ կոմունալ սպասարկման ու բարեկարգման գործում։ Ընդունվեց կոնկրետ որոշում, որտեղ միջոցառումների հետ մեկտեղ գրասենյակի պետին դիտողություն արվեց։

Անցյալ տարվա աշնանը թերթի աշխատակիցը եղել էր Մովսեսի կոլտնտեսության այգիներում, խոշոր թերություններ նկատել բրիգադավար Հ. Անտոնյանի այգեմասում։ Բրիգադավարը բարձրագույն կրթությամբ գյու-

զատոտես է, բայց անուշադրության էր մատնել խաղողի այգիների մշակումը։ Թերթը հոդված տպագրեց, որի մեջ մանրամասն բացահայտված էին թերությունները, կոմունիստ բրիգադավարի անտարբեր վերաբերմունքը և այլն։ Ճիշտ է, ուշացումով, բայց Հ. Անտոնյանն ազատվեց աշխատանքից և նրա փոխարեն բրիգադավար առաջադրվեց մի այլ կոմունիստ մասնագետ, որը գործունյա է և վատ չի գլխավորում իրեն հանձնարարված գործը։

Նման հետևողականության արդյունք է խմբագրությունում ստացված աշխատավորների բազմաթիվ նամակներին տրվող բավարար ընթացքն ու նրանց դրական լուծումը։ Քննադատում են, խրախուսում, առաջարկում խոըագիրը հաճախ է երևում թերթում, ուր աշխատավորներն ասում են իրենց խոսքը, թերթը համարելով թերությունների վերացման և առաջարկությունների կենսագործման կարևոր միջոց։ Խմբագրությունից ոչ պակաս այդ փաստն ուրախացնում է շրջանային կոմիտեին, որովհետև թերթի դրական աշխատանքը բնութագրվում է նաև նրանով, թե աշխատավորներն ինչ չափով են մասնակցում նրա ստեղծմանը։ Թերթը պատկերացնել առանց հեղինակային ստվար կոլեկտիվի, հնարավոր չէ։ Եվ մի՞թե այս ամենի շնորհիվ չէ, որ մեր բաժանորդների թիվը գնալով ավելանում է. անցյալ տարվա համեմատությամբ այն աճել է 700-ով։ Այս փաստերն ուրախացնում են և շրջկոմին և խմբագրության կոլեկտիվին, որոնք ամեն ինչ անում են ընթերցողների վստահությունն արդարացնելու համար։

Հոբելյանական տարվա պլաններ—այսպիսին է թերթի այս տարվա ուղենիշը։ Այստեղ էականն այն է, որ թերթն իր առօրյա պլաններից բացի, ունի նաև հեռանկարային պլան, որում նախատեսված է մեծ Հոկտեմբերի 50-ամյակի առթիվ շրջանի բոլոր գյուղերին առանձին համարներ նվիրել, որոնք ընթերցողին կպատմեն անցած կես դարում գյուղերում տեղի ունեցած լուրջ վերելքի, առաջընթացի մասին։ Թերթը Մարդիկ և տարիներ խորագրի տակ արդեն մի շարք նյութեր է տպագրել և շարունակում է տպագրել այն մարդկանց մասին, ովքեր պայքարել են մեր այսօրվա երջանիկ կյանքի համար։ Նրանց մեջ կան սովետական կարգերի համար մղված մարտերի մասնակիցներ, կոլտնտեսային շարժման ակտիվիստներ, Հայրենական պատերազմի մասնակիցներ։ Ինչ խոսք, այդ թեմաները կդաստիարակեն մեր երիտասարդ սերնդին, որը չի տեսել անցյալի դառնությունները։

Մասսաներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ուղղությամբ շրջանի կուսկազմակերպությունները հարուստ փորձ ունեն։ Մեր շրջանին սահմանակից է Ադրբեջանական ՍՍՀ Թաուզի շրջանը։ Երկու շրջանների աշխատավորները ուս-ուսի տված պայքարել են սովետական իշխանության հաստատման, սոցիալիզմի հաղթանակի համար, իսկ այժմ պայքարում են կոմունիզմի հաղթանակի համար։ Նրանց միջև շարունակվում է տրադիցիոն սոցիալիստական մրցությունը և փոխադարձ օգնությունը։ Թաուզի կոլտնտեսություններից մեկը՝ Ալիբեյլին, որ սահմանակից է Ներքին Կարմիր Աղբյուրի կոլտնտեսությանը, այժմ մեր ծխախոտագործների օգնությամբ և փորձի հաղորդման շնորհիվ հաջողությամբ ծխախոտ է աճեցնում։ Այդ առթիվ «Այգաբաց»-ն արդեն հոդված է տպագրել, իսկ առաջիկայում մի ամբողջ համար է նվիրելու եղբայրական Ադրբեջանի աշխատավորության 50 տարվա հաջողություններին։ Իսկ Վրաստանին նվիրված տոնական գունավոր ու նկարազարդ համարն արդեն լույս է տեսել ու սիրով ընդունվել ընթերցողների կողմից։



Ուրիշ կարևոր հարցեր էլ կան, որոնց բազում անգամներ անդրադարձել է թերթը. դրանք մարմնավորվել են կոնկրետ աշխատանքում. նոր ու ոգևորող պլաններ էլ կան, որոնց իրականացման համար մտահոգված ենք բոլորս։ Հարկ չկա դրանց մասին մանրամասն խոսել։ Խմբագրությունն ունի իրենց գործը սիրող, հասկացող, կուսակցական աշխատանքի ձեռնհաս կադրեր, գյուղատնտեսության և մյուս բնագավառների մասնագետներ, որոնք կարողանում են լուսաբանել կարևոր հարցերը և դրանք պատշաճ ձևով ներկայացնել ընթերցողներին։

Այս ամենի կողքին մենք թերություններ էլ ունենք, որոնք պետք է վերացնել։ Առաջին հերթին, տնտեսությունների էկոնոմիկան մակերեսորեն վերլուծելն է, որը երբեմն վեր է ածվում թվերի մեջբերման։ Թույլ է պահանջկոտությունը քննադատական նյութերի հանդեպ։ Պատահում է, երբ առանձին սկզբնական կուսկազմակերպություններ ամիսներով ձգձգում են քննադատական հոդվածների պատասխանները, երբեմն չեն էլ պատասխանում, իսկ խմբագրությունը հանդուրժում է։ Քիչ են կազմակերպվում ընթերցողների կոնֆերանսներ, թղթակիցների հավաքներ, որպիսի միջոցառումները շատ կօգնեին թերթին՝ կարևոր հարցերը ժամանակին լուսաբանելու գործում։

Կուսակցության Շամշադինի շրջանային կոմիտեն «Այգաբաց» թերթը համարում է իր անմիջական օգնականը և ամեն ինչ անում, որ նրա խոսքն ավելի համարձակ հնչի, որ մասսաների շրջանում նրա ամեն մի քննադատական միտք, հեռանկարային ամեն մի հարց դիտվի որպես կուսակցության խոսք, որին բոլորը սիրով են ունկնդրում։

Հ. ԱՎԱԳՅԱՆ
ՀԿԿ Շամշադինի շրջկոմի
առաջին քարտուղար

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿԻ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

Հնգամյակի հաջող իրականացման կարևոր նախապայմանը պետական ապարատի հետագա ամրապնդումն է, նրա տնտեսական, կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական գործունեության ակտիվացումը։ Անհրաժեշտ է,— ասված է կուսակցության ծրագրում,— ամենօրյա վերահսկողություն իրագործել կառավարման ապարատի բոլոր օղակների գործունեության նկատմամբ և ստուգել սովետական իշխանության որոշումների ու օրենքների կատարումը, բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը դրանք խստիվ և ժամանակին կենսագործելու համար։ Այս գործում վճռական դեր ունեն մինիստրությունների, գերատեսչությունների և մյուս հիմնարկների սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք կոչված են մոբիլիզացնելու և օգնելու աշխատողներին, իրականացնելու կառավարման ու ղեկավարման իրենց ֆունկցիաները։

Անցած ժամանակաշրջանում մի շարք կուսակցական կազմակերպություններ պետական ապարատի գործունեության բարելավման ուղղությամբ հասել են որոշ հաջողությունների։ Հանրապետության առջև դրված ժողովրդա-տնտեսական խնդիրների հաջող լուծման գործում իրենց որոշակի բաժինն ունեն նաև պետական-կառավարչական ապարատի աշխատողներն ու նրանց կուս-

կազմակերպությունները։ Սակայն, ինչպես ցույց տվին տարեվերջին ավարտված հաշվետու-ընտրական ժողովները, մեր գերատեսչական և այլ հիմնարկային կուսկազմակերպությունների աշխատանքներում կան զգալի թերություններ ու բացեր։ Նրանց մի մասը անհրաժեշտ չափով չի խորանում հիմնարկների գործունեության կարևոր հարցերի մեջ և աշխատանքի կազմակերպման գործում պահանջված օգնություն ցույց չի տալիս ղեկավարությանը։ Պետական ապարատի որոշ օղակներում դեռևս չեն լիկվիդացված քաշքշուկը, բյուրոկրատիզմի և սովետական ապարատին խորթ այլ երևույթները. առանձին աշխատողներ թույլ են տալիս թափթփվածություն, անբարեխղճորեն են կատարում հանձնարարությունները և հիմնարկը հաճախ անբավարար է իրագործում իր առջև դրված խնդիրները։ ՀԿԿ Կենտկոմի IV պլենումի որոշման մեջ նշված է, որ շինարարության մինիստրության, գյուղական շինարարության մինիստրության մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների վարչության ղեկավարությունը պետական անհրաժեշտ կարգ ու կանոն, կարգապահություն չի մտցրել ենթակա կազմակերպություններում, չի բարձրացրել նրանց պատասխանատվությունը պետական պլանների կատարման համար։ Հացամթերքների գլխավոր վարչությունում արտադրական տեխնիկական վարչության և գլխավոր հաշվապահության աշխատողները, հատկապես ինժեներա-տեխնիկական անձնակազմը, քիչ են լինում տեղերում, պահանջվող հսկողություն ու օգնություն ցույց չեն տալիս տեղական կազմակերպություններին, որի հետևանքով էլ օբյեկտներում խախտվում են արտադրատեխնիկական պրոցեսները, իսկ նյութական արժեքների հաշվառման ու հաշվետվությունների գործում տեղիք են տրվում լուրջ թերությունների։ Լուսավորության մինիստրության կուսակցական կազմակերպության ժողովում խոսվեց դպրոցական վարչության աշխատանքներում եղած թերությունների մասին, նշվեց, որ բավարար չափով չեն ամփոփվում ու վերլուծվում տեսչական ստուգումների արդյունքները, չեն բացահայտվում ստուգման թերությունները, քիչ ուշադրություն է նվիրվում առաջավոր դպրոցների փորձի ուսումնասիրմանն ու տարածմանը։

Նշված, ինչպես նաև այլ հիմնարկների աշխատանքներում եղած թերությունները, անկասկած, վերաբերում են նաև նրանց սկզբնական կուսկազմակերպություններին։

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի սեպտեմբերյան պլենումի որոշումներից հետո, որի հիման վրա վերակառուցվեց կառավարչական ապարատը և ստեղծվեցին նոր մինիստրություններ ու վարչություններ, է՛լ ավելի են մեծացել գերատեսչական հիմնարկների կուսկազմակերպություններին ներկայացվող պահանջները։

Հաճախ հարց է առաջանում, թե ի՞նչ ձևերով ու մեթոդներով կազմակերպությունը կարող է ներազդել ապարատի աշխատանքի վրա։ Ի՞նչ կարող է անել պետական հիմնարկի կուսակցական կազմակերպությունը։

Հիմնարկի կուսկազմակերպությունը ունի իր առանձնահատկությունները և նման չէ արտադրական ձեռնարկության կազմակերպությանը։ Հիմնարկը կառավարման ապարատ է. յուրաքանչյուր մինիստրություն կամ գերատեսչություն ղեկավարում է ժողովրդական տնտեսության մի ամբողջ ճյուղ։ Կան, իհարկե, և այնպիսի հիմնարկներ, որոնց հիմնական ֆունկցիան բնակչությանը սպասարկելն է, ինչպես, աշխատավորների դեպուտատների սովետների որոշ բաժինները, խնայողական դրամարկղները և այլն։ Նրանց գործունեու-



թյան մասշտաբով ու բնույթով է պայմանավորված, թե կուսակցական որ օրգանի ղեկավարությամբ են նրանք գործում։

Մինիստրության կամ գերատեսչական հիմնարկի կուսկազմակերպությունը պատասխանատվություն է կրում ապարատի առջև դրված խնդիրների հաջող կատարման համար։ Սակայն ապարատի գործունեությունը արտահայտվում է տեղերին ցույց տրվող ղեկավարության և օգնության մեջ և շատ կարևոր է, թե ինչպես է իրականացվում այն, ապարատում ինչպես են լուծվում ձեռնարկությունների ու կազմակերպությունների կողմից բարձրացված հարցերը նրա բաժինների ու առանձին աշխատողների կողմից, որքան օպերատիվ ու գործնական է նրանց կապը տեղերի հետ։ Ահա թե ինչու ապարատի հստակ ու ճկուն աշխատանքի ապահովումը կուսակցական կազմակերպության գլխավոր խնդիրն է։

Ինչպես հայտնի է, գերատեսչական հիմնարկների կուսակցական կազմակերպությունները չեն օգտվում ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքից։ Սակայն, դա չի վերացնում նրանց պատասխանատվությունը ապարատի աշխատանքի նկատմամբ։ Չմոռանանք, որ սովետական պետության սիստեմում ղեկավար ու կառավարող ուժը կոմունիստական կուսակցությունն է, որով և բնորոշվում է նրա յուրաքանչյուր սկզբնական կազմակերպության տեղն ու խնդիրները։ Կանոնադրությունը պարտավորեցնում է հիմնարկային կուսակցական կազմակերպություններին ակտիվորեն ազդել ապարատի աշխատանքի կատարելագործման վրա, աշխատողներին դաստիարակել հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով, միջոցներ ձեռնարկել ամրապնդելու պետական կարգապահությունը, բարելավելու բնակչության սպասարկումը, վճռական պայքար մղելու բյուրոկրատիզմի և քաշքշուկի դեմ։

Որպեսզի կուսկազմակերպությունը բավարար չափով զբաղվի իր առջև դրված հարցերով, ամենից առաջ, կարևոր է, որ նրա յուրաքանչյուր անդամ և կազմակերպությունը ամբողջությամբ վերցրած լավ գիտենան հիմնարկին ներկայացվող խնդիրները, նրա կյանքն ու առօրյան։ Դրան մեծապես նպաստում է կուսակցական ժողովներում ու բյուրոյի նիստերում ապարատի աշխատանքի հետ կապված հարցերի սիստեմատիկ քննարկումը։ Սննդի արդյունաբերության մինիստրության կուսակցական կազմակերպության ժողովում մինիստրության ապարատի կառուցվածքի կատարելագործման հարցի քննարկման ժամանակ կոմունիստներն առաջարկեցին միացնել նախագծերի էքսպերտիզը և կապիտալ շինարարության բաժինները։ Մինիստրության ղեկավարությունը ուսումնասիրելով այդ առաջարկությունը, համաձայնեց բաժինների միացմանը։ Դա զգալիորեն արագացրեց նախագծային-նախահաշվային փաստաթղթերի մշակումը։

Մի այլ ժողովում, որտեղ քննարկվում էր կարգապահության ամրապնդման հարցը, փաստեր բերվեցին աշխատանքում եղած թերությունների մասին, նշելով, որ հարկավոր է մինիմումի հասցնել գրագրությունները, ուժեղացնել հսկողությունը որոշումների կատարման վրա։ Իհարկե, հարցի քննարկումը որոշ չափով օգնեց աշխատանքի բարելավմանը, սակայն դրա հետ միաժամանակ, ինչպես վերջերս նշեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, մինիստրությունը և նրա ճյուղային վարչությունները դեռևս թույլ են վերահսկում ենթակա ձեռնարկությունների գործունեությանը՝ կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կենսագործման ուղղությամբ։

Մեր կարծիքով, ճիշտ են վարվում այն կազմակերպությունները, որոնք քննարկում են հիմնարկի գործունեության որոշակի ժամանակաշրջանի (ասենք եռամսյակի) արդյունքներն ու ապարատի խնդիրները, վերադաս օրգանների որոշումների կատարման ընթացքը, աշխատանքի կազմակերպումը որևէ բաժնում և այլն։ Իհարկե կարևորն այն չէ, թե քանի հարց է քննարկվել, այլ, թե ինչպե՞ս են կենսագործվում ընդունված որոշումներն ու միջոցառումները, թե իրականում ինչ է արվում աշխատանքի բարելավման ուղղությամբ։

Ապարատի գործունեությունը բազմակողմանի է. այն իր բոլոր կողմերով պետք է հետաքրքրի կուսկազմակերպությանը։ Արդյունաբերության զարգացման ասպարեզում ձեռք բերած մեծ հաջողությունների և ընդհանուր պլանի գերակատարման հետ միաժամանակ, արդյունաբերական որոշ ձեռնարկություններ չապահովեցին 1966 թվականի տարեկան պլանի կատարումը, որի հետևանքով ժողովրդական տնտեսությունը շոշափելի վնասներ ունեցավ։ Դրանում անշուշտ որոշ մեղք ունեն նաև համապատասխան գերատեսչությունները, որոնք կոչված են նոր պայմաններում ապահովելու արտադրության տվյալ ճյուղի ավելի կոնկրետ ղեկավարումն ու կատարելագործումը, աշխատանքի արտադրողականության հետագա աճը, հաջողությամբ իրականացնելու պլանավորման ու խթանման նոր սիստեմի փոխադրվելը։ Իսկ դա առանձնահատուկ պատասխանատվություն է դնում մինիստրության կուսակցական կազմակերպության վրա, որպեսզի նա խոր թափանցի բաժինների գործունեության մեջ, հաշիվ պահանջի յուրաքանչյուր աշխատողից, ուշադրություն դարձնելով հատկապես այն բանի վրա, որպեսզի ապարատում աշխատող մասնագետները իրենց ժամանակի մեծ մասը նվիրեն ստեղծագործական աշխատանքին, ձեռնարկություններին ցույց տան որակյալ օգնություն և ոչ թե զբաղվեն գրագրություններով։ Սա, իհարկե վերաբերում է նաև մյուս, ոչ արդյունաբերական մինիստրությունների ու գերատեսչությունների կուսակցական կազմակերպություններին։

Կարևոր նշանակություն ունեն ապարատի աշխատանքի կազմակերպումն ու աշխատանքային օրվա ռացիոնալ օգտագործումը, այսինքն ինչպե՞ս են կատարվում տրված հանձնարարությունները, ինչպե՞ս են իրագործվում վերադաս օրգանների որոշումները, արդյո՞ք ժամանակին պատասխանում են տեղերից ստացված հարցումներին ու նամակներին, հաճախորդները կարողանո՞ւմ են ժամանակին լինել հիմնարկի պետերի կամ նրա տեղակալների մոտ և լուծել իրենց հարցերը, արդյոք ապարատի բոլո՞ր աշխատողներն են հավասարապես ծանրաբեռնված աշխատանքով և այլն։

Հանրապետական հիմնարկների գործունեության մեջ զգալի տեղ են գրավում գործուղումները. անտառային տնտեսության պետական կոմիտեի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում խոսվեց այն մասին, որ երբեմն առանձին աշխատողների գործուղումները նպատակին չեն ծառայում, գործուղման ժամանակ լրիվ չեն կատարվում հանձնարարությունները, հարցերը կիսատ են լուծվում և հարկ է լինում նոր մարդիկ գործուղել։ Կարելի է օրինակներ բերել նաև այլ հիմնարկներից։ Կուսակցական կազմակերպությունը պետք է խորամուխ լինի, թե արդյոք արդյունավետ ու նպատակասլա՞ց են կազմակերպվում գործուղումները և աշխատողները բարեխղճորե՞ն են կատարում տրված հանձնարարությունները։

Յուրաքանչյուր հիմնարկի գործունեության արդյունավետությունը որոշվում է նաև նրանով, թե ինչպես է աշխատավորության դիմում-բողոքների



քննարկման և հաճախորդների ընդունելության դրվածքը։ Որոշ հիմնարկներում, մասնավորապես աշխատավորների դեպուտատների տեղական սովետներում, զգալի չափերի են հասնում աշխատավորության դիմումները, որոնց որոշ մասին, ցավոք, ժամանակին ընթացք չի տրվում։ Այս առումով գործի վիճակը գոհացուցիչ չէ գյուղական շինարարության մինիստրության և մի քանի շրջսովետների գործկոմներում։ Կուսակցական կազմակերպությունները պետք է պատշաճ հսկողություն սահմանեն աշխատավորների նամակների ընթացքի վրա և իսպառ վերացնեն այդ գործում նկատվող քաշքշուկը։

Հիմնարկներում կուսկազմակերպությունները աշխատանքը պետք է կազմակերպեն այնպես, որ նախ կոմունիստներն անձնական օրինակ հանդիսանան իրենց ծառայական պարտականություններն անթերի և օրինակելի կատարելու գործում։

Աշխատողներին բարձր կարգապահության ոգով դաստիարակելու և նրանց ակտիվությունը բարձրացնելու գործում, ինչպես հայտնի է, խոշոր նշանակություն ունի սոցմրցությունը։ Հիմնարկային կազմակերպություններում այդ մասին խոսելիս պետք է նկատի ունենալ որոշ առանձնահատկություններ. ապարատի շատ աշխատողների անհատական գործունեությունը դժվար է չափել, դրա համար էլ սխալ կլինի արտադրական ձեռնարկություններում գոյություն ունեցող սոցմրցման ձևերն ու մեթոդները մեխանիկորեն տեղափոխել հիմնարկ։ Սակայն մրցության ոգին պետք է նաև այստեղ լինի, մշտապես տարածվեն ու արմատավորվեն աշխատանքի առաջավոր մեթոդները, ամեն կերպ պաշտպանվեն ու խրախուսվեն գործունակ աշխատողները, միաժամանակ քննադատվեն ծույլերը, գործի նկատմամբ սառը, չինովնիկական վերաբերմունք ունեցողները։ Այդ գործում մեծ դեր կարող են խաղալ պատի թերթերը, սակայն որոշ տեղերում դրանք ամիսներով լույս չեն տեսնում։

Արդեն մի քանի տարի է, ինչ շարունակվում է գյուղական ու ավանային սովետների հանրապետական սոցմրցությունը։ Մասնակցելով մրցության, շատ սովետներ զգալիորեն ակտիվացրել են իրենց աշխատանքը. ուժեղացել է նրանց ազդեցությունը կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական գործունեության վրա, որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գյուղական աշխատավորության կուլտուր-կենցաղային սպասարկման, գյուղերի ու ավանների բարեկարգման ուղղությամբ։ Լավ ցուցանիշների է հասել, օրինակ, Արտաշատի շրջանի Այգեզարդի գյուղսովետը, որը 1966 թվականին նվաճեց Հայկական ՍՍՀ և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը։ Սակայն որոշ տեղերում սովետների մի մասը լրիվ չկատարեց վերցրած պարտավորությունները։

Հայաստանի կոմկուսակցության XXIV համագումարը, Գերագույն սովետի սեսիաները նոր խնդիրներ են դրել սովետների առջև, նրանց լուծումը պահանջում է ամեն կերպ բարելավել մրցության ղեկավարումը և գյուղական ու ավանային սովետների գործունեությունը բարձրացնել նոր պահանջների մակարդակին։

Հաճախ պետական հիմնարկի ծառայողը վատ է աշխատում կամ չի հասցնում ժամանակին գործը կատարել այն պատճառով, որ գիտելիքները չեն բավարարում։ Ուրեմն, ճիշտ են վարվում այն կուսկազմակերպությունները, որոնք, ղեկավարության հետ միասին, սիստեմատիկ աշխատանք են տանում կադրերի ուսուցման ու մասնագիտացման որակավորման բարձրացման ուղղությամբ։ Անտառային տնտեսության պետական կոմիտեում, օրինակ, պլանավորել են հատուկ սեմինարում ուսումնասիրել անտառային տնտեսության էկոնոմիկան,

իսկ ֆինանսների մինիստրությունում՝ «Ֆինանսները և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը» թեմայի վերաբերյալ «ՍՍՀՄ ֆինանսներ» ամսագրում լույս տեսնող հոդվածաշարքը: Այդպիսի օրինակներ կարելի է բերել նաև այլ հիմնարկներից:

Այժմ շատ կարևոր նշանակություն է ստացել վարչա-կառավարչական ապարատի աշխատանքների, մասնավորապես հաշվային պրոցեսների մեքենայացումը: Այդ ուղղությամբ զգալի գործ է կատարվել նաև մեր հանրապետությունում, որը մեծապես նպաստել է հաշվային ապարատի կրճատմանն ու էժանացմանը և աշխատանքի արտադրողականության ու կուլտուրայի բարձրացմանը: Սակայն որոշ տեղերում հաշվային մեքենաները լրիվ ծանրաբեռնվածությամբ չեն աշխատում և վատ խնամքի հետևանքով փչանում են:

Սովետական հիմնարկների հստակ աշխատանքի ապահովման գործում մեծ անելիքներ ունեն արհմիութենական կազմակերպությունները և նրանց կողմից հրավիրվող արտադրական խորհրդակցությունները, ուստի կուսկազմակերպությունը ամեն կերպ պետք է ակտիվացնի նրանց գործունեությունը:

Ինչպես ասված է կանոնադրության մեջ, սովետական հիմնարկների կուսակցական կազմակերպությունները պարտավոր են ժամանակին համապատասխան կուսակցական օրգաններին հայտնել հիմնարկի, ինչպես նաև առանձին աշխատողների աշխատանքում եղած թերությունների մասին, անկախ գրաված պաշտոնից: Պետք է ուղղակի ասել, որ մեր հիմնարկային կուսկազմակերպությունների մի մասը անբավարար է կատարում իր այդ պարտականությունը: Իհարկե, կազմակերպությունը պետք է, ամենից առաջ, ինքը ձեռնարկի անհրաժեշտ միջոցառումներ ապարատի հստակ ու ճկուն աշխատանքի ապահովման, եղած թերությունների վերացման համար: Սակայն դա ո՛չ միայն չի բացառում, այլ, ընդհակառակը, ենթադրում է ժամանակին համապատասխան կուսակցական օրգաններին տեղյակ պահել հիմնարկի գործերի վիճակի մասին, անհրաժեշտության դեպքում ահազանգել նրա աշխատանքում եղած թերությունների մասին: Դա վերադաս օրգաններին հնարավորություն կտա գործնական քայլերի դիմելու՝ եղած թերությունները վերացնելու և այդպիսիք կանխելու համար:

Հիմնարկում տարվող մասսայական-քաղաքական աշխատանքը պետք է ուղղվի ապարատի աշխատանքի ճկունացմանը, օգնի սովետական ծառայողներին՝ դաստիարակելու հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով: Բանվորն ու կոլտնտեսականը սովետական իշխանության մասին դատում են ո՛չ միայն նրա վարած քաղաքականությամբ, այլև նրանով, թե սովետական հիմնարկում ինչպես են ընդունում ու խոսում նրա հետ: Ապարատում աշխատողների կազմը բազմազան է և պետք է օգնել մարդկանց աշխատանքային կուլտուրայի զարգացման գործում:

Կարևոր նշանակություն ունեն նաև աշխատողների համար կուլտուր-մասսայական միջոցառումների պարբերաբար անցկացումը, նրանց հանգստի խելացի կազմակերպումը, գեղարվեստական ինքնագործունեության զարգացումն ու սպորտային միջոցառումները: Եվ, իհարկե, ճիշտ են վարվում այն կուսակցական կազմակերպությունները, որոնք պաշտպանում ու խրախուսում են արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնություններն այդ ուղղությամբ:

Հասկանալի է, որ կուսկազմակերպության առջև դրված խնդիրների հաջող լուծման կարևոր նախապայմանը ներկուսակցական աշխատանքի բարձր մա-



կարդակն է, որ ապահովվի կուսակցության բոլոր անդամ-թեկնածուների ակտիվ մասնակցությունը կազմակերպության կյանքին, ժամանակին հրավիրվեն և բարձր մակարդակով անցկացվեն ժողովներն ու բյուրոյի նիստերը, ամեն կերպ ծավալվի քննադատությունն ու ինքնաքննադատությունը, անթերի կատարվեն ընդունված որոշումները: Հատուկ ուշադրության են արժանի կուսակցական խմբերը, որոնք հնարավորություն կընձեռեն անմիջականորեն ազդելու ապարատի յուրաքանչյուր օղակի ու աշխատողի գործունեության և նրանց դաստիարակության վրա:

Սովետական հիմնարկների կուսակցական կազմակերպությունները մեծ ուժ են. հարկավոր է, որ նրանք ամենուրեք իրենց դրսևորեն որպես կոլեկտիվի իսկական կազմակերպիչներ ու դաստիարակներ, քաղաքական ու կազմակերպական ամենօրյա գործունեությամբ մոբիլիզացնեն աշխատողներին ապարատի հստակ ու ճկուն գործունեության ապահովման համար՝ հաջողությամբ կենսագործելու ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները և արժանավայել դիմավորելու Մեծ Հոկտեմբերի փառապանծ 50-ամյակը:

Հ. ԱԼԻԽԱՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

# ԿԱՆԱՆՑ ԼԱՎ ԳՈՐԾՈՂ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԸ

Մայրաքաղաքի լենինյան շրջանի կուսակցական կազմակերպություններն ամեն կերպ խրախուսում են կանանց քաղաքական և արտադրական ակտիվությունը, պատշաճորեն աջակցում նրանց, առաջ քաշում տնտեսական և հասարակական ակտիվ աշխատանքի: Ներկայումս շրջանի աշխատավորուհիներից 7-ը Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի, 34-ը՝ քաղաքային և 72-ը՝ շրջանային սովետների դեպուտատներ են:

Բարձր գնահատելով կոմունիստական շինարարության տարբեր բնագավառներում կանանց կատարած հայրենանվեր աշխատանքը, շրջանի սկզբնական կուսակցական կազմակերպությունները նրանցից առավել ակտիվությամբ աչքի ընկնող հասարակական գործիչներին ու արտադրության առաջավորներին ընդունում են կուսակցության շարքերը: Գոհունակությամբ պետք է նշել այն, որ այժմ շրջանի կուսակցական կազմակերպությունների շարքերում կան 1600 կին կոմունիստներ:

Կանայք ակտիվ մասնակցում են կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների գործունեությանը: Այժմ 197 սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներից 40-ը կանայք են: Ակտիվ կին կոմունիստներից հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայի բանվորուհի Պայծառ Բաղդասարյանը և «Պոլիվինիլացետատ» գործարանի ապարատավար Ամալյա Մաթևոսյանը եղել են ՍՄԿԿ XXIII համագումարի պատգամավորներ:

Մեծ թվով կանայք գործարաններում և ֆաբրիկաներում արտադրության անմիջական կազմակերպիչներ են, արտադրամասի և բաժանմունքի, հերթափոխի և տեղամասի պետեր, վարպետներ: Եվ նրանք ամենուրեք բարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները:

Արդյունաբերության մեջ աշխատող առաջավոր կանանցից է կաբելի գործարանի էմալապատման արտադրամասի բանվորուհի Ս. Զաքարյանը, որը

արտադրական առաջադրանքները սիստեմատիկաբար կատարում է 120—130 տոկոսով, տալով միայն լավ ու գերազանց որակի արտադրանք: Անվանի բանվորուհին սպասարկելով 2 վառարան, դիմել է արտադրամասի բոլոր բանվորուհիներին՝ հետևել իր օրինակին: Երիտասարդ բանվորուհու հայրենասիրական նախաձեռնությունը լայն արձագանք է գտել գործարանի էմալապատողների շրջանում: Շատերն արդեն անցել են 2-ական վառարանի սպասարկման, որը հրաշալի արդյունք է տալիս:

Սիլվա Զաքարյանն իր ազնիվ աշխատանքով արժանացել է համաժողովրդական վստահության և ընտրվել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ: Մեծ է Զաքարյանի նման բանվորուհիների թիվը: Ահա ավտոդողերի գործարանի նախապատրաստական արտադրամասի կշռող Մանյա Կարապետյանը: Առաջին հայացքից նրա աշխատանքը շատ աննկատ է, աննշան: Բայց այն բանից, թե կշռման ժամանակ ինչպես են պահպանվում քիմիական նյութերի համամասնությունները, կախված է արտադրանքի որակը, ավտոդողի ամրությունն ու ծառայության ժամկետը: Մանյա Կարապետյանը ոչ միայն լավ բանվորուհի է, այլև հոգատար մայր: Նա իր արտադրական-հասարակական ակտիվ գործունեությունը համատեղում է 7 երեխայի խնամքի ու դաստիարակության դժվարին աշխատանքին: Ուստի, պատահական չէ, որ Մանյա Կարապետյանը ևս արժանացավ գործարանի կոլեկտիվի, կուսակցության ու ժողովրդի վստահությանը՝ ընտրվեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ:

Կանայք ակտիվ մասնակցում են տեխնիկական պրոգրեսի համար ծավալված պայքարին, հանդես գալիս ռացիոնալիզատորական արժեքավոր առաջարկություններով: Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի տեխնոլոգիական սեկտորի պետ Ռոզա Սուլությանին շնորհվել է հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատորի պատվավոր կոչում: Նրա ռացիոնալիզատորական առաջարկությունները 1966 թվականին գործարանին տվել են 100 հազար ռուբլու խնայողություն: Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատում հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատորի կոչմանն են արժանացել Էմմա Մկրտչյանը (տեխնիկական բաժնի ավագ ինժեներ), Խայա Խայկինան (կենտրոնական լաբորատորիայի սեկտորի պետ) և Մարիա Պորշենյանը (կենտրոնական լաբորատորիայի բաժանմունքի պետ), որոնց ռացիոնալիզատորական առաջարկությունները տվել են 406,0 հազար ռուբլու խնայողություն: Նման օրինակներ կարելի է բերել նաև արդյունաբերական այլ ձեռնարկություններից:

Կանայք, միաժամանակ աշխատում են շրջանի գիտահետազոտական ինստիտուտներում: Նրանք իրենց գիտական հայտնագործություններով օգնում են աշխատանքի գիտական կազմակերպմանը, արտադրության տեխնոլոգիական ռեժիմի բարելավմանը:

Նյութական արտադրության բնագավառում լավ և գերազանց աշխատանքի համար վերջին տարիներին շրջանի հարյուրավոր կանայք պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, արժանացել կոմունիստական աշխատանքի բարձր կոչման:

Դպրոցներում և նախադպրոցական հիմնարկներում աշխատում են 1033 կին մանկավարժ, իսկ բուժհիմնարկներում՝ 300 բժշկուհի: Բազմաթիվ ուսուցիչներ և բժշկուհիներ իրենց անբասիր աշխատանքով վայելում են շրջանի աշխատավորների սերն ու համակրանքը:



Կուսակցական կազմակերպությունները կանանց հետ աշխատանք են տանում գլխավորապես կինխորհուրդների միջոցով: Կինխորհուրդները մեզ մոտ ստեղծվել են չորս տարի առաջ՝ հիմնարկ-ձեռնարկություններում, ինստիտուտներում և բնակելի խոշոր տներում: Այժմ շրջանում կա 25 կինխորհուրդ, որոնք գործում են կուսկազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ: Չորս տարում նրանք անց են կացրել բազմաթիվ խելացի միջոցառումներ:

Հիմնարկ-ձեռնարկություններում կինխորհուրդները հետևում են կանանց աշխատանքի պաշտպանության օրենքների կատարմանը, քաղաքական-մասսայական գործունեություն են ծավալում նրանց շրջանում, ամենօրյա հոգատարություն ցուցաբերում կանանց կուլտուրական հանգստի կազմակերպման նկատմամբ, վերահսկում կուլտուր-կենցաղային և մանկական հիմնարկների, ճաշարանների և խանութների աշխատանքը, բակերի կանաչապատման գործը:

Իրենց անմիջական խնդիրներով լավ են զբաղվում հատկապես Նուբբրդյա գործվածքների և մահուդի կոմբինատի, հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայի, ավտոդողերի, «Պոլիվինիլացետատ», Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրատեխնիկական գործարանների, Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատի, «Մասիս» ֆիրմայի գլխավոր ֆաբրիկայի կինխորհուրդները: Այդ ձեռնարկությունների կինխորհուրդների ակտիվ նախաձեռնությամբ ու միջամտությամբ մայրերի աշխատանքի պայմանների բարելավման կոնկրետ միջոցառումներ են իրականացվել: Բազմաթիվ կանայք աշխատատար պրոցեսներից փոխադրվել են առավել թեթև աշխատանքի, կազմակերպվել են հիգիենայի և երեխաների կերակրման սենյակներ: Այդ ձեռնարկություններում գաղափարական-դաստիարակչական աշխատանք տանելու համար օգտագործվում են պրոպագանդայի այնպիսի ձևեր, ինչպիսիք են կուլտուրայի և առողջապահության համալսարանները, կանանց ակումբները, կազմակերպված են կարի ու ձևի, խոհարարական և այլ խմբակներ:

Աշխատավորուհիներին օգնելու նպատակով կինխորհուրդները ձգտում են լավ ուսումնասիրել նրանցից յուրաքանչյուրի կյանքի պայմանները, կարիքներն ու պահանջները և ըստ այնմ կոնկրետ օգնություն կազմակերպել: Այդ նպատակով, նրանք, օրինակ, ուսումնասիրել են բազմաթիվ բանվորուհիների ընտանիքներ, օգնել նրանց երեխաներին մսուր-մանկապարտեզներում տեղավորելու, որպես կանոն այցելել են հիվանդ բանվորուհիներին և այլն:

Գաղափարական մշտական աշխատանքը կանանց շրջանում հրահրում է նրանց քաղաքական ակտիվությունը, որոնք ջերմորեն արձագանքում են երկրի ներքին և միջազգային իրադարձություններին: Վերջերս կինխորհուրդները կանանց շրջանում մեծ աշխատանք են ծավալել Վիետնամի ժողովրդին դրամով և հագուստեղենով օգնելու, իրենց անկախության համար պայքարում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների կանանց պաշտպանելու ուղղությամբ:

Իրենց համակողմանի գործունեությամբ կին խորհուրդները պրակտիկ օգնություն են ցույց տալիս կուսակցական և արհմիութենական կազմակերպություններին, տնտեսական ղեկավարներին՝ նոր մարդու, կոմունիստական հասարակության անդամի դաստիարակման գործում:

Սակայն կանանց շատ կինխորհուրդներ, իրենց հերթին, կարիք ունեն հիմնարկ-ձեռնարկության ղեկավարների ամենօրյա օգնության: Իսկ շրջանի արհմիութենական առանձին կազմակերպությունների ղեկավարներ դեպքից-դեպք են զբաղվում կինխորհուրդներին օգնելու հարցով, այդ մասին հիշում են

միայն մարտի 8-ի օրվա տոնին և հանդիսավոր այլ առիթներով։ Մինչդեռ, կանանց հետ տարվող աշխատանքը պահանջում է մշտական ուշադրություն։

Ձեռնամուխ լինելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի նախապատրաստման, ՀԿԿ Լենինյան շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները գաղափարական աշխատանքի ճակատում իրենց կարևորագույն խնդիրներից մեկն են համարում կինխորհուրդների գործունեության հետագա բարելավումը։

Կանանց խորհուրդների առաջնահերթ խնդիրն է է՛լ ավելի ուժեղացնել կանանց շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը, մոբիլիզացնել նրանց ուժերը հոբելյանական տարվա մեծ ու պատասխանատու խնդիրների լուծման համար։ Նրանք պարտավոր են մշտական կապ պահպանել այն դպրոցների հետ, ուր սովորում են բանվորուհիների երեխաները, հետաքրքրվել նրանց ուսման և դաստիարակության հարցերով։

Կանանց խորհուրդները առանձնապես մոտիկից պետք է զբաղվեն նախադպրոցական հիմնարկների աշխատանքով։ Դա կնպաստի նախադպրոցական տարիքի երեխա ունեցող կանանց արտադրության մեջ ներգրավելուն։ Կանանց հետ տարվող աշխատանքի որոշակի բարելավումը, նրանց ակտիվ մասնակցությունը տնտեսական և կուլտուրական շինարարությանը, դեռևս չի նշանակում, որ կուսակցական աշխատանքի այս տեղամասում լիովին վերացված են թերությունները։ Ընդհակառակը, դեռևս կան կանանց դերի թերագնահատման փաստեր։ Ահա դրանցից մի քանիսը։ Շրջանն ունի 197 հիմնարկ-ձեռնարկություն, բայց դրանցից միայն 10-ի ղեկավարներն են կանայք (4 ձեռնարկության, 4 դպրոցի, կինոթատրոնի և ժողդատարանի)։ Իսկ սկզբնական կուսկազմակերպությունների 12 ազատված քարտուղարներից միայն մեկն է կին։

Քիչ բան է արված կնոջ ընտանեկան հոգսերը թեթևացնելու ուղղությամբ։ Վ. Ի. Լենինն ասել է, որ տնային ստրկությունից կնոջ լրիվ ազատագրումը իսկական կոմունիզմի սկիզբն է, որ սոցիալիստական շինարարության վճռական էտապում հսկայական ուշադրություն կպահանջվի կենցաղի «մանրուքների» նկատմամբ և այլն։ Մինչդեռ այժմ էլ տնային տնտեսությունը հաճախ շարունակում է ստրկացնել կնոջը. խոհանոցային աշխատանքը խլում է նրա ազատ ժամանակի մեծ մասը։

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս կնոջ մասնակցությանը ժողովրդական վերահսկողության կազմակերպման գործին։ Նա ասում էր՝ կանայք պահանջկոտ են, նրանք զիջող չեն լինի նրանց նկատմամբ, ովքեր վնաս են հասցնում ժողովրդին, խախտում կուսակցության և կառավարության որոշումներն ու ցուցումները։

Առաջնորդվելով լենինյան ցուցումներով, կուսկազմակերպությունները կին ակտիվիստներին լայնորեն մասնակից են դարձնում ժողովրդական վերահսկողության իրականացմանը. 813 կին մասնակցում են աջակցության խմբերի և պոստերի աշխատանքներին, օգնում հայտնաբերելու և կանխելու հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքներում եղած թերությունները։

Ուժեղացնելով կանանց շրջանում տարվող աշխատանքը, մենք ձգտում ենք ապահովել շրջանի կանանց ակտիվությունը տնտեսական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում նաև ժողովրդական վերահսկողության կազմակերպման գործում։

ԹԱՄԱՐԱ ՔԱԼԱՆԹԱՐՈՎԱ

ՀԿԿ Երևանի Լենինյան շրջկոմի քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԹՌՉՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ԷՏԱՊԸ

Վերջին տասնամյակներում թռչնաբուծությունը, որպես գյուղատնտեսական արտադրության ինքնուրույն ճյուղ, ինչպես արտասահմանյան տնտեսապես զարգացած մի շարք երկրներում, այնպես էլ Սովետական Միությունում մեծ նվաճումների հասավ։ Այն զարգանում է, որպես գյուղատնտեսության ինտենսիվ, բարձր եկամտաբեր ճյուղ և հենվում է արտադրության կազմակերպման և տեխնոլոգիայի արդյունաբերական սկզբունքների վրա։ Դա հնարավորություն է ընձեռում լայնորեն կոոպերացնել նեղ-մասնագիտացված տնտեսությունները, մաքսիմալ չափով համակենտրոնացնել արտադրությունը, ինտենսիվացնել տեխնոլոգիական պրոցեսները, հասնել արտադրական ֆոնդերի առավել արդյունավետ օգտագործմանը և թողարկել բարձրորակ, միաժամանակ ցածր ինքնարժեքով կարևորագույն սննդամթերք։

Պատահական չէ, որ անասնաբուծության ճյուղերից լայն մասշտաբներով և մեծ հաջողությամբ արդյունաբերական հիմքի վրա է փոխադրվում, առաջին հերթին, թռչնաբուծությունը։ Բանն այն է, որ գյուղատնտեսական թռչունները օժտված են մի շարք արժեքավոր տնտեսաբիոլոգիական առանձնահատկություններով։ Նրանք բոլոր գյուղատնտեսական կենդանիներից առավել վաղահաս են և ունեն բարձր պտղատվություն։ Ձվատու ուղղություն ունեցող ցեղերի հավերը 5—6 ամսականում արդեն սեռահասուն են, սկսում են ձվարկումը և հենց ճտահանության տարում տալիս են 100—120 և ավելի ձու։ Բազմացման բարձր գործակցի և արհեստական ճտահանության կիրառման շնորհիվ, մեկ հավից տարեկան կարելի է ստանալ 100—150 սերունդ, սերնդի հետ միասին՝ 1000 և ավելի մատղաշ։ Գյուղատնտեսական թռչունները շատ բարձր են հատուցում կերը։ Դրանով է բացատրվում, որ այն երկրներում, ուր մաքսիմալ արդյունավետությամբ են օգտագործվում գյուղատնտեսական թռչունների արժեքավոր բիոլոգիական հատկությունները և այդ ճյուղի պոտենցիալ հնարավորությունները, թռչնաբուծությունը, համեմատած անասնաբուծության մյուս ճյուղերի հետ, ավելի բարձր տեմպերով է զարգանում։ Միաժամանակ, պետք է ընդգծել, որ ինտենսիվ արդյունաբերական թռչնաբուծության զարգացման

բնագավառի հաջողությունները ամբողջովին հենվում են այն խոշոր գիտական նվաճումների վրա, որոնք ձեռք են բերվել վերջին տարիներին գենետիկայի, սելեկցիայի, գծային բուծման, հիբրիդացման, կերակրման ֆիզիոլոգիայի, պահվածքի առավել ինտենսիվ եղանակների մշակման, անասնաբուժական պրոֆիլակտիկայի, համակցված կերի արդյունաբերության բուռն զարգացման, ինչպես նաև արտադրության էկոնոմիկայի և կազմակերպման բնագավառում։

Նկատելի նվաճումներ են ձեռք բերվել արդյունաբերական թռչնաբուծության զարգացման բնագավառում նաև Սովետական Միությունում։ Երկրում ստեղծվել են բազմաթիվ տոհմային տնտեսություններ, խոշոր մասնագիտացված թռչնաբուծական ֆաբրիկաներ ու սովխոզներ, կոլտնտեսություններում և չմասնագիտացված սովխոզներում՝ ապրանքային ֆերմաներ, կազմակերպվել է արդյունաբերական ինկուբատորիաների՝ ինկուբատորա-թռչնաբուծական կայանների լայն ցանց, ուր միլիոնավոր տոհմային և մթերատու մատղաշ են վաճառում ո՛չ միայն կոլտնտեսություններին և սովխոզներին, այլև կոլտնտեսականներին, բանվորներին ու ծառայողներին՝ անձնական տնտեսություններում աճեցնելու համար։

Թռչնաբուծական տնտեսությունները մեզ մոտ վաղուց արդեն բուծում են թռչունների բարձր մթերատու, կուլտուրական ցեղեր։ Արտադրության մեջ ավելի ու ավելի լայնորեն են ներդրվում թռչնաբուծությունը վարելու ինտենսիվ եղանակներն ու գիտության նվաճումները։ Այդ միջոցառումների կիրառման շնորհիվ վերջին հինգ տարում ՍՍՀՄ-ում ձվի միջին տարեկան արտադրությունը կազմեց 28,7 միլիարդ հատ։ Ձվի համախառն արտադրանքի ցուցանիշով մեր երկիրը ԱՄՆ-ից հետո երկրորդ տեղն է գրավում աշխարհում և նկատելիորեն առաջ է անցնում զարգացած թռչնաբուծություն ունեցող մի շարք արտասահմանյան երկրներից։ Բայց մենք դեռևս շատ մեծ ռեզերվներ ունենք, որոնց հմուտ օգտագործումը հնարավորություն կընձեռի թռչնաբուծությունը բարձրացնել համաշխարհային լավագույն նվաճումների մակարդակին, ինչպես մթերատվության ցուցանիշներով, այնպես էլ արտադրության ծավալով։

Այդ է վկայում այն փաստը, որ միայն վերջին երկու տարվա ընթացքում հավերի միջին մթերատվությունը հանրային տնտեսություններում ավելացավ 36 ձվով, իսկ սա շատ լուրջ նվաճում է։ Մի շարք առաջավոր տնտեսություններ հասան է՛լ ավելի բարձր ցուցանիշների։ Այսպես, Ղրիմի մարզի Յուժնայա թռչնաբուծական ֆաբրիկայում հավի միջին ձվատվությունը 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, ավելացավ 50 հատով և տարեկան կազմեց 210 ձու, չնայած ածանների գլխաքանակի նկատելի ավելացմանը։

Լավ օրինակներ ունենք նաև Հայաստանում։

Երևանի թռչնաբուծական ֆաբրիկայում մեկ տարվա ընթացքում մի ածանի միջին ձվատվությունն ավելացավ 52 ձվով և 1966 թվականին միջին հաշվով հասավ 173 հատի։

Նշանակալից է նաև այն փաստը, որ մենք արդեն ունենք արդյունաբերական տիպի առանձին տնտեսություններ, որոնք բուծելով բարձր մթերատու ցեղերի թռչուններ և օգտագործելով լիարժեք կերաբաժիններ, մի ածանից ստանում են տարեկան 250—260 և ավելի ձու։ Բայց անգամ այդ ցուցանիշները դեռևս վերջնական սահման չեն։

Սելեկցիայի ենթարկված գծային և հիբրիդային թռչունների լայն օգտա-



գործումը, նրանց ճիշտ կերակրումը՝ ելնելով օրգանիզմի ֆիզիոլոգիական պահանջներից, ինչպես նաև ճիշտ պահվածքը կարգավորող միկրոկլիմայի պայմաններում, հնարավորություն են ընձեռում խոշոր հոտերում հավերի տարեկան միջին մթերատվությունը հասցնել 280—300 ձվի։ Ընդամենը մի քանի տարի առաջ մթերատվության այդպիսի մակարդակը ֆանտաստիկ կթվար, եթե նկատի ունենանք, որ կոլտնտեսությունների ճնշող մեծամասնությունում հավերի ձվատվությունը 100—120-ից չէր անցնում, իսկ լավագույն ֆաբրիկաները և սովխոզները ստանում էին ածանից 190—200 ձու։

Պետք է նկատի ունենալ, որ բարձր ձվատվության դեպքում (մի ածանից միջինը 250—300 ձու) կերի ծախսը մթերքի արտադրության վրա կրճատվում է գրեթե երկու անգամ և 1 կգ ձվային զանգվածի (մոտ 20 ձվի) արտադրության վրա ծախսվում է ընդամենը մոտ 3 կգ կեր։ Այսպիսի ցուցանիշների հնարավոր է հասնել, իհարկե, միայն այն դեպքում, երբ թռչնաբուծությունը վարվում է արդյունաբերական հիմունքներով և լայնորեն կիրառվում են ժամանակակից գիտատեխնիկական նվաճումները։ Ուստի, բնական է, որ վերջին երկու-երեք տարիների ընթացքում թռչնաբուծության ինդուստրացումը մեր երկրում լայն ծավալ ստացավ։ Կառուցվում են տասնյակ նոր խոշոր թռչնաբուծական ֆաբրիկաներ ու սովխոզներ, որոնք մասնագիտացվում են ձվի և թռչունի մսի արտադրության ուղղությամբ, վերակառուցվում և զգալիորեն ընդլայնվում են գոյություն ունեցող տնտեսությունները։ Հնգամյակի վերջում արդյունաբերական տիպի թռչնաբուծական տնտեսությունների թիվը ՍՍՀՄ-ում կհասնի 788-ի։ Միայն այդ մասնագիտացված ձեռնարկությունները կարտադրեն 4—5 անգամ ավելի ձու և թռչունի միս, քան արտադրում էին երկրի թռչնաբուծական սովխոզները և ֆաբրիկաները 1964 թվականին։

Շատ ֆաբրիկաներում ածանների միջին տարեկան գլխաքանակը կազմում է 200—250 հազար, իսկ առանձին դեպքերում մինչև 500 հազար։ Այդպիսի տնտեսությունները տարվա ընթացքում արտադրում են համապատասխանորեն՝ 40,50 և 100 միլիոն ձու։ Մսացու ճտերի (բրոյլերների) արտադրության ուղղությամբ մասնագիտացված ֆաբրիկաների և սովխոզների արտադրական հզորությունը կազմում է մեկից մինչև հինգ հազար տոննա թռչունի միս կամ մեկից մինչև հինգ միլիոն մսացու ճուտ։ Այդպիսին է ժամանակակից արդյունաբերական տիպի՝ մասնագիտացված թռչնաբուծական տնտեսությունների դեմքը։

Արտադրության այդ ճյուղի զարգացման բնորոշ առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ եթե անցյալում՝ երեսնական-քառասնական թվականներին, թռչնաբուծական ֆաբրիկաները կառուցվում էին գրեթե միայն Մոսկվայի և առանձին խոշոր քաղաքների շուրջ, ապա վերջին տարիներին այդպիսի ձեռնարկություններ ստեղծվում են բոլոր միութենական հանրապետություններում, շատ երկրամասերում և մարզերում՝ գլխավորապես խոշոր արդյունաբերական և վարչական-կուլտուրական կենտրոնների շուրջը՝ խիտ բնակեցված քաղաքները թարմ սննդամթերքով ապահովելու համար։

***

Պետք է ասել, որ մեր հանրապետությունը առաջիններից մեկն էր, որ սկսեց ներդնել թռչնաբուծության ինտենսիվ եղանակները։ Առաջին թռչնաբուծական ֆաբրիկան կառուցվեց Էջմիածնում և շահագործման հանձնվեց 1955 թվականին։ 1957 թվականին Լենինականի ոչ-մեծ թռչնաբուծական սով-

խողը նույնպես վերածվեց ֆաբրիկայի։ Երկու տարի անց, կառուցվեց և շահագործման հանձնվեց Երևանի թռչնաբուծական ֆաբրիկան (Զարթախում) և Գետամեջ սովխոզը, 1960 թվականին սկսեց գործել Շահումյանի միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկան։ Այդ տնտեսությունները արդյունաբերական թռչնաբուծության առաջին օջախներն էին, որոնց աշխատանքի փորձը պետք է հիմք հանդիսանար Հայաստանում ինտենսիվ թռչնաբուծության լայն ղարգացման համար։ Թե ինչպիսի մեծ առավելություններ ունեն ինտենսիվ տիպի տնտեսությունները, համեմատած սովորական կոլտնտեսային թռչնաբուծական ֆերմաների և չմասնագիտացված սովխոզների հետ, երևում է հետևյալ համեմատությունից. 1966 թվականին հանրապետության բոլոր կոլտնտեսությունները արտադրեցին 25 միլիոն 513 հազար ձու, իսկ ընդամենը 4 թռչնաբուծական ֆաբրիկաները և մեկ մասնագիտացված սովխոզը (Գետամեջի) արտադրեցին 21 միլիոն ձու կամ բոլոր կոլտնտեսությունների արտադրանքի մոտ 80 տոկոսը։ 1965 թվականին հանրապետության բոլոր կոլտնտեսային թռչնաբուծական ֆերմաները միասին վերցրած արտադրեցին 6000 ցենտներ թռչունի միս, իսկ վերը նշված հինգ մասնագիտացված տնտեսությունները՝ 5251 ցենտներ կամ կոլտնտեսությունների արտադրության մոտ 90 տոկոսը։

Անցյալ տարի առանձնապես բարձր տեմպերով աճեց արտադրության ծավալը մասնագիտացված թռչնաբուծական տնտեսություններում։ Եթե 1965 թվականին Հայթռչնարդի տնտեսությունները արտադրել էին 13 միլիոն 130 հազար ձու, ապա 1966 թվականին՝ 21 միլիոն ձու կամ 61 տոկոսով ավելի։ Լուրջ նվաճում ձեռք բերվեց ածանների ձվատվության բարձրացման գործում։ Յուրաքանչյուր ածանից ստացվեց միջին հաշվով 166 ձու, 1965 թվականի 132-ի դիմաց։ Իսկ կոլտնտեսություններում հավերի միջին ձվատվությունը կազմեց ընդամենը 89 հատ։ Այլ խոսքով մասնագիտացված տնտեսություններում հավերի միջին ձվատվությունը մոտ երկու անգամ ավելի բարձր է, քան կոլտնտեսություններում։

Արտադրության ծավալի աճի և ձվատվության բարձրացման գործում է՛լ ավելի լավ արդյունքների են հասել առանձին ֆաբրիկաներ։ Այսպես, Լենինականի թռչնաբուծական ֆաբրիկան 1966 թվականին արտադրեց 6 միլիոն 13 հազար ձու, 1965 թվականի 2 միլիոն 837 հազարի դիմաց։ 1965 թվականի համեմատությամբ, 1966 թվականին ձվի արտադրությունը կրկնապատկվեց Գետամեջի տոհմային թռչնաբուծական սովխոզում. համախառն արտադրանքը կազմեց 2 միլիոն 963 հազար հատ։ Թռչնաբուծական մթերքների արտադրության ծավալի տեսակետից ամենաբարձր ցուցանիշներ ունի Էջմիածնի թռչնաբուծական ֆաբրիկան, որը 1966 թվականին արտադրեց 7 միլիոն 413 հազար ձու։ Հաղթահարելով լուրջ դժվարություններ, 1966 թվականին նկատելի նվաճումների հասավ նաև Երևանի ֆաբրիկան, որը 1965 թվականին արտադրած 1 միլիոն 864 հազար ձվի դիմաց, 1966 թվականին արտադրեց 2 միլիոն 520 հազար ձու, յուրաքանչյուր ածանի միջին ձվատվությունը հասավ 173 հատի, կամ 50 ձվով ավելի, քան 1965 թվականին։ Հանրապետության թռչնաբուծական ֆաբրիկաներում դա ամենաբարձր ձվատվությունն է չհաշված Շահումյանի և Արտաշատի ԻԹԿ-տոհմային ֆերմաները։

Անհրաժեշտ է հատկապես նշել Շահումյանի ինկուբատորա-թռչնաբուծական կայանի տոհմային ֆերմայի մեծ հաջողությունները գծային թռչունների բուծման և ռեկորդային ձվատվություն ստանալու ուղղությամբ։ 1965 թվա-



կանին մեր հանձնարարականով Սարատովի մարզի Մարքսի անվան տոհմային թռչնաբուծական սովխոզից այդ ֆերման ներմուծվեց ճապոնական ծագում ունեցող Լեգհորն ցեղի գծային թռչունի 14744 ձու։ Մենք որոշակի հիմքեր ունենք հանձնարարելու, որպեսզի մեզ մոտ գծային թռչունի տոհմային ձու ներմուծվի այդ տնտեսությունից, քանի որ իր կլիմայական պայմաններով Սարատովի մարզը բավականաչափ նման է Արարատյան դաշտավայրի ցամաքային կլիմային։ Ինկուբացիան անցավ բավականաչափ հաջող՝ ճտահանությունը կազմեց 75 տոկոս, մատղաշն աճեցվեց հաջողությամբ՝ պահպանումը մինչև 6 ամսական հասակը կազմեց 92—95 տոկոս։ 1965 թվականի հոկտեմբերի սկզբներին համալրվեց 4126 գլխից բաղկացած ածանների հոտը։ Շնորհիվ լիարժեք կերակրման և հոգատար խնամքի գծային թռչուններից՝ ձվարկման առաջին իսկ ամսից սկսած, ստացվում էր շատ բարձր ձվատվություն, ընդ որում տարվա գրեթե բոլոր եղանակներին՝ (աշնանը, ձմռանը և գարնանը) այն կազմում էր 79—80 տոկոս (մի ածանից ամսական 24 ձու)։ Նույնիսկ ամռան շոգ ամիսներին (հունիս-օգոստոս), երբ դրսի ջերմությունը ստվերում հասնում էր 38—40°, նրանց ձվատվությունը 73—74 տոկոսից չէր իջնում (յուրաքանչյուր ածանից ստացվում էր ամսական 21,9—22 ձու)։ Այդ ֆերմայի հավերի տարեկան միջին ձվատվությունը (3230 միջին տարեկան գլխաքանակից) հասավ 261-ի։ Նույն ցեղին ու գծին պատկանող ոչ մեծ գլխաքանակ ածաններ (110 գլուխ) փորձի տակ էին գտնվում Հայկական ՍՍՀ ԳԱ ֆիզիոլոգիայի ինստիտուտի էքսպերիմենտալ բազայում, որտեղ տարվում էր ձվատվության անհատական հաշվառում և մեր պայմաններին այդ թռչունի օդընտելացման ֆիզիոլոգիական մի քանի առանձնահատկությունների ուսումնասիրություն։

Ինստիտուտում ստացված մթերատվության փաստացի ցուցանիշները լիովին հաստատեցին այն արդյունքները, որոնք ձեռք էին բերվել Շահումյանի ԻԹԿ-տոհմային ֆերմայում։ Տարեկան միջին ձվատվությունը ինստիտուտի էքսպերիմենտալ բազայում կազմեց 274 հատ, ճտահանության տոկոսը, մատղաշի և հասակավոր թռչունի պահպանման ցուցանիշները նույնպես համընկան Շահումյանի ԻԹԿ ֆերմայի ցուցանիշների հետ։

Այսպիսով, պարզված է, որ միանգամայն ռեալ է, Հայաստանի պայմաններում Լեգհորն ցեղի գծային թռչուններից ստանալ այնպիսի բարձր ձվատվություն, որը գտնվում է համաշխարհային նվաճումների մակարդակի վրա։

Համեմատաբար բարձր մթերատվություն ստացավ ճապոնական ծագում ունեցող նույն գծի թռչուններից նաև Արտաշատի ԻԹԿ-տոհմային ֆերման, որն սկսեց գործել անցյալ տարվա սկզբներից և աճեցրեց 20 հազար թռչուն, այդ թվում մոտ 1000 ածան, որոնք ձվարկումն սկսեցին երկրորդ կիսամյակում։ 6 ամսում յուրաքանչյուր ածանից ստացվեց մոտ 100 ձու և հաշվարկած տարեկան ձվատվությունը կազմեց 201, պլանով նախատեսված 148-ի փոխարեն։ Եթե նկատի ունենանք, որ այդ կոլեկտիվը դեռ շատ երիտասարդ է և նոր է աշխատանքի փորձ կուտակում, ապա ձեռք բերված հաջողությունը պետք է համարել միանգամայն գոհացուցիչ։ Այս նորաստեղծ թռչնաբուծական տնտեսության օրինակը նույնպես հաստատում է, որ մեր հանրապետությունում ևս կարելի է սելեկցիայի ենթարկված թռչուններից բարձր ձվատվություն ստանալ։

Բայց միամտություն կլիներ կարծել, որ բավական է ներմուծել սելեկցիայի ենթարկված բարձր մթերատու ցեղի թռչունի ձու կամ մատղաշ և ռե-

կորդային ձվատվությունն արդեն ապահովված է: Պետք է նկատի ունենալ, որ ներմուծվող գծային թռչունները (մանավանդ արտասահմանյան ծագում ունեցող) շատ քնքուշ են և դժվար են հարմարվում նոր պայմաններին: Նրանց կենսունակությունը բարձր չէ՝ հատկապես ինտենսիվ ձվարկման շրջանում, ձվի կշիռը փոքր է՝ տատանվում է 50—51 գրամի սահմաններում: Ձվատվության ուղղությամբ խիստ մասնագիտացված թռչունը շատ պահանջկոտ է կերերի նկատմամբ, հատկապես սպիտակուցների, վիտամինների, անփոխարինելի ամինաթթուների և միկրոէլեմենտների: Թվարկած գործոնները բարձր մթերատվության նյութական հիմք են կազմում: Բայց դրանց իրացումը ամբողջովին կախված է արտադրության մեջ աշխատող մասնագետների և թռչնապահների հմտությունից: Շահումյանի ԻԹԿ-տոհմային ֆերման գծային թռչուններից ռեկորդային ձու ստացավ շնորհիվ այն բանի, որ կայանի կոլեկտիվը, որին գլխավորում է աշխատանքի մեծ փորձ ունեցող բազմավաստակ զոոտեխնիկ Լուսյա Թումանյանը, բոլոր ջանքերը գործադրեց բարձր արդյունքի հասնելու համար: Իրենց անձնվեր աշխատանքով առանձնապես աչքի ընկան արտադրության պետ՝ ավագ զոոտեխնիկ Ա. Մարտիրոսյանը, հանրապետության վաստակավոր զոոտեխնիկ Ն. Հովհաննիսյանը, տոհմային ֆերմայի զոոտեխնիկներ Հ. Վարդիկյանը, Ս. Դանիելյանը, թռչնապահներ Մ. Կարապետյանը և Վ. Հովհաննիսյանը: Այդ էնտուզիաստներին մշտական գիտակոնսուլտացիոն օգնություն են ցույց տալիս Հայկական ՍՍՀ ԳԱ Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի գյուղատնտեսական կենդանիների և թռչունների ֆիզիոլոգիայի և մթերատվության խթանման սեկտորի գիտական աշխատողները, առանձնապես ավագ գիտաշխատող Ս. Առաքելյանը: Շահումյանի ԻԹԿ-տոհմային ֆերմայից բացի, ճապոնական ծագում ունեցող գծային թռչուններ աճեցրին նաև Հայթռչնարդի մյուս տնտեսությունները, Գետամեջի սովխոզը, Երևանի, Էջմիածնի և Լենինականի թռչնաբուծական ֆաբրիկաները: Բայց այդ տնտեսությունները չկարողացան հասնել այնպիսի ցուցանիշների, ինչպիսիք ձեռք բերեց Շահումյանի ԻԹԿ-տոհմային ֆերման: Նշված տնտեսություններում գծային թռչունների տարեկան միջին ձվատվությունը 175—180 հատից չանցավ:

Վերը բերված համեմատական տվյալները ցույց են տալիս թռչնաբուծությունը արդյունաբերական հիմքի վրա վարելու անվիճելի առավելությունները: Պետք է ասել, որ այս գործում մեծ դեր կատարեց մասնագիտացված թռչնաբուծական գլխավոր վարչությունը՝ Հայթռչնարդը, որը կազմակերպվել է երկու տարի առաջ: 1966 թվականին, ձվի համախառն արտադրանքը Հայթռչնարդի սիստեմի տնտեսություններում կազմեց 21 միլիոն հատ, իսկ թռչունի մսի արտադրությունը՝ 5493 ցենտներ: Նույն տնտեսություններում, ընդամենը երկու տարի առաջ, արտադրվել էր 11 միլիոն 212 հազար ձու և 3028 ցենտներ թռչունի միս: Թռչնաբուծական հիմնական մթերքների արտադրությունը երկու տարվա ընթացքում գրեթե կրկնապատկվել է: Սա, անշուշտ, լուրջ նվաճում է: Բայց այս նվաճումները պետք է դիտել որպես առաջին քայլեր: Նոր հնգամյա պլանի համաձայն Հայթռչնարդի սիստեմի տնտեսությունները 1970 թվականին պետք է արտադրեն 90 միլիոն ձու և 55 հազար ցենտներ թռչունի միս: Այդ առաջադրանքը կատարելու համար ծրագրված է հնգամյակում կառուցել և շահագործման հանձնել տասը նոր խոշոր թռչնաբուծական ֆաբրիկա, այդ թվում՝ չորս ձվատու ուղղության, իսկ վեց մսատու ճտեր (բրոյլերներ) արտադրելու համար: Ձվատու ուղղության ֆաբրիկաները տարեկան կար-



տադրեն 20—100 միլիոն ձու, իսկ բրոյլերային ֆաբրիկաները՝ 500—4000 տոննա միս կամ 500 հազարից 4 միլիոն մսացու ճուտ՝ միջինը մեկ կիլոգրամ քաշով: Միաժամանակ ընդլայնվելու են ներկայումս գործող ֆաբրիկաները, որոնցից յուրաքանչյուրի տարեկան արտադրությունը 7—8 միլիոն ձվից կհասնի 20 միլիոնի: 10 նոր ֆաբրիկաներից 5-ը արդեն կառուցվում է: Ընդլայնվում են գործող ֆաբրիկաները: Նոր կառուցվող 5 ֆաբրիկաներից 4-ը (Սյունիքի, Սպիտակի, Լուսակերտի ու Արտաշատի ձվային ուղղության) մասամբ շահագործման են հանձնվել և անցյալ տարվա երկրորդ կիսամյակին տվեցին առաջին արտադրանքը: Սյունիքի ֆաբրիկան արտադրեց 413 ցենտներ թռչունի միս և 310 հազար ձու: Արտաշատի ֆաբրիկան՝ 455 հազար ձու և 112 ցենտներ միս: Ընթացիկ տարում կսկսվի Բարձրաշենի ֆաբրիկայի կառուցումը, որը տարեկան կարտադրի 40 միլիոն ձու և Կիրովականի բրոյլերային ֆաբրիկան՝ երկու հազար տոննա թռչունի մսի արտադրական հզորությամբ: Այդ երկու ձեռնարկություններն էլ պետք է շահագործման հանձնվեն 1969 թ.:

Նշված ծրագրի իրագործման շնորհիվ Հայաստանում արդյունաբերական թռչնաբուծությունը նոր թափ կստանա՝ խոշոր մասնագիտացված տնտեսությունների թիվը կհասնի 15-ի: Հնգամյակի վերջում՝ 1970 թվականին, միայն այդ տնտեսությունները կարտադրեն 90 միլիոն ձու և 5,5—6 հազար տոննա թռչունի միս կամ երեք ու կես անգամ ավելի ձու և մոտ 10 անգամ ավելի թռչունի միս, քան արտադրել են հանրապետության բոլոր կոլտնտեսությունների թռչնաբուծական ֆերմաները 1966 թվականին: Միաժամանակ, գործնական քայլեր են արվում համակցված կերի արդյունաբերությունը ընդլայնելու ուղղությամբ: Արդեն սկսված է լիզինի՝ չափազանց արժեքավոր, անփոխարինելի ամինաթթվի գործարանի կառուցումը, միջոցներ են ձեռնարկվում կազմակերպելու նաև կերային շաքարասնկերի արտադրությունը: Այսպիսով, ստեղծվում է ամուր բազա թռչնաբուծության հետագա ինտենսիվացման և խոր մասնագիտացման համար:

Բնականորեն հարց է ծագում, իսկ ինչպիսի՞ տնտեսական արդյունավետություն ունեն արդյունաբերական տիպի թռչնաբուծական տնտեսությունները՝ ֆաբրիկաները, մասնագիտացված սովխոզները: Այդ տիպի ձեռնարկությունների գործունեության արդյունքները երկրի տարբեր շրջաններում ցույց են տալիս, որ գյուղատնտեսական արտադրության այս ճյուղը ամենաշահութաբեր ճյուղերից է, ուր կապիտալ ներդրումները ավելի արագ են ետ գնվում: Տնտեսագետների հաշվարկները ցույց են տալիս, որ ձվային ուղղության թռչնաբուծական ֆաբրիկաները, որոնք ունեն 250 հազար ածան, տարեկան արտադրում են 50 միլիոն ձու, 700 տոննա թռչունի միս՝ 7 միլիոն 200 հազար ռուբլու ընդհանուր արժողությամբ, որից մթերքների ինքնարժեքը կազմում է 3 միլիոն 400 հազար ռուբլի: Այլ կերպ ասած, դրանք տարեկան տալիս են 3 միլիոն 800 հազար ռուբլու շահույթ: Այդպիսի ֆաբրիկայի կառուցման, ներառյալ նաև կահավորման համար ծախսվում է 5 միլիոն ռուբլի: Հետևապես, կապիտալ ներդրումները ետ են գնվում մեկ ու կես տարուց էլ շուտ: Պատահական չէ, որ բոլոր խոշոր թռչնաբուծական ֆաբրիկաները, որպես կանոն, շահութաբեր են և մեծ եկամուտներ են տալիս:

Ինտենսիվ թռչնաբուծության հաջող զարգացումը մեծ չափով պայմանավորված է ժամանակակից գիտության նվաճումներով: Համաշխարհային թռչնաբուծության առաջադիմության մեջ մեծ դեր են խաղում փորձի և գիտական ինֆորմացիայի փոխանակումը, որը կազմակերպում է թռչնաբուծա-

կան համաշխարհային գիտական ընկերությունը։ Թռչնաբուծական համաշխարհային XIII հերթական կոնգրեսը, որն առաջին անգամ հրավիրվեց Սովետական Միությունում (Կիևում), անցած տարվա օգոստոսին մեծ չափով խթանեց թռչնաբուծությունը գիտական հիմունքներով զարգացնելուն։ Գիտական Ընկերության պատմության մեջ դա ամենալայն համաժողովն էր, որին մասնակցում էր 2472 դելեգատ՝ աշխարհի 53 երկրներից, այդ թվում 607-ը Սովետական Միությունից։ Կոնգրեսի 7 սեկցիաներում և 6 սիմպոզիումներում լսվեց ավելի քան 200 զեկուցում, որից 40-ը կարդացին սովետական գիտնականները (դրանք նվիրված էին գիտության առավել կարևոր ճյուղերին—գենետիկային և բուծմանը, ֆիզիոլոգիային և կերակրմանը, ինկուբացիային և սաղմնաբանությանը, պահվածքին և էկոնոմիկային, ժառանգականության և արտաքին միջավայրի փոխադարձ կապին, բազմացման բիոլոգիային և թռչունների հիվանդությունների պրոֆիլակտիկային)։ Զեկուցումներով հանդես եկան հռչակավոր գիտնականներ, այդ բնագավառի խոշոր մասնագետներ և արտադրության կազմակերպիչներ։

Կոնգրեսին զուգահեռ գործում էր թռչնաբուծական խոշոր ցուցահանդեսը, որին մասնակցում էին 21 երկրներ՝ բազմապիսի և շատ հետաքրքրական էքսպոնատներով։ Ցուցահանդեսն այցելեցին և թռչնաբուծության բնագավառում ձեռք բերված համաշխարհային նվաճումներին ծանոթացան ավելի քան տասը հազար մասնագետ և արտադրության առաջավոր։ Կոնգրեսի մասնակիցները միահամուռ այն միտքն էին արտահայտում, թե ժամանակակից գիտության հաջող զարգացումը հրամայաբար պահանջում է գիտնականների ուժերի միավորում, սերտ համագործակցություն և գիտության նվաճումների, ինչպես նաև առաջավոր փորձի ընդհանրացում և լայն կիրառում արտադրության մեջ։ Շնորհիվ տարբեր երկրների գիտնականների ջանքերի, վերջին տարիներին հաջողվել է ստեղծել գյուղատնտեսական թռչունների բազմաթիվ ցեղեր, ներցեղային մասնագիտացված գծեր և միջգծային հիբրիդներ, որոնք աչքի են ընկնում չափազանց բարձր մթերատվությամբ։ Զվատու ուղղությամբ շատ գծերի թռչուններ (հավեր) տարեկան տալիս են միջինը 280—300 ձու։ 10 ձվի արտադրության վրա ծախսվում է ընդամենը 3 կգ կեր կամ երկու անգամ պակաս՝ միջին ձվատվության դեպքում։ Մսային ուղղությամբ մասնագիտացված ցեղերը և գծերը, մանավանդ նրանց ճիշտ զուգորդումից ստացված խառնացեղերը, աչքի են ընկնում մսային վաղահասությամբ և բարձր են հատուցում կերը։ Մի շարք դեպքերում մսացու ճտերի կենդանի քաշը 45—60 օրական հասակում հասնում է 2 կգ և 1 կգ քաշաճի վրա ծախսվում է ընդամենը 1,8—2 կգ կեր, սովորական պայմաններում ծախսվող 4—5 կգ-ի փոխարեն։ Այդպիսի մթերատվությունը պահանջում է, իհարկե, կերակրման և պահվածքի հատուկ պայմաններ, որոնք խիստ տարբերվում են սովորական, բնական պայմաններից։

Ներկայումս գիտնականները համակարծիք են այն հարցում, որ իդեալական թռչնանոցն այն է, որը լիովին մեկուսացված է արտաքին միջավայրից, որտեղ ստեղծվում է արհեստական եղանակով կարգավորվող միկրոկլիմա։ Այդպիսի թռչնանոցներում թռչունի համար ստեղծվում է ամենանպաստավորը գարնանային եղանակ ամբողջ տարվա ընթացքում։ Արհեստական լուսավորության և կարգավորվող միկրոկլիմայի օգտագործումը, զուգակցված լիարժեք կերակրման հետ, անկախ տարվա եղանակից, ապահովում է բարձր մթերատվություն։ Կարգավորվող միկրոկլիմայի պայմաններում մեկ ածանից



ստացվում է 60 ձու ավելի, քան սովորական զրոսաբակային պահվածքի պայմաններում։ Մթերատվության բարձրացման վճռական գործոններից մեկն էլ թռչունի կերակրումն է բարձր կալորիականություն ունեցող, ըստ սննդանյութերի ճիշտ հաշվեկշռված կերաբաժիններով։

Այսպիսով, ժամանակակից, ինտենսիվ թռչնաբուծությունը երեք գլխավոր գործոնների վրա է հենվում՝ ա) ցեղերի և գծերի ճիշտ ընտրություն՝ խորացած տոհմային-սելեկցիոն աշխատանքի հիման վրա, բ) թռչունի պահվածքը կարգավորող միկրոկլիմայի պայմաններում, գ) լիարժեք կերակրումը՝ զարգացած համակցված կերերի արդյունաբերության բազայի վրա։

Գյուղատնտեսական թռչունների վերարտադրության սեզոնայնությունը վերացնելու գործում վճռական դեր է խաղում նաև թռչունի բազմացման պրոցեսի ինդուստրացումը՝ արհեստական ճտահանությունը։

Հայաստանի պայմաններում այս հարցերը դեռ մասամբ են լուծված։ Արտադրության կազմակերպիչներից, մասնագետներից և գիտնականներից պահանջվում է միավորել ջանքերը և համառ, հետևողական աշխատանքով հասնել այն բանին, որ ժամանակակից գիտության նվաճումները և առաջավոր փորձը լայնորեն կիրառվեն արտադրության մեջ։ Միայն այդ ճանապարհով է հնարավոր թռչնաբուծության ինտենսիվացման պրոցեսը նոր աստիճանի բարձրացնել։

Մեր կարծիքով հատուկ ուշադրություն պետք է նվիրել գենետիկայի և սելեկցիայի ժամանակակից նվաճումների մակարդակին համապատասխան տոհմային աշխատանքի կազմակերպմանը՝ մասնավորապես ներմուծվող ցեղերի և գծերի ընտրությանը, նրանց օդընտելացման ունակությունների ուսումնասիրության հիման վրա հանրապետության բնակլիմայական տարբեր պայմաններում։ Թե որքան կարևոր է այդ հարցի ճիշտ լուծումը, ցույց է տալիս հետևյալ օրինակը։ 1965 թվականին մեր հանրապետության մի քանի թռչնաբուծական տնտեսություններ, բացի ճապոնական ծագում ունեցող լեգհորն ցեղի գծային հավերի ձվից, ներմուծեցին նաև հոլանդական ծագում ունեցող նույն ցեղի գծային հավերի ձու՝ ճտահանման և բազմացման նպատակով։ Մեկ տարվա ընթացքում կատարված համեմատական ուսումնասիրությունը ցույց տվեց, որ հոլանդական ծագում ունեցող լեգհորները ինչպես կենսունակությամբ, այնպես էլ մթերատվությամբ խիստ զիջում են ճապոնական լեգհորներին և շատ վատ են օդընտելանում մեր կոնտինենտալ կլիմային։ Ահա փաստերը։

Հոլանդական լեգհորների 87800 ինկուբացված ձվից ստացվեց ընդամենը 44060 ճուտ, ճտահանությունը կազմեց 50 տոկոս (նորմալ ճտահանությունը կազմում է 75—80 տոկոս և ավելի), այն ժամանակ, երբ ճապոնական ծագում ունեցող լեգհորների ձվի ճտահանությունը 75 տոկոսից ավելի էր (75,25 տոկոս)։ Մատղաշի պահպանումը մինչև 6 ամսական հասակը առաջին դեպքում կազմեց ընդամենը 10, իսկ երկրորդում՝ 93,4 տոկոս։ Հոլանդական ծագում ունեցող լեգհորների 44060 ճտից աճեցվեց ընդամենը 1600 ածան, իսկ ճապոնական ծագում ունեցող լեգհորների 9.400 ճտից՝ 4126։ Ինչպես նշվել է վերևում ճապոնական լեգհորների տարեկան միջին ձվատվությունը կազմեց 261 հատ, իսկ հոլանդականներինը՝ 164։ Միաժամանակ, պետք է ասել, նաև, որ անգամ մեր պայմաններին համեմատաբար լավ օդընտելացվող ճապոնական ծագում ունեցող գծային թռչունները ձվարկման շրջանում մեծ անկումներ են տալիս, որն առաջին տարում հասավ 33 տոկոսի։

*Դա նորմայից 3—4 անգամ ավելի է։ Այս փաստերը ապացուցում են, որ անհրաժեշտ է հետևողական աշխատանք տանել ներմուծվող ցեղերի և տեսակների կենսունակությունը բարձրացնելու ուղղությամբ։ Մեր կատարած փորձերը ցույց են տալիս, որ արդյունավետ եղանակներից մեկը կարող է լինել այդ թռչունների ներածական տրամախաչումը տեղական պայմաններին լավ հարմարված, բարձր կենսունակություն ունեցող ցեղերի հետ՝ արդյունաբերական հիբրիդներ ստանալու համար։*

*Առաջնակարգ կարևորություն ունեցող խնդիրներից մեկը պետք է համարել բարձր մթերատու թռչունի ճիշտ կերակրումը։ Ապացուցված է, որ ժառանգականորեն բարձր մթերատվություն ունեցող ածանից տարեկան կարելի է 250—280 և ավելի ձու ստանալ միայն այն դեպքում, երբ նրա կերաբաժինը ապահովված է լիարժեք սպիտակուցներով, անփոխարինելի ամինաթթուներով, անհրաժեշտ վիտամիններով, միկրոէլեմենտներով, հանքային կերով և անհրաժեշտ քանակությամբ ճարպով։*

*Այդպիսի համակցված կեր կարող է և պետք է արտադրի հանրապետության խտացրած կերերի արդյունաբերությունը։*

*Վերջապես, մեր շինարարական կազմակերպությունները, Հայթռչնարդի և թռչնաբուծական տնտեսությունների ղեկավարները պետք է մաքսիմալ չափով արագացնեն նոր ֆաբրիկաների կառուցումը և գործողների ընդլայնումը, որպեսզի թռչունը պահվի կարգավորվող միկրոկլիմայի պայմաններում, իսկ մասնագիտացված տնտեսություններն աշխատեն ավարտված տեխնոլոգիական ցիկլով։ Այս հարցերի ճիշտ և ժամանակին լուծումը մի նոր, հզոր խթան կհանդիսանա Հայաստանում արդյունաբերական թռչնաբուծության հետագա վերելքի համար։*



# ՄԱՐԴԸ ԹԱՓԱՆՑՈՒՄ Է ԸՆԴԵՐՔԻ ԽՈՐՔԵՐԸ

ՍՄԿԿ XXIII համագումարը մեծ ուշադրություն նվիրեց երկրաբանությանը։ Եվ այդ պատահական չէ։ Երկրում հսկայական աշխատանքներ են ծավալվել հանքային բնական հարստությունների հայտաբերման և ուսումնասիրման ուղղությամբ։ Անցած յոթնամյակում արդյունաբերության ինտենսիվ զարգացման, հանքային հումքի հանույթի աճի հետ մեկտեղ, ոչ պակաս ինտենսիվությամբ էին ավելանում օգտակար հանածոների հետախուզված պաշարները։ Երկրաբանի աշխատանքը բարձր գնահատեց կուսակցության համագումարը։ Այդ տարիներին հայտաբերվել են ավելի քան հազար խոշոր. հանքավայրեր, որոնց բազայի վրա կառուցվել են 200-ից ավելի հանքարդյունահանող ձեռնարկություն։ Հանքային հարստությունների հայտաբերման և ուսումնասիրման գործում իրենց արժանավոր ավանդն են դնում նաև մեր հանրապետության երկրաբանները։ Նոր հնգամյակում մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման վիթխարի թափը նախանշելիս նկատի են առնվել անցյալ տարիների երկրաբանական-հետախուզական աշխատանքների հաջողությունները։ Պլանի համաձայն, հնգամյակում օգտակար հանածոների հետախուզված պաշարները կավելանան 1,5—2,2 անգամ։

Երկրաբանության հաջողությունների մասին խոսելիս, ամենից առաջ, նկատի է առնվում օգտակար հանածոների նոր հանքավայրերի հայտնաբերումը։ Եվ դա հասկանալի է։ Այդ գործում մեծ է երկրաբանության դերը։

Երկրաբանությունը գիտություն է Երկրի կառուցվածքի, նրա ծագման ու զարգացման մասին. այն ստեղծվել է ապարների և Երկրի կեղևի ուսումնասիրման բոլոր մատչելի մեթոդներով։ Հին քիմիկոսների նման, որոնք նյութերը որոշում էին աչքաչափով, համով ու հոտով, երկրաբանները ևս երկար ժամանակ իրենց դաշտային հետազոտությունները կատարում էին հիմնական «գիտական գործիքի»՝ երկրաբանական մուրճի օգնությամբ. դրա համար էլ ընդերքի հետախույզներին հաճախ նմանեցնում են յուրատեսակ ճանապարհորդների, որոնք հայտաբերում են այն, ինչ ձեռքներն է ընկնում։ Մինչդեռ ժամանակակից երկրաբանը, ամենից առաջ, մասնագետ ինժեներ է, որը գիտական խոր անալիզի միջոցով լուծում է երկրաբանական բարդ խնդիրները ու կանխորոշում, թե որտե՛ղ և ինչպիսի՛ հանածոներ կարող են լինել։

Մեր օրերում երկրի մակերեսամերձ օգտակար հանածոներն սկսել են սպառվել, իսկ ոչ խոր ընկած և արտաքին տվյալներով հեշտ հայտնաբերվող գրեթե բոլոր հանքավայրերն արդեն հայտնի են և երկրաբանական հետազոտությունն այժմ, զինված տեխնիկայի և որոնումների գիտական նոր մեթոդներով, ձգտում է թափանցել երկրի կեղևի խոր հորիզոնականները։

Այժմ երկրաբանն ունի ամենագնացներ, ուղղաթիռներ, հորատող ինքնագնաց մեքենաներ. ուղղակի օդից, ինքնաթիռների մեջ տեղակայված գեոֆիզիկական նոր սարքերի օգնությամբ, որոնում են մագնիսական և ռադիոակտիվ հանքեր։ Կան լեռները լուսավորելու, այնտեղ թաքնված հանքատարածությունները գտնելու սարքեր։

Մեր օրերում երկրաբանության զարգացումն անհնար է առանց ֆիզիկայի ու գեոֆիզիկայի, քիմիայի ու գեոքիմիայի, աստղագիտության ու աստրոֆիզիկայի, բիոլոգիայի և այլ գիտությունների տվյալների։ Իրոք հնարավոր կլինե՞ր արդյոք սովորական եղանակներով հայտնաբերել 2700—3000 մետր խորություններում գտնվող արևմտա-սիբիրյան նավթը, երբ մակերեսում նավթաբերության ոչ մի նշույլ չկա, կամ Վորոնեժի մարզում գտնել հաստ նստվածքների տակ թաքնված նիկելի հանքավայրը։

Գիտնականների և արտադրության աշխատողների երկար տարիների սերտ համագործակցությամբ Հայաստանում հայտնաբերվեցին գազաբեր հորիզոնականներ, որոնք հուսալի տվյալներ են տալիս գազի արդյունաբերական նշանակություն ունեցող հանքավայրի առկայության մասին։ Նավթագազահետախուզության հիմնական բարդությունն այն է, որ հանրապետությունում նավթի ու գազի հեռանկար ունեցող տերիտորիաները պատած են բազալտե հաստ ծածկով, որը դժվարացնում, երբեմն անհնար է դարձնում գիտական որոնումների, հետազոտական մեթոդների և եղած տեխնիկայի կիրառումը։

Կարելի է պնդել, որ երկրի հարստությունը, նրա ծաղկումն ու հզորությունը մեծ մասամբ որոշվում են հանքային հումքի պաշարներով, լեռնային արդյունաբերության վիճակով և օգտակար հանածոների արդյունահանման չափերով։ Առանց հանքային հումքի հնարավոր չէ զարգացնել էներգետիկան, մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը։ Լենինը, դեռևս սովետական պետության առաջին տարիներին, մեծ ուշադրություն էր նվիրում օգտակար հանածոների՝ նավթի, ածխի, պղնձի, երկաթաքարի արդյունահանման աճին։ Սակայն կասկածից վեր

է, որ գիտության զարգացման մակարդակը ևս բնորոշում է երկրի տնտեսական հզորությունը: Մարքսն ու Էնգելսը իրենց ժամանակակից գիտությունը դիտում էին որպես արտադրանք: Այդ ժամանակներից ի վեր գիտությունը զարգացել, դարձել է համապարփակ, և վիթխարի է նրա ներգործությունը հասարակության, էկոնոմիկայի զարգացման վրա: Գիտությունն ամեն օր նորանոր հնարավորություններ է ընձեռում մարդուն: Դրանց մեծ մասն արդեն օգտագործվում է տեխնիկայի, արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, կենցաղում: Բայց շատ բան էլ դեռ նոր է կանխագծվում և ուրվագծվում: Աշխարհահռչակ գիտնական Կ. Ա. Տիմիրյազևը բազմիցս նշել է, որ չկան «մաքուր» ու «կիրառական» գիտություններ, կան միայն գիտությունը և նրա կիրառումը: Այս աֆորիզմը հիանալի բացահայտում է գիտության ու արտադրության անքակտելի կապը, սակայն մեզ թվում է, որ այն ամենից ավելի վերաբերում է երկրաբանությանը. չէ որ այստեղ փորձառական բազան երկիրն է:

Թե՛ որոնելիս, թե՛ հետախուզելիս կամ հանքավայրը շահագործման հանձնելիս երկրաբանի համար մեծ նշանակություն ունեն տարբեր մասշտաբների երկրաբանական քարտեզները: Դրանք օգնում են ո՛չ միայն գործնական հարցերի վճռմանը, այլև նպաստում են գիտության այն ճյուղի զարգացմանը, որն ուսումնասիրում է օգտակար հանածոների առաջացման և տեղաբաշխման բնական օրինաչափությունները: Այդ ճյուղը հնարավորություն է ընձեռում ասելու, թե որտեղ և ինչ պայմաններում կարող ենք գտնել այս կամ այն օգտակար հանածոն:

Այժմ երկրի վրա,— գրում է ակադեմիկոս Վ. Ի. Սմիռնովը,— մոտ երկու հարյուր պետություն կա ու դրանցից ոչ մեկը լիովին ապահովված չէ սեփական հանքային ռեսուրսներով, ոչ մեկը, բացի Սովետական Միությունից: Երբ Յակուտիայում հայտաբերվեցին ալմաստ պարունակող կիմբեռլիտային խողովակներ, Սովետական Միությունը դարձավ ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ ամեն տեսակ օգտակար հանածոներով ապահովված միակ երկիրը: Ավելին, մեր երկրաբանները գիտեն, թե որտեղ են գտնվում այն հանքատեսակները, որոնք առայժմ չեն օգտագործվում, բայց մի օր կարող են պետք գալ ֆիզիկոսներին ու քիմիկոսներին:

Թե որքան բազմազան է սովետական երկրի երկրաբանական կառուցվածքը, որքան բազմապիսի են նրա օգտակար հանածոները, երևում է մեր երկրի երկրաբանական քարտեզից, որն ունի 190 երանգ և աշխարհի ամենամանրակրկիտն է: Իսկ Հայաստանինը չի զիջում վերջինիս: Սակայն, զուտ երկրաբանական սկզբունքներով կազմված մանրակրկիտ քարտեզն արդեն չի բավարարում ժամանակակից գիտության պահանջները: Այն պետք է կազմվի երկրաբանների, գեոֆիզիկոսների, գեոքիմիկոսների և այլ մասնագետների ընդհանուր ջանքերով, որպեսզի բազմակողմանի արտացոլի երկրագիտության նվաճումները: Միայն այդ դեպքում քարտեզը կհարստացնի մեր պատկերացումները երկրաբանական շերտերի կառուցվածքային-նյութական առանձնահատկությունների մասին և նոր ձևով դրսևորել մեր մոլորակի երկրաբանական կառուցվածքը:

Գիտական սարքերով մարդու մուտքը տիեզերք, ավտոմատ կայանի վայրէջքը Լուսնի վրա ցույց տվին, որ շատ գիտությունների, ինչպես և երկրաբանության համար նոր ժամանակներ են սկսվել: Մարդու ստեղծագործական մեծ կարողությունները, տիեզերքի գաղտնիքների մեջ թափանցելու նրա ունակությունն իրենց արտահայտությունն են գտնում իմացության լուսաշող գագաթները տանող թռիչքի մեջ: Հարուստ գիտությունը, ձուլված առաջավոր ինդուստրիայի, ժողովրդական ստեղծագործության հետ, իր առջև շատ համարձակ խնդիրներ է դնում— թռիչք դեպի հեռավոր աստղերը: Շատ չի անցնի, և մարդը նոր մոլորակներ կնվաճի, կիմանա այլ աշխարհների կենդանի ու անկենդան բնության մասին և ավելի ուժգին կզգա, որ իր հարազատ երկիրը նույնպես քիչ ուսումնասիրված է:

Մարդը շրջում է երկրով մեկ, սակայն դեռևս չգիտե, թե ինչ կա նրա կեղևի խորքում: Գաղտնիք չէ, որ տասը կիլոմետր խորքում, մեր ոտքերի տակ տեղի ունեցող երևույթները մենք ավելի վատ գիտենք և ավելի վատ ենք հասկանում, քան հեռավոր տիեզերական տարածություններում: Չէ՛ որ կառուցվածքի, կազմության, խտության, ջերմության, ճնշման, ֆիզիկո-քիմիական պրոցեսների բաշխումը երկրի ներսում առայժմ մնում է միայն հաշվային տվյալների ու կռահումների սահմաններում: Այնինչ տնտեսապես շահավետ, օգտակար հանածոների ու էներգիայի տարբեր տեսակների այնպիսի հիանալի շտեմարան, ինչպիսին երկիրն է, տիեզերական այլ աշխարհներում մարդկությունը չի գտնի: Իսկ այդ ամենը մեր ոտքերի տակ է:

Ժամանակակից գիտությունը գտնում է, որ երկրագունդը շերտավոր կառուցվածք ունի, նրա կենտրոնում է տեղավորված մեր մոլորակի ամենաչուսումնասիրված մասը՝ ծանր միջուկը, որտեղ նյութերը ինչ-որ յուրահատուկ, մեզ համար բոլորովին անծանոթ վիճակում են: Միջուկը շրջապատված է երեք հազար կիլոմետրանոց պատյանով, որը նույնպես կոշտ է, բայց տեղ-տեղ ունի հեղուկ գոյացությունների ոչ պակաս ծանր շերտեր: Հայտնի է, որ երկրի



պատյանը մեր մոլորակի մասսայի երկու երրորդից փոքր չէ: Տեսնելով պատյանը, ուսումնասիրելով այդ խորհրդավոր շերտի առանձնահատկությունները, գտնելով միջուկը տանող ուղիները, մարդը, վերջապես, կհայտնաբերի երկրի հիմնական պահեստարանները: Պատյանը, իր հերթին, շրջապատված է երկրային կեղևով, որը կազմված է բազալտե և գրանիտագնեյսային շերտերից:

Բնության վերափոխումը, մարդկանց ակտիվ աշխատանքն անհրաժեշտ են դարձնում ինչպես երկրի մակերեսում, այնպես էլ նրա խորքերում տեղի ունեցող երկրաբանական պրոցեսների ուսումնասիրությունը, առանց որոնց անհնար է խորապես ճանաչել բնությունը, այն վերափոխել մարդկության շահերին համապատասխան:

Բնականաբար այսօր ծագում են անհապաղ լուծում պահանջող բազում հարցեր: Ինչպիսի՞ն են երկրի շերտերի դերն ու ազդեցությունը մակերեսում տեղի ունեցող պրոցեսների վրա: Ինչպե՞ս են փոփոխվում խորության հետ ջերմությունն ու ճնշումը: Ինչպիսի՞ն է խոր ընդերքի նյութերի ֆիզիկական վիճակը և ազդո՞ւմ է արդյոք այն օգտակար հանածոների հանքավայրերի ձևավորման և սեյսմիկ երևույթների վրա:

Հիմնականը, ինչպես զուտ երկրաբանական, այնպես էլ ընդհանուր տեսական առումով, ներքին պրոցեսների ծագման ու շարժիչ ուժերի հարցն է, որոնցով պայմանավորվում են երկրի կեղևի ձևավորման, գոյության ու զարգացման առանձնահատկությունները: Խոսքն այժմյան վիճակն ու կառուցվածքը պայմանավորող վերափոխիչ ուժերի էության պարզաբանման մասին է: Դրանց ճանաչումը գիտականորեն կհիմնավորի օգտակար հանածոների ներկա և ապագա որոնումները, կանխագուշակումները կդառնան առավել հուսալի, հնարավոր կլինի կանխել բնական երևույթների վնասակար ու կործանարար պրոցեսները: Սեյսմիկ ալիքները ցույց են տալիս, որ 10—70 կիլոմետր խորություններում է սկսվում երկրաշարժեր հարուցող ամենամեծ օջախների գոտին, իսկ ավելի խորքերում՝ հրաբխային օջախների գոտին է: Հրաբխային ժայթքումների ուսումնասիրությունը ինչ-որ չափով օգնում է՝ հետախուզելու խորքերի կառուցվածքը, երկրի ստորկեղևյա շերտը: Ամենքին հայտնի տուֆը, խարամը, պեմզան, հրահեղուկ զանգվածները հրաբխի գործունեության արգասիք են: Դրված է մագմատիզմի բնույթի հարցը: Մագմա... դա քիմիական բազում տարրերի առաջացման աղբյուր է: Որքա՞ն հետաքրքրական ու արժեքավոր տեղեկություններ կարող է տալ այդ նյութի էության իմացումը: Մագմայից գոյացած նյութերն այժմ բացառիկ նշանակություն ունեն: Խոսքը վերաբերում է ժողովրդական տնտեսության այլևայլ ճյուղերում օգտագործվող բազալտին, գրանիտին, պեռլիտներին և այլ նյութերի, որոնք ապագայում պետք է փոխարինեն հանքային հումքին:

Երկրի խորքային էներգիայի տիպերի ու դրանք մարդու գործնական նպատակներին ծառայեցնելու հարցն է դրված: Երկրաբանությունը որոնում է խորքերում թաքնված անտեսանելի աշխարհներ: Իրականացել է Կ. Է. Ցիոլկովսկու հանճարեղ մարգարեությունը. դուրս գալով իր օրրանից ու թափանցելով տիեզերքի, նյութի միկրոկառուցվածքի՝ ատոմի և ատոմային միջուկի բյուրեղային ցանցի կառուցվածքի, կենդանի բջիջների խորքերը, մարդը չի կարող կանգ առնել երկրի խորքերի առջև:

Չէ՛ որ խոսքը վերաբերում է մարդու կենսական պահանջների բավարարման նոր թեորիայի մշակմանը, որն սկզբունքորեն կվերափոխի երկրի ընդերքի օգտագործման մինչ այժմ գոյություն ունեցող պրակտիկան և ուղիներ կբացի դեպի դեռևս անհայտ, բոլորովին նոր օգտակար հանածոների և էներգիայի շտեմարաններ, որոնց գոյությունը երկրի չհետազոտված խորքերում կասկածից վեր է:

Թեորիական մեծ մասշտաբի ընդհանրացումներով սովետական գիտնականներն ընթանում են համաշխարհային գիտության առջևից: Երկրի խոր ընդերքի կառուցվածքի թեորիայի հետագա զարգացումը հսկայական միջոցներ, կազմակերպական մեծ ջանքեր է պահանջում: Ժամանակակից գիտությունը և, հատկապես, երկրաբանությունը, այժմ այնպիսի բնագծեր է նվաճել, որ չի կարող բավարարվել նախկին միջոցներով ու ճանաչողական մեթոդներով:

1960 թվականին Հելսինկիում կայացած գեոդեզիստների ու գեոֆիզիկոսների միջազգային համագումարում ընդունվեց, այսպես կոչված՝ «Վերին պատյանի» նախագիծ, որը կանխատեսում է երկրի կեղևի ու նրա ավելի խոր մասերի համակողմանի հետազոտություն: Գիտության ու տեխնիկայի առջև հառնեց մի բարդ խնդիր—հորատել երկրի անսահման խորքերը. այդ, ինչպես և տիեզերական թռիչքը, կարող են իրականացնել տնտեսապես ու տեխնիկապես հզոր պետությունները, քանի որ ամեն մի այդպիսի հորատանցքը կլինի ինդուստրիայի գլուխգործոց, տեխնիկական հրաշք, իսկ խորքերից պոկած ապարի առաջին կտորն իր նշանակությամբ չի զիջի Լուսնից բերված քարին: Սովետական մարդու մտքի ու նպատակասլաց գործունեության մեծագույն նվաճումները կասկած չեն հարուցում, որ նա կգտնի այդ համարձակ պլանի իրականացման ձևերն ու մեթոդները: «Վերին պատյանի» նախագծին համապատասխան, Սովետական Միությունում մեծ թափով սկսվել է երկրի ֆիզիկայի ու քիմիայի համատեղ ուսումնասիրությունը: Ակադեմիկոս Ա. Վ.

նում է, որ առաջադրված հարցերը գերազանցապես գաղափարական և մասամբ՝ գրականագիտական են։ Եթե այդ հարցերին ուսուցիչը փորձի լիարժեք խորությամբ պատասխանել, ժամերը չեն բավականացնի, եթե փորձի չպատասխանել, անդրադառնալ միայն Մեծապատիվ մուրացկաններ վեպին, ապա սովորողները Պարոնյանի ստեղծագործության մասին խիստ թյուր, միակողմանի պատկերացում կկազմեն։ Իսկ եթե փորձի ինչ-որ միջինը գտնել, որը և աշխատում են անել շատ ուսուցիչներ, դասավանդումը կլինի չոր ու ցամաք, Պարոնյանի հյութեղ երգիծանքը՝ իր բազմազան կողմերով, աշակերտները չեն ընկալի։

Ստացվում է այսպես. ծրագիրը ուսուցչից պահանջում է այդպես անցնել, ընկ. Աթայանն էլ մեղադրում է ուսուցիչներին և շեշտում, որ այդպես չպետք է անցնել, այլ պետք է «...պարզել ամեն մի երկի յուրահատկությունը՝ լեզվի, ոճի, պատկերների, արտահայտչական միջոցների, տրամաբանական կառուցվածքի, հոգեբանական բախումների վերլուծման միջոցով» (Լենինյան ուղիով, № 10, էջ 104, 1966 թ.)։

Մեր կարծիքով, տվյալ ձևով վեպն անցնելը բոլորովին էլ դժվար չէ, բայց առայժմ այդ չէ գլխավորը. նախ՝ պետք է պարզել արմատական, ամենահիմնական հարցը՝ ի՞նչ անցնել տվյալ հեղինակին հատկացված ժամերի ընթացքում։ Երբ այդ հստակությամբ դրվի ուսուցչի առջև, պետք է արդեն անպայման դնել մյուս հարցը՝ ինչպե՞ս անցնել տրված թեման։ Առանց նշված խնդիրները որոշակի դարձնելու, համաձայնեցնելու, անօգուտ է գրականության պատշաճ դասավանդման մասին խոսելը և ուսուցչին մեղադրելը։ Ուսուցիչը երբեք իրավասու չէ պետական ծրագրում տրված հարցերն անտեսել, չպարզաբանել դրանք, չկատարել ծրագրի պահանջները։ Երբ նա փորձում է ծրագրից շեղվել, մեղադրվում է, փորձում է հակադրվել դասագրքերի մեջ եղած հարցերի այս կամ այն մեկնաբանությանը, ձևակերպումներին՝ մեղադրվում է, այժմ էլ ընկ. Աթայանն է մեղադրում, որ նա դասավանդում է այնպես, ինչպես ծրագիրն է պահանջում, ինչպես դասագրքում է շարադրած։ Ի՞նչ անել...

Եզրակացությունը մեկն է. կազմել այնպիսի ծրագրեր, որոնք ուսուցչին մղեն ինքնուրույն ստեղծագործական աշխատանքի և ոչ թե դարձնեն դասագրքերի կամ գրականագետների մտքերի սոսկ փոխանցող, կրկնող։

Լիովին համամիտ եմ ընկ. Աթայանի այն տեսակետին, որ նյութն ընտրելիս պետք է հաշվի առնել և՛ դրա մատչելիությունը, և՛ երկի գեղարվեստական կատարելությունը, ինչպես նաև սովորողների տարիքային առանձնահատկությունները։ Օրինակ՝ Ն. Քուչակի և Սայաթ-Նովայի մասին խոսելիս ուսուցիչները միշտ էլ կաշկանդվում են։ Ի՞նչ ասել VIII դասարանում սովորող 14—15 տարեկան (վտանգավոր հասակ) երեխային այդ մեծ, սիրահար երգիչների մասին։ Այո՛, նյութի ընտրության մասին պետք է լուրջ մտածել։

Մեր գրականությունը մեծ է, հարուստ ու գունեղ, ուստի, նյութերի ընտրության հարցում առատությունն իսկ կարող է դժվարություններ հարուցել։ Հաճախ երեխաներին շատ բան սովորեցնելու բարի ցանկությունից մղված քիչ բան ենք տալիս, քանի որ ծրագրի մեջ առաջադրված հարցերը շատ են և դրանց պարզաբանմանը հատկացված ժամերը ուսուցչին ստիպում են ինչ-որ ձևով «վազանց» կատարել։ Օրինակ՝ VIII դասարանում «Հայ գրականությունը X—XII դարերում» բաժնին հատկացված է 6 ժամ, որի ընթացքում ուսուցիչը պետք է գաղափար տա IX դարի երկրորդ կեսում հայ պետականության վերականգնման, գյուղացիության սոցիալական վիճակի, թոնդրակեցիների շարժման, հայկական վերածննդի, այդ շրջանի պատմիչների մասին, պարզաբանի Գրիգոր Նարեկացին և բանաստեղծության անջատումը եկեղեցական արարողությունից հարցը. խոսի սելջուկների Հայաստան ներխուժելու, հայերի և վրացիների համատեղ պայքարի, Զաքարյանների իշխանության հաստատման, Կիլիկյան հայկական պետականության առաջացման, Ներսես Շնորհալու, Մխիթար Գոշի, այդ շրջանի հայ ճարտարապետության, նաև մանրանկարչության, հայ-վրաց-ադրբեջանական կուլտուրաների մասին։ Եվ այդքանից հետո պետք է անցնել նաև Սասունցի Դավիթ ժողովրդական էպոսը։ Այդ ժամերից պետք է ինչ-որ ձևով նաև գրավորին հատկացնել։

Ի՞նչ կարող է սովորել VIII դասարանի աշակերտը ծրագրային նյութերի այդպիսի բաշխման դեպքում. ավելի լավ չէ՞ առաջնորդվել «լավ է քիչ, բայց լավ» սկզբունքով, քան տարվել ամեն ինչ տալ բարի, բայց իրեն չարդարացնող մտադրությամբ։ Այդպիսի օրինակներ կան նաև X—XI դասարանների հայ գրականության ծրագրերում։

Անդրադառնանք դասագրքերին։

Ընկ. Աթայանն իրավացիորեն քննադատում է մեր երեք դասագրքերը և խելացի դիտողություններ ու առաջարկներ անում։ Նա գտնում է, որ VIII—IX դասարանների ներկայիս դասագիրքը (հեղինակ Մ. Մկրյան) ավելի մշակված է, բայց ներածության ու գրականության զարգացման տարբեր էտապների նկարագրությունները դժվարամարս են, «տեղ-տեղ նույնիսկ ճոռոմ լեզվով գրված»։ Մենք կասեինք, որ այդ դասագիրքը 14—15 տարեկանների համար շատ տեղերում մատչելի չէ։ Այն գրականության պատմության մշակված ձեռնարկ է, ավելի շատ դասավանդող ուսուցչի, քան թե աշակերտների համար։ Դասագրքերի շատ էջեր կարելի է նշել, որոնք խրթին են, աշակերտներին անհասկանալի։ Մեր կարծիքով, դա հետևանք է նաև այն բանի, որ ընկ. Մկրյանը տարբեր ժամանակ գրած իր հոդվածները, կարդացած դասախոսությունները մասնակիորեն խմբագրելով՝ դարձրել է դասագիրք։ Այդ բանում համոզվելու համար ընթերցողը թող թերթի Մ. Մկրյանի Էջեր հայ վիպասանության պատմությունից աշխատությունը (Երևան, Հայպետհրատ, 1957 թ.) և համեմատի դասագրքի համապատասխան բաժինների հետ։ Աշխատության 8—11, 14—16 էջերը նույնությամբ դրված են դասագրքի Խ. Աբովյան, 34—35, 37, 39, 43—49 էջերը՝ Պ. Պռոշյան բաժնում և այլն։ Չնայած նշված դասագիրքը արդեն 6-րդ անգամ է վերահրատարակվում, բայց ոչ մի փոփոխություն չի արված, որը խիստ անհրաժեշտ է։ Օրինակ՝ Սայաթ-Նովան այդ դասագրքում ներկայացված է սխեմատիկ ձևով. մեծ երգչի սոցիալական մոտիվը մեկնաբանված է մակերեսորեն. մինչդեռ նրա ծննդյան 250-ամյակը նշելու օրերին բազմաթիվ նոր փաստեր հայտնաբերվեցին նրա կենսագրության և ստեղծագործության վերաբերյալ, եղան նոր մեկնաբանություններ։ Սակայն Սայաթ-Նովան դասագրքում մնաց տասնյակ տարի առաջ ասվածի շրջանակներում։ Այդ անհանդուրժելի է։

Հր. Թամրազյանի կազմած դասագրքի մասին որոշ դիտողություններ անելով հանդերձ հոդվածագիրը, միաժամանակ, սխալ տեսակետներ է հայտնում։ Նա իրավացիորեն գտնում է, որ Թամրազյանի մոտ կրկնվում են մտքերը, որ «այս գրքում ևս շատ քիչ տեղ են գրավում ամեն մի հեղինակի արվեստի, հոգեբանական միջոցների ամբողջությունը, լեզվի ու արտահայտչական միջոցների, ոճի յուրահատկություններին վերաբերող բացատրությունները» (Նույն տեղը, էջ 106)։

Ինչ խոսք, այդ թերությունները կան Հր. Թամրազյանի գրքում, բայց չպետք է ուրանալ, որ նշված հարցերը շատ թե քիչ խորությամբ հենց այդ դասագրքում են արժանացել ուշադրության։ Հոդվածագիրը գտնում է, որ այդ հարցերն աշակերտներն ինքնուրույն չեն կարող հասկանալ. «Մինչդեռ, ընդհակառակը, գլխի ընկնել, թե որն է Գիքորի «գաղափարական բովանդակությունը» կամ «Հառաչանք» պոեմի բարոյախոսությունը, դժվար չէ, և ամեն մի միջակ աշակերտ ինքնուրույն կարող է բացատրել (եթե մեկ անգամ ուշադիր կարդացել է տեքստը)» (Նույն տեղը, էջ 106, ընդգծումներն մերն են—Վ. Գ.)։

Այդպիսի՝ անառարկելի թվացող հայտարարության վրա զարմանալ միայն կարելի է։ Դուրս է գալիս, որ միջակ կարողության տեր աշակերտը մեկ անգամ ուշադիր կարդալով կարող է բացահայտել տվյալ երկի գաղափարական հարցերը։ Դե, այլևս ո՞ւր ենք դասավանդման ընթացքում այդ հարցին մեծ տեղ տալիս։ Չի՞ լինի, բավարարվել միայն գեղարվեստական տվյալ երկի՝ մեզ պատճառած էսթետիկական հաճույքի մասին խոսելով, մի քանի վերացական դատողություններ անենք լեզվի, ոճի, գեղարվեստական արժանիքների վերաբերյալ և վերջացնենք մեր ասելիքը։

Ո՛չ, այդ հարցում ընկ. Աթայանը սխալվում է. աշակերտներն այդքան էլ հեշտ չեն ըմբռնում երկի գաղափարական հարցերը։ Իրականության հանդեպ հեղինակների ունեցած վերաբերմունքը, նրանց նպատակադրումները երբեք էլ մերկապարանոց չեն երևում գեղարվեստական երկերում։ Եթե աշակերտը հեշտ կհամոզվի, որ Լոռեցի Սաքոն վախկոտ է, ապա երբեք էլ գլխի չի ընկնի, թե այդ հսկան ինչո՞ւ է վախկոտ, և Հովհ. Թումանյանը ի՞նչ նպատակ է հետապնդում պոեմով։ Ինչ վերաբերում է Հառաչանքի բարոյախոսությունը հասկանալուն, ապա նույնիսկ որոշ ուսուցիչների համար հասկանալի չէ, թե ո՞րն է այդ բարոյախոսությունը, մի՞թե Հառաչանքը սոսկ բարոյախոսական երկ է։ Արդյո՞ք հենց թումանյանական «աչքի պես պարզ, աչքի պես բարդ» պարզությունը չի շփոթվում պարզունակության հետ։ Հոդվածագիրը մի անհնարին բան էլ է առաջարկում։ Նա գտնում է, որ Հր. Թամրազյանի «պաթետիկ կանչերն ու վկայակոչումները», հեղինակներին տրված որակումները՝ խոշոր, խոշորագույն, արտակարգ վարպետությամբ, արտակարգ նրբությամբ, տաղանդավոր, նշանավոր, ականավոր և այլն, աշակերտների գիտակցության մեջ բեկվում են «որքան անսպասելի, նույնքան և անցանկալի ձևով» (Նույն տեղը, էջ 106)։

Իսկ ինչո՞ւ մեր իրոք տաղանդավոր գրողներին այդպես չորակել։ Ինչպե՞ս կարող է աշակերտը ինքնուրույն անել այդ, երբ դրա համար նա պետք է ճանաչի հեղինակի ստեղծագործությունը։ Իսկ հոդվածագրին հայտնի՞ է, որ մեր աշակերտները տրտնջում են ոչ թե այդ որակումների դեմ, այլ ասում են՝ եթե մեր գրողներն այդպիսին են, ինչո՞ւ են բոլորն էլ ազդվել եվրոպական, ռուսական կամ արևելյան ժողովուրդների այս կամ այն գրողներից, իսկ իրենք ի՞նչ է, ոչ մեկի վրա չե՞ն ազդել։ Այդ հարցին ուսուցիչը չի կարողանում պատասխանել, քանի որ, մեր դասագրքերում այդ հարցն այնպես է մեկնաբանվում, որ եթե օտարազգի այս կամ այն հեղինակը չլիներ, հայ մեծ գրողները ևս չէին լինի։ Ահա ազդեցության և փոխազ-

Սոսնձելու տեղը

Կտրելու գիծը

ՓՈՍՏԱՐԿՂ ԳՑԵՔ ԱՌԱՆՑ ԴՐՈՇՄԱՆԻՇԻ

ԵՐԵՎԱՆ—16

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ

Կտրելու գիծը

Կտրելու գիծը

Սոսնձելու տեղը

Եվ մի վերջին ռեպլիկ Հայոց լեզուն և գրականությունը դպրոցում հավելվածի կապակցությամբ։ Մեզ թվում է՝ մենք շատ ենք խոսում գրականության դասատուների անպատրաստ լինելու մասին և գործնականորեն քիչ ենք օգնում նրանց։ Այդ օգնությունն ամենից առաջ այժմ պետք է կազմակերպի վերոհիշյալ հանդեսը։ Բայց, ահա, լույս տեսած հինգ համարներում դեռ քիչ բան է արված այդ ուղղությամբ։ Խոսքըն, իհարկե, տպագրված հոդվածների, կոնսուլտացիոն նյութերի քանակի մասին չէ, այլ որակի։ Նրանց զգալի մասը դեռ գիտական ու մեթոդական մակարդակով սովորական անգույն դասերի նկարագրության մակարդակից չի բարձրանում։ Վերջին համարում (№ 5) զարմանքով կարդացի ընկ. Ս. Բաբաջանյանի հոդվածը՝ Ինչպես եմ ուսուցանում Վ. Տերյանի ստեղծագործության գեղարվեստական արժանիքները։ Պետք է նեթադրել, որ «Փորձ» ընդհանուր վերնագրի տակ կարող են տպագրվել միայն լավագույն դասերի նկարագրությունները։ Բայց ահա այստեղ հոդվածագիրը ինքնավստահ հիշեցնում է, թե Շչուկ ու շրշյուն բանաստեղծությունն ուսումնասիրելիս արդեն ասվել էր, որ այն գրեղված է «Մթնշաղի անուրջներ» գրքում»։ Փաստական այս սխալին հետևում են մեկնաբանության սխալներ, Տխրություն բանաստեղծությունը դիտվում է որպես սիրային բանաստեղծություն. Հայ գրականության ավանդման հետ կապված այս հարցերը առանց մեծ դժվարության կարող է լուծել լուսավորության մինիստրությունը, եթե վճռականություն հանդես բերի։

Վ. ԵՍԱՅԱՆ

Երևանի Մ. Գորկու անվան դպրոցի գրականության ուսուցիչ

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։
Ստորագրված է տպագրության 1/V 1967 թ.։
ՎՖ 05807 Պատվեր 1060 Տիրաժ՝ 10.544
Գինը՝ 25 կ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼՈՒՅՍԸ՝ ՎԻՐԱՀԱՏ

Լազերի ճառագայթի օգնությամբ այժմ արդեն աչքի հաջող վիրահատումներ են կատարում։ Բժիշկների կարծիքով լույսը կդառնա ճշգրիտ և անարյուն վիրահատ։ Չէ՞ որ ընկնելով կենդանի հյուսվածքի վրա, լույսը ոչ միայն վիրահատում է այն, այլև տեղն ու տեղը «զոդում», առանց նույնիսկ մի կաթիլ արյան։ Լույսը կարող է վարակազերծել, մասնակցել քաղցկեղի բուժմանը։ Լույսի օգնությամբ հնարավոր կլինի վիրահատել անգամ միկրոբները, բջիջները, քրոմոսոմները։

## ՌԱԴԻՈԱԿՏԻՎ ՇԱՆԹԱՐԳԵԼ

Հարավսլավիայի Բորիս Կիդրիչի անվան ատոմային գիտահետազոտական ինստիտուտը նախագծել է ռադիոակտիվ շանթարգել՝ էլեկտրահաղորդիչ գծերը, երկաթուղիների կոնտակտային ցանցերը և այլ օբյեկտներ կայծակից պաշտպանելու համար։ Ռադիոակտիվ շանթարգելի վերնամասում տեղադրվում է որոշ քանակությամբ ռադիոակտիվ կոբալտ—60, որը շանթարգելի գագաթի շուրջն ստեղծում է մթնոլորտային էլեկտրականության պարպմանը նպաստող իոնացված օդի շերտ։ Այդպիսի սարքը ապահովում է պաշտպանությունը 200 մետր շառավղով։

## ԷԼԵԿՏՐԱՇԱՐԺ

Ճանապարհային և արդյունաբերական էլեկտրաշարժների համար էներգիայի առավել տարածված աղբյուրը շարունակում է մնալ ակումուլյատորային մարտկոցը։ Էլեկտրաշարժի միջին արագությունը ժամում 48 կմ-ից չի անցնում։ Ակումուլյատորային մարտկոցով մեքենան գործում է 72 կիլոմետր շառավղի սահմաններում։ Էլեկտրաշարժը հինգ տեղանի է և ունի արտասովոր կառուցվածք։ Այն ունի չորս անիվ, որոնք տեղադրված են ռոմբաձև. մեկը հետևում, մյուսը առջևում, երկուսն էլ կողքերից, որի շնորհիվ եթե անիվը թեքենք 90 աստիճանի, մեքենան կարող է պտտվել ուղղահայաց առանցքի շուրջը։

## ՍԱՌԵՑՆՈՂ ԷՄՈՒԼՍԻԱ

Հարավսլավական «ՏԷՕԼ» ձեռնարկությունը մետաղահատ հաստոցների համար սկսել է թողարկել արհեստական սառեցնող էմուլսիա՝ «տէօլին—H»։ Ունենալով սինթետիկ էմուլսիայի բոլոր դրական հատկությունները, այն աչքի է ընկնում նրանով, որ առավելագույն ճնշումների և շիթի ժամանակ չի առաջացնում փրփուր ու կաթնապղտոր լուծույթ, որովհետև ջրում լավ է լուծվում։ Աշխատանքի ընթացքում հեղուկը մնում է անգույն և թափանցիկ։ Որքան լավ է ծածկված և յուղած մշակվող առարկան, ինչպես և գործիքը, այնքան ավելի արդյունավետ է «տէօլին—H»-ով սառեցումը։ Այդ ամենը հնարավորություն է ընձեռում ավելացնելու հատման արագությունը և մեծացնելու հաստոցների արտադրողականությունը։ Սակայն նոր էմուլսիան ունի մեծ ալկալիություն և փափկացնում է որոշ քուկներ։ Ուստի «տէօլին—H»-ը օգտագործելիս պետք է լինել զգույշ և կիրառել համապատասխան քուկներ։

## ԾՈՒԽԸ ՆՐԱՆՑ ՀԱՄԱՐ ՍԱՐՍԱՓԵԼԻ ՉԷ

Արդյունաբերական ձեռնարկությունները աղտոտում են Արևմտյան Գերմանիայի օդը, անտառներին հասցնելով տարեկան 20 միլիոն վարկի վնաս։ Բավարիայի անտառային ինստիտուտը մշակել է այդ վնասը կանխելու մեթոդ։ Ռուրում եղևնից կտրում են շյուղեր և պատվաստում առողջ ճյուղերին։ Մատղաշ ծառերը այդպիսի խաչաձևումից հետո դիմանում են ծծմբօքսիդի կրկնակի դողային, որը սովորաբար չորացնում և ոչնչացնում է այդ ծառերը։

## ՀՐԱՇՔ ԱՆԱՆԱՍ

Ավստրալիայի բնությունը չգիտե նման հրաշքներ։ Այնտեղ հասունացել է քառանկյուն անանաս, սակայն ոչ առանց մարդկանց միջամտության։ Գիտնականների հնգամյա աշխատանքի արդյունք է այդ. նրանք պնդում են, որ այդ ձևի միրգը ավելի հարմար է փաթեթման և տեղափոխման համար։

ԳԻՆԸ 25 Կ.

77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ՋՐԻՄՈՒՌՆԵՐԸ ՄԱՔՐՈՒՄ ԵՆ ԳԵՏԵՐԸ*

*Ջրավազանների կենդանական աշխարհի համար վտանգավոր է թունավոր ֆենոլը, որը գետերի մեջ է թափվում քիմիական ձեռնարկություններից՝ աղտոտված ջրի հետ: Բնական ջրերի մեջ թափվող ֆենոլի քանակը օրեցօր աճում է: Այս առումով հետաքրքիր է Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետությունում մշակվող ֆենոլային աղտոտության դեմ պայքարելու յուրօրինակ մեթոդը:*

*Մաքս Պլանկի անվան Ընկերության Լիմնոլոգիական կայանի աշխատակցուհի Կ. Զայդելը հայտնաբերել է, որ որոշ ջրիմուռներ ֆենոլը ջրից դուրս են կորզում: Իր ախորժակով հատկապես աչքի է ընկնում ջրիմուռի մի տեսակ, որը կոչվում է* Schoenoplectus lacustris: *Դրա մեջ ֆենոլի պարունակությունը ինտենսիվ կերպով աճում է ամռանը, իսկ ձմռանը այդ ջրիմուռը ավելի քիչ ֆենոլ է կլանում:*

## *ԵԼԱԿԸ ԱՋՈՏՈՒՄ*

*Օվկիանոսային նավը Կալիֆոռնիայից ելակ է բերել Լոնդոնի նավահանգիստը: Երկշաբաթյա օվկիանոսային ընթացքը ամենևին չի անդրադարձել հասուն պտուղների վրա. կարծես թե հենց նոր են միայն թփից քաղել: Եվ այդ շնորհիվ հատապտուղների մշակման «օքսիտրոլ» սիստեմի: Փոխադրումից առաջ կոնտեյների մեջ է մղվում ազոտ, որը լրիվ արտամղում է թթվածինը: Արագ փչացող մթերքները մնում են լրիվ անվնաս և միայն կոնտեյները բացելուց հետո են սկսվում բիոքիմիական պրոցեսներ, որոնց հետևանքով ի վերջո փչանում են: Իհարկե, լրիվ հասուն հատապտուղները, մրգերը և բանջարեղենը ավելի համեղ և օգտակար են, քան չհասած, որոնք «կոնդիցիայի են հասնում» փոխադրման ժամանակ: «Օքսիտրոլ» սիստեմի շնորհիվ ծովային տրանսպորտը շուտ փչացող բեռներ տեղափոխելիս դառնում է ցամաքայինի մրցորդը:*

## *ՍԻԼՈՍԸ՝ ՄԱՐԴՈՒ ՀԱՄԱՐ*

*Մինչև օրս բույսերի կանաչ մասսան որպես կեր օգտագործվել է անասունների համար, իսկ մարդը իրեն բաժին էր պահում այն, ինչ համով էր՝ հատապտուղները, սերմերը, պալարները: Ռոտխեմստեդի փորձակայանի (Անգլիա) աշխատակիցները գտնում են, որ կարելի է տերևներից էլ մարդու համար պատրաստել պիտանի սնունդ: Այստեղ շաքարի ճակնդեղի կամ սիսեռի տերևները մանրացնում են, նրանից քամում սպիտակուցով հարուստ հյութը, որն արագ տաքացնում են, որպեսզի սպիտակուցը մակարդվի և ստացված էքստրակտը մամլում: Ստացվում են պանրանման կոնցենտրատի բրիկետներ՝ մուգ կանաչ գույնի: Այդ բրիկետների կշռի 60 տոկոսը ջուր է, մնացածը սպիտակուց, որն իր սննդարարությամբ գերազանցում է ցորենի ու գարու սպիտակուցին և չի զիջում մսին: Ճիշտ է, կոնցենտրատը բավական յուրահատուկ է և հիշեցնում է սպանախի ու թեյի խառնուրդ, բայց դրան կարելի է ավելացնել խմոր և նրանից պատրաստել պելմեններ կամ կոտլետներ:*

*Անգլիական գիտնականների մեթոդով պատրաստած նոր սպիտակուցային կոնցենտրատն օգտագործում են Ջամայկայում, Հնդկաստանում և Իզրայելում:*